# Ազգագրական հանդէս
# *Azgagrakan Hande's [Ethnographic Review]*

## Վարանդա
## **Varanda**

Ervand Lalayan's studies of Varanda in Artsakh (Nagorno-Karabagh) from *Azgagrakan Hande's* II (1897), pp. 4-244, and III (1898) pp. 338-349, in 262 pdf pages. Varanda is the old name of a district, now part of Martuni, which includes the church of Amaras. At the time Lalayan visited, Varanda was part of Shushi, and so his invaluable information also describes neighboring areas. Lalayan's colleagues L. Atabekean, L. Ter-Ghazarean, and Y. Yovhannisean wrote parts of the study. Compiled and indexed by Robert Bedrosian, October, 2015.

---

II գիրք (1897) Լալայեան, Ե. Վարանդա.

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ԱԶԳԱԳՐՈՒԹԻՒՆ.

## ՄԱՐԴԱԲԱՆՈՒԹԻՒՆ.



---

## ՊԱՏԿԵՐՆԵՐ.

# ՎԱՐԱՆԴԱ

## ՆԻՒԹԵՐ ԱԶԳԱՑ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

Խմբագրեց Ե. ԼԱԼԱՅԵԱՆ

## ՄԻ ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

### ՎԱՐԱՆԴԱՅԻ ՊԱՏՄԱԿԱՆ ԱՆՑԵԱԼԻ ՄԱՍԻՆ.

Վարանդան նախկին Միւս Հաբանդ գաւառն է, որ Քոչուս էլ է կոչուել։ Սա ընկնում է Արցախ նահանգի մէջ և նրա հետ միասին մինչև Արշ-կունեաց անկումը պատկանելիս է եղել Հայերին. այնուհետև ենթարկուել է Աղուանից պետութեան։

ԺԳ դարում հոներն ու մոնղոլ թաթարները իրենց ասպատակութիւններն ու աւերումները սփռել են այս գաւառում ևս։ Նոյնանման աւերումներ գործել են այստեղ և՛ Պարսիկներն ու Օսմանցիները, շարունակ միմեանից ձեռքից խլելով և՛ այս գաւառը։

Վերջապէս 1692 թուին Մելիք Շահնազարի որդի Մելիք Յուսէինը և նրա եղբօր (Մելիք Միրզա-Բէկի) որդի Մելիք Բաղին Գեղամայ լճի եզերքից գաղթում են իրենց ժողովրդի մի մասի հետ այս գաւառը և բնակութիւն հաստատում Աւետարանոց գիւղում։

1721 թուին այս Մելիք Բաղին դուրս է եկել Կովկասեան լեռնաբնակների առաջ և ազատել երկիրը նրանց աւերմունքից։ Այս և միքանի այսպիսի յաղթութիւններով Մելի-Շահնազարեանները տարածել են իրենց իշխանութիւնն ամբողջ Վարանդայի վրայ և որպէս Պարսից աւատական իշխաններ՝ կառավարել երկիրը *)։

*) Խամսայի Մելիքութիւններ. եր. 23-24.

Այս մելիքներից Մելիք-Շահնազար Բ-ը սպանելով իւր եղբայր Մելիք Յովսէփին, նրա փոխարէն մելիք է դարձել և այս ու իւր անբարոյականութեան պատճառով՝ ատելի է եղել թէ իւր ժողովրդեան և թէ Խամսայի միւս մելիքներին, որոնք մի քանի յարձակումներով աւերել են սրա երկիրը։ Այն ժամանակ նա ձեռք է մեկնել Ջիւանշիրցիների գլխաւոր՝ Փանահ-խանին, որին և՛ որպէս դաշնակցի զիջել է իւր երկրից մի բարձր լեռնադաշտ։ Փանահ-Խանը 1752 թուին շինել է այդտեղ մի ամուր բերդ և կոչել Փանաբադ *), բայց յետոյ, երբ մօտակայ Շօշի գիւղի բնակիչները տեղափոխուել են այստեղ, բերդը կոչուել է Շօշի կամ Շուշի **)։

Փանահ խանը ջլատելով հայ մելիքների ոյժը և շարունակ պատերազմներ մղելով նրանց դէմ, կամաց կամաց կարողացել է նրանց իրեն ստորադրել։

Փանահ-խանի որդի և յաջորդ Իբրահիմ խանի ժամանակ Պարսից զօրապետ Աղա-Մամադ-խանը 1795 թ. գարնանը եկել պաշարել է Շուշին։ Մելիք-Շահնազարեան Մելիք Ջումշուդը և Մելիք Բէգլարեան Մելիք Աբովը հայ զօրքերով ամրացել են Շուշի բերդի մէջ և Իբրահիմ խանի հետ միասին պաշտպանել բերդը։ Քառասուն օր ապարդիւն պաշարումից յետոյ Աղա-Մամադ-խանը վերցրել է պաշարումը և գնացել տիրելու Թիֆլիսին։ Այս Աղա-Մամադ-Խանը 1797 թ. կրկին անգամ արշաւել է Շուշու վրայ և առել բերդը, սակայն այս անգամ ինքը շահը, սպանուել է իւր սենեկապետի ձեռքով և Պարսից զօրքերը յետ են քաշուել իրենց երկիրը։

Երբ ռուսները իշխան Ցիցիանովի առաջնորդութեամբ գրաւել են Գանձակի բերդը, Իբրահիմ խանը Մելիք Ջումշուդի խորհրդով առանց պատերազմի ընդունել է ռուսաց հպատակութիւնը (1805)։ Բայց յետոյ (1806) դաւաճանել է ռուսներին և հրաւիրել պարսիկներին Շուշին տիրելու։ Եւ երբ ինքը շտապել է գիշերով գնալ միանալու Շօշի գիւղի մօտ բանակած պարսից արքայորդի Աբաս Միրզին, Մելիք Ջումշուդն ու փոխ գնդապետ Լիսանեվիչը բռնել են նրան և սպանել։ Այս պատերազմը ահագին վնասներ տալով տևել է մինչև 1813 թուականը, երբ Գիւլիստանի դաշնադրութեամբ Ղարաբաղը յանձնուել է ռուսներին։

Սակայն 1826 թ. Աբաս Միրզան իւր մօտ փախած Իբրահիմ խանի որդի Մեհտի խանի գրգռմամբ և Ղարաբաղը կրկին վերադարձնելու յուսով 80,000 զօրքով նորից արշաւել է Վարանդա, և

*) M-me Chantre A travers de l'Arménie.

**) Խամս. Մել. եր. 62-

պաշարել Շուշին։ Ռուսները Աւետարանոց գիւղացի Մատաթեան զօրապետի առաջնորդութեամբ մեծ ջարդ են տուել Պարսից՝ Գանձակի մօտ և հալածել մինչև իրենց երկիրը։

Այնուհետև Շուշին կառավարուել է ռուսներից նշանակուած գաւառապետներով։

## ԱՄԱՐԱՍ

Սա հին ժամանակներում մի գիւղ է եղել, ուր Ս. Գրիգոր Լուսաւորիչը հիմնարկել, իսկ իւր թոռ Գրիգորիսը աւարտել և օծել է մի եկեղեցի։ Երբ Մասքթաց Սանեսան թագաւորը 348 թ. Ս. Գրիգորիսին, որ Աղուանից և Վրաց կաթուղիկոս էր, ձիու պոչից կապելով Վատնեան դաշտում նահատակել է տուել, նրա աշակերտները հաւաքել են տուել նրա նշխարները և բերել ամփոփել այս եկեղեցում։ Այնուհետև այդ գիւղը դարձել է նախ եպիսկոպոսանիստ և ապա Աղուանից կաթուղիկոսների աթոռանիստ *)։

Ե. դարում Աղուանից թագաւոր Վաչագան Գ. պտրել և գըտել է այստեղ Ս. Գրիգորիսի մասունքները և նորից ամփոփելով վերանորոգել տաճարը։

Մօտ 1293 թուին Թաթարաց Բատուն խանը կողոպտել է այս վանքը և տարել ս. Գրիգորիսի գաւազանն ու մի ոսկեձոյլ 36 ակներով զարդարուած խաչ։ Ցունաց կայսեր Դեսպինա դուստրը խընդրել է այդ խաչն ու գաւազանը և ուղարկել Կ. Պօլիս **)։

1387 թուին Ամարասն էլ, Արցախի և ուրիշ նահանգների հետ ենթարկուել է Լանգ-Թամուրի աւերումներին։

Ժողովուրդը այժմ էլ պատմում է, թէ Լանկ-Թամուրը իւր զօրքերը շարել է Ամարասից մինչև Արաքսը և հրամայել Ամարասի վանքի քարերը միմեանց տալով թափել Արաքսը ***)։

Մելիք Շահնազար Բ. վերանորոգել և պարսպել է վանքը, ինչպէս և բազմաթիւ սենեակներ շինել ուխտաւորների համար։

ԺԷ. դարում այստեղի միաբանների համար որպէս ամարանոց շինուել է Հիրհեր գիւղում մի գեղեցիկ եկեղեցի և միաբանութեան համար խցեր։

Կարծւում է, թէ Ամարասի միաբանութեան ամարանոց եղել է և՝ Վերին Թաղավարդից դէպի հարաւ-արևմուտք $1^{1}/_{2}$ վերստ հեռաւորութեամբ գտնուող գետնի մէջ թաղուած եկեղեցին, որ այժմ Բա-

*) Ինճիճ. Ստոր. եր. 307.

**) Ստեփ. Օրբ. գլ. Հ.

***) Բարխ. Ուխտ. յիշ. եր. 9.

րևածառ անունով ուխտատեղի է։ Եկեղեցում գտնուած են հետևեալ արձանագրութիւնները.

«Սուրբ Պետրոս. կանգնեցի զխաչս 'ի փրկութիւն հոգւոյ իմոյ և ծնողաց իմոց։ Արդ, որք երկրպագանէք սուրբ Նշանիս զիս աղօթըս... ջիք և Աստուած զձեզ յիշեսցէ. Թուին Ն. Խ. Զ. էր։

«Սուրբ Պօղոս։ Ցամս Աստուածապատիւ և հոգևոր Տեառն Յովհաննիսի Ամարասայ եպիսկոպոսի ի պետութեան տեառն Գագիկայ Աղուանից իշխանաց իշխանի ես հայր Կիրակոս առաջնորդ սուրբ ուխտիս եղբօր որդի Կոկոնայ...

Թուականը միննոյնն է *). 'ի դէպ, ասենք, որ այս Բարևածառի մասին կայ հետևեալ աւանդութիւնը. Մի ժամանակ այստեղ ապրում էր մի սուրբ եպիսկոպոս, և ամեն անգամ երբ Նա երկար ծոմապահութիւնից ու ճգնութիւնից յետոյ պատարագ էր մատուցանում, շրջակայքի ծառերը ողջոյնի ժաման ակ երեք անգամ խոնարհեցնում էին իրենց գագաթները և միմեանց կպցնելով ողջոյն տալիս։ Մի օր էլ մի հեռաւոր հայ մի ջորի ոսկով բարձում և գալիս է այդ հրաշքը տեսնելու։ Նա խոստանում է եպիսկոպոսին՝ նուիրել վանքին իւր հետ բերած ոսկին, եթէ արժանանայ տեսնելու հրաշքը։ Եպիսկոպոսը խոստանում է, բայց պատարագի ժամանակ սկսում է երկմտել, թէ արդեօք ոսկու հետ ջորին էլ պիտի նուիրէ թէ ոչ։ Այս երկմտութիւնը այն հետևանքն է ունենում, որ ողջոյնի ժամանակ ծառերը չեն համբուրւում։ Եպիսկոպոսը բացատրում է պատճառը և ջերմեռանդ ուխտաւորը խոստանում է ոչ միայն ջորին, այլ և ուրիշ շատ թանգագին ընծաներ ուղարկել։ Եպիսկոպոսը նորից պատարագ է մատուցանում և այս անգամ կատարւում է հրաշքը։ Հարուստ հայը գոհութեամբ վերադառնում է իւր երկիրը և ուղարկում խոստացած նուէրները **).

Բայց դառնանք Ամարասին. դարուս սկզբում այս վանքը անտէր մնալով Թուրքերի ձեռքն է ընկել, որին Աղ-Օղլան անունը տալով՝ իրենց սրբավայր էին դարձրել։ Բազմաթիւ սենեակներն էլ ռուսները գործ էին ածում որպէս մաքսատուն։ Բաղդասար միտրապօլիտի աշխատութեամբ 1848 թուին մաքսատունը տեղափոխուել է Երասխի ափի մօտ, իսկ վանքն իւր կալուածներով վերադարձուել Հայոց հոգևոր իշխանութեան։

Վերջապէս 1858 թուին գլխաւորապէս շուշեցիների օժանդակութեամբ հիմնովին շինուել է վանքը։

---

*) Բարխ. Ուխտ. յիշ. եր 5.

**) Բարխ. Ուխտ. յիշ եր 10.

# ՎԱՐԱՆԴԱՅԻ ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆԸ

## ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

Վարանդայի սահմաններն են. արեւելեան կողմից՝ Արցախեան դաշտաբերանն (Միլինդիւզ). հիւսիսից և արեւմուտքից Կարգար գետը, հարաւից Քիրս, Ղուրու-չայ և Դիզափայտ լեռնաշղթայի գագաթնագիծը։

Այս գաւառն ամբողջովին ընկնում է այժմեան Շուշուայ գաւառի մէջ (Գանձակի նահանգում)։

## ԼԵՌՆԵՐ

Վարանդան մի լեռնոտ երկիր է. Արցախեան լեռնաշղթան մտնելով այս գաւառը հիւսիս արեւմուտքից, տարածւում է հարաւ-արեւելք մինչև Դիզակ գաւառի Դիզափայտի լեռնաշղթան։ Այս լեռնաշղթայի մէջ նշանաւոր են Մեծ և Փոքր Քիրսերը, որ բարձրանում են Շուշու հարաւային կողմում։ Մեծ Քիրսի բարձրութիւնն է 9989 ոտնաչափ, որի վրայ ձիւնը միայն ամառուայ տաք եղանակին է հալչում, իսկ Փոքրինը՝ 7340։ Այս լեռնաշղթան մեծ մասամբ պատած է անտառներով։

Մի ուրիշ փոքր լեռնաշղթայ էլ, որ սկսւում է Զօրագետի և Խրամի խառնուրդի աջ կողմից և հասնում Երասխի ձախ կողմն *), Վարանդայում տալիս է Բողլխան և Քեաթուկ գագաթները։

---

*) Արցախ. եր. 3.

Բողրխանը գտնւում է Շուշուց արևելահիւսիս, ունի 5326 ոտ. բարձրութիւն։ Այս գագաթից չորս գօտի են ճիւղաւորւում։ Առաջինը ձգւում է մինչև Վարազաբուն գիւղը. երկրորդը՝ դէպի Կղարծի, Ղզղալա, Աշան և այլն գիւղերը, երրորդը՝ դէպի Սարուշէն, Մաւաս, Սխտորաշէն և Խաչինչի-սարը. իսկ չորրորդն՝ անցնելով Շօշու գիւղի հարաւ արևելեան կողմից՝ միանում է Մեծ Քիրսին։ Սրա մէջ նշանաւոր է Խաչմաչ գագաթը։ Երկրորդ լեռնագօտու մէջ նշանաւոր է Խաչախուտ (5028 ոտ.) և Պտկսաբերկ (3829 ոտ.) գագաթները։

## ԴԱՇՏԵՐ

Վարանդայում ոչ մի մեծ դաշտ չկայ. կան միայն փոքրիկ դաշտեր, որոնցից նշանաւոր են.

1). Ղըզղալա գիւղի առջև տարածուած դաշտը։

2). Նոր-Շէնի դաշտը, որ գտնւում է երկու լեռների միջև։

3). Գիշի, Պառաւաթումբ և Աղքենդի գիւղերի միջև տարածուած դաշտը։

4). Խունըշինակ գիւղի դաշտը, որ կազմում է Վարանդայի սահմանը։

5). Ծարտարեցիների կալերի մօտ եղած դաշտը։

6). Ամարասի դաշտը։

7). Նաւատ-խանի դաշտը Շօշի-գիւղի և Աւետարանոցի միջև։

8). Բեգիջանի դաշտը, Խազաս-սարի և Ներքին Թաղաւարդի միջև։

## ԳԵՏԵՐԸ

Վարանդայի ամենանշանաւոր գետը Գարգարն է, որ կազմւում է հինգ գլխաւոր վտակներից.

Ա. Բուն Գարգար, որ բղխում է Քիրս լեռնաշղթայի Ջառխտ սարերի հիւսիսային և հարաւային լանջերից և հո-

սում է Շուշի քաղաքի հարաւ արևելեան խոր ձորով։ Սա իւր մէջ է ընդունում Թթու-ջրի առուակը։ Այս վտակը տեղացիներից կոչւում է Քարին-տակի գետ, որովհետև անցնում է Քարին-տակը գիւղի մօտով։

Բ վտակը բղխում է Քիրս լեռնաշղթայի հիւսիսահայեաց լանջերից և հոսում է միևնոյն քաղաքի հիւսիս-արևմտեան կողմով։ Սրան տեղացիները կոչում են Ղայզալու գետ, Ղայբալի գիւղի անունով։ Այս երկու վտակները միանում են Շուշուց 8 վերստ հեռաւորութեամբ Մաչի կամրջի տակ։ Ահա՛ իսկապէս այստեղից սկսած այս գետը կոչւում է Գարգար։

Գ Դ և Ե վտակները բղխում են Խաչեն գաւառից, մինը Խանածախ գիւղի սարից, միւսը Բալլուջայի սարից, իսկ հինգերորդը Պետրեցւոց սարից։

Բուն Գարգարը նախ հոսում է դէպի հիւսիս, ապա արևելահիւսիս և կտրելով Արցախեան դաշտի կէսը, անյայտանում աւազի տակ, ապա նորից երևում և հեղեղների ժամանակ թափւում Կուր գետի մէջ։

Երկրորդ նշանաւոր գետակն է՝ Քեօնդալան, որ միայն գարնան ժամանակ հասնում և խառնւում է Արաքսին։ Սա բաղկանում է երկու գլխաւոր վտակներից, որոնցից մինը— Քիրսու-չայ — սկիզբն է առնում Քիրս լեռնաշղթայից և հոսում Աւետարանոց գիւղի հարաւային ստորոտով, միւսը՝ սկիզբն է առնում նոյն լեռնաշղթայից, հոսում Ղևոնդեանց անապատի սարի հարաւային ստորոտով և ընդունելով Սարգսաշէնի Նորէն վտակը՝ միանում Քիրսաչային նոյն անապատից բաւական վար։

Սա հեղեղների ժամանակ սաստիկ բարձրանալով բաւական վնասներ է պատճառում *)։

Գ գետակն է Ղուռուռ-չայը, որ նոյնպէս Արաքսի վտակըն է։ Սա սկիզբն է առնում Մեծ և Փոքր Քիրսերի միջից։ Սրա հետ միանում է Իշխանագետը, Թաղլար և Տումի գիւղերի միջև։

*) Այս տարի քշել տարել էր վրաբնակ 27 թուրք։

Այս գետը այսպէս կոչուելու պատճառն այն է, որ ամառը չորանում է։ Ղուռու թուրքերէն նշանակում է չոր։

Դ գետակն է Ամարասայ գետակն, որ Չալուն գետ ևս կոչւում է։ Սա սկիզբն է առնում Սօս, Քերթ, Քարահունջ, Հերհեր, Խերխան գիւղերի աղբիւրներից և անցնում Ամարասի մօտով։

## ԼՃԵՐ

Վարանդան զուրկ է մեծ լճերից. կան միայն շատ փոքր լճեր, որոնք ամառն ուելի ևս փոքրանում են։ Սրանցից նշանաւոր են.

1) Սիւլիւկնածով, Նինգի գիւղի մօտ. այսպէս է կոչւում, որովհետև մէջը տզրուկներ կան։

2) Ծծքարին ծով, Ծովատեղի գիւղի մօտ, շատ փոքըր լճակ է։

## ԱՂԲԻՒՐՆԵՐ

Վարանդան սաստիկ հարուստ է աղբիւրներով, որոնց ջուրը շատ յստակ և քաղցրահամ է։ Մեծ աղբիւրներից նշանաւոր է Ղարաբուլախ գիւղինը, որ միքանի ջրաղաց է դարձնում։

## ՔԱՐԱՅՐԵՐ

Վարանդայում կան շատ բնական քարայրեր, որոնք պատերազմների ժամանակ ժողովրդեան ապաստանարան և երբեմն էլ ռազմական կէտեր են ծառայել։ Սրանցից նշանաւոր են.

## ՀՈՒՆՈՏԻ ԿԱՐԱՆ

Այս քարայրը գտնւում է Շուշու արևելահարաւային կողմում ձգուած խոր ձորի մէջ, Հուննոտ գիւղի մօտ, որի անունով և կոչուած է։ Քարայրը բաղկացած է երեք աչքից,

*որոնցից առաջին երկուսը փոքր են, իսկ երրորդը բաւական ընդարձակ։ Այստեղ կայ և՛ ջրի աւազան։*

### ԾԾԽԱՁ (ՇՄԱՆԷՔ)

*Թաղլարից Ներքև Ղուռու-չայ գետակի ձախ եզերքին երկու աճագին քարայրեր են։ Ներքևի քարայրի առաստաղի ժայռը ծծանման բարձրութիւններ ունի, որոնցից ջուր է կաթկաթում *)։*

### ԱԽԱՆԱՑ ԿԱՐԱՆ

*Քարին-տակը գիւղի հիւսիսային կողմում Աւանայ Քերծում, որ տարածւում է մինչև Շուշի քաղաքի Կոհար-աղայի տան տակը։ Քարայրի մէջ կայ ջուր։*

### ՈՐՎԱՆ ՔԱՐԱՑՐ

*Գտնւում է Ազոխ գիւղի արևելեան կողմում, ձորակի ձախ կողմի բարձրութեան վրայ։ Բաւական խորն է և մէջը կայ մի երեխայ գրկած կնոջ արձան։ Կնոջ տարազը և գըլխու յարդարանքը արցախական են։*

### ԾԾՔԱՐԻ ԿԱՐԱՆ

*Ծովատեղ գիւղի արևմտահիւսիսային կողմում բարձրանում է ծծաքար կոչուած սարը, որի ժայռոտ գագաթին մօտիկ կայ մի աճագին քարայր **)։*

*Կան նաև Ալէքսանայ ղուղուն, Եղաւնիկի (աղաւնու) և Ամարաթների քարայրները Քարին-տակի ձորակում։*

### ԿԼԻՄԱՆ

*Վարանդայի կլիմայի վերաբերութեամբ մենք միայն Շուշու մասին տեղեկութիւններ գտանք ռէալական դպրոցի*

---

*) Տես՝ հաւատքի բաժնում։

**) Տես՝ հաւատքի բաժնում։

ուսուցիչ պ. Ալէքսանդրովսկու մօտ, որ նոյն դպրոցին կից գոյութիւն ունեցող օդերևութաբանական կայարանի կառավարիչն է։ Պարոնը սիրով տուեց մեզ իւր երեք տարուայ դիտողութիւնները, որոնցից 1893 – 95-ը միջին թիւ հանելով կազմեցինք հետևեալ աղիւսակը։

Այս աղիւսակից հետևում է.

1. Օդի ճնշումը 0° ջերմութեան միջոցին տարեկան միջին թուով հասնում է 647,9 միլլիմետրի, օրօրուելով 650,8-ի, որ բարձրանում է հոկտեմբերին և 644-ի միջև, որ իջնում է մարտին։

2. Բարոմետրը այստեղ բարձրանում է իւր maximum-ին նոյեմբ. (656,8) և իջնում minimum-ին փետրուարին (636)։

3. Տարեկան միջին ջերմութիւնն է 8,6։ Ամենաշոգ ամիսը օգոստոսն է (միջին ջերմ. 20,0), երբ ջերմաչափը երբեմն բարձրանում է 27,5. այս աստիճանին բարձրանում է երբեմն և՛ յուլիս ամսին, թէև այդ ամսին միջին ջերմութիւնը հաւասար է 17,8°։ Ամենացուրտ ամիսը յունուարն է (միջին ջերմ.—3,3°) երբ ջերմաչափը երբեմն իջնում է —12,4°։

4) Համեմատական խոնաւութիւնը տարեկան միջին թըւով հասնում է 76,7։ Ամենախոնաւ ամիսը հոկտեմբերն է, 82,3, իսկ ամենապակաս խոնաւը յուլիսը՝ 66։

---

Հետևեալ աղիւսակն էլ ցոյց է տալիս տիրապետող քամիները և եղանակը (Տես երես 16)։

## Շուշի քաղաքի կլիման

| | Բարոմետր (միլլիմ. 0° ժամանակ) | Բարոմետր Maximum. | Բարոմետր Minimum. | Ջերմութիւն ըստ Ց. | Ջերմութիւն. Maximum. | Ջերմութիւն. Minimum. | Ջերմութիւն. Min. ըստ տերմոգրաֆի. | Համեմատական խոնաւութիւն. | Ամպամած. | Քամու արագութիւն (մետր 1 վ.) | Տեղումք. (осадки) |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Յունուար . . | 647,5 | 653,6 | 640,0 | 3,3 | 8,5 | 11,3 | 12,4 | 80,5 | 4,6 | 1,0 | 22,1 |
| Փետրուար . . | 645,0 | 651,2 | 636,0 | 0,1 | 13,3 | 8,8 | 9,9 | 74,0 | 5,1 | 1,3 | 15,8 |
| Մարտ . . . . | 644,0 | 650,8 | 636,9 | 2,7 | 16,7 | 5,1 | 7,2 | 78,0 | 6,7 | 1,3 | 51,2 |
| Ապրիլ . . . . | 646,8 | 652,2 | 640,5 | 6,2 | 17,9 | 3,8 | 5,3 | 82,0 | 7,0 | 1,3 | 57,3 |
| Մայիս . . . . | 648,1 | 552,7 | 642,4 | 11,9 | 21,4 | 5,2 | 2,8 | 78,3 | 5,9 | 1,3 | 111,6 |
| Յունիս . . . . | 647,1 | 651,0 | 643,4 | 17,2 | 26,0 | 9,6 | 8,2 | 71,0 | 5,0 | 1,1 | 81,8 |
| Յուլիս . . . . | 648,1 | 651,8 | 644,2 | 17,8 | 27,5 | 12,5 | 9 6 | 66,0 | 4,5 | 1,1 | 44,0 |
| Օգոստոս . . . | 648,5 | 653,6 | 644,2 | 20,0 | 27,5 | 12,9 | 10,3 | 66,3 | 3,4 | 1,1 | 22,0 |
| Սեպտեմբեր . | 649,1 | 652,4 | 642,5 | 14,1 | 24,8 | 5,7 | 4.4 | 80,7 | 4,7 | 1,0 | 44,4 |
| Հոկտեմբեր. . | 650,8 | 656,3 | 644,8 | 9,9 | 19,2 | 2,7 | 0,6 | 82,3 | 8,9 | 0,9 | 61,2 |
| Նոյեմբեր. . . | 650,2 | 656,8 | 641,8 | 4,7 | 16,3 | 3,9 | 5,1 | 78,0 | 5,6 | 1,1 | 43,4 |
| Դեկտեմբեր. . | 648,1 | 655,2 | 338,8 | 1,4 | 12,7 | 7,3 | 8,2 | 75,7 | 5,0 | 1,0 | 15,6 |
| Ընդամէնը . . | 7772,6 | 7840,1 | 7695,3 | 103,5 | 232,1 | 6,8 | 12,3 | 912,8 | 66,4 | 13,5 | 570,3 |
| Միջին . . . . | 647,9 | 653,3 | 641,3 | 8,6 | 19,3 | 0,6 | 1,0 | 76,7 | 5,5 | 1,1 | 47,5 |

| | Քամիներ | | | | | | | | | | | | | | | | | Օրեր | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Հանդարտ | N | NNE | NE | ENE | E | ESE | SE | SSE | S | SSW | SW | WSW | W | WNW | NW | NNW | Անձրեւոտ | Ձիւն | Կարկուտ | Բամբակա-ձիւն (крупа) | Մառախուղ | Փոթորիկ | Ուժգ. քամի | Երկինքը Պարզ | Երկինքը Ամպոտ. | Ջերմ. Max. 0° | Ջերմ. Min. 0° |
| Յուն. | 51,6 | 12,3 | 5 | | 7 | 1,6 | 12,6 | 0,3 | 1,6 | 2 | | 1,0 | | | | | | 8,6 | 8 | | | 13,0 | | 1,6 | 13 | 9,3 | 16,6 | 27,0 |
| Փետր. | 48,6 | | | 1 | 1 | 3 | 11 | 7,3 | 1,3 | 0,6 | 4,6 | 1,0 | | | | 3,0 | 0,3 | 5,6 | 6,6 | | 0,6 | 7,0 | | 3,3 | 6,3 | 6,6 | 7,0 | 22 |
| Մարտ | 52,0 | | | 2 | 3 | 6 | 18 | 0,3 | 4,0 | 1,0 | 3,3 | 2,0 | 0,6 | 0,3 | 1,0 | 0,3 | | 12,0 | 10,3 | | 2,6 | 16,0 | 1,6 | 3,6 | 2,6 | 12,6 | 4,3 | 16,0 |
| Ապրիլ | 42,3 | 4,0 | 3 | 4 | 5,6 | 3,3 | 15 | 4,3 | 4,3 | 1,3 | 4,3 | 1,3 | 1,0 | | 1,0 | | 1,3 | 16,6 | 8,6 | | | 19,0 | 1,6 | 2,0 | 2,0 | 13,3 | 2,0 | 5,6 |
| Մայիս | 41,6 | 2,0 | 2 | 8 | 13 | 6,3 | 14 | 5,3 | 1,3 | 1,0 | | | 0,6 | 0,3 | | 0,3 | | 17,3 | 3,0 | 2,6 | 1,3 | 11,3 | 11,0 | 1,6 | 2,3 | 8 | | |
| Յունիս | 33,6 | | 2 | 7,5 | 12 | 6,3 | 25 | 5,0 | 0,3 | 0,3 | 0,3 | | | 0,3 | | 0,3 | | 11,0 | | 1,0 | 0,3 | 2,6 | 4,6 | 1,6 | 7 | 7,6 | | |
| Յուլիս | 45,6 | 1 | 1 | | 10,3 | 15 | 15 | 3,3 | 1,0 | 1,6 | | | | 0,3 | | 0,3 | | 7,0 | | | | 1,6 | 1,0 | 2,3 | 9,3 | 11 | | |
| Օգոստ | 42,6 | 2 | | 5 | 13,6 | 13 | 13,3 | 2,6 | 1,6 | 0,6 | 0,3 | | | | | | | 3,6 | | 0,3 | | 1,6 | 1,0 | 3,0 | 14,3 | 3,3 | | |
| Սեպտ. | 51,6 | 1 | 4 | 3 | 7 | 6,6 | 6,3 | 3,6 | 8,0 | 3,6 | 0,3 | 0,3 | | | | | | 7,3 | 0,3 | 0,3 | 0,6 | 8,6 | 3,0 | 0,3 | 9,0 | 8,3 | | |
| Հոկտ. | 54,3 | | | 3,5 | 4,6 | 8,3 | 11,3 | 3,6 | 3,6 | 2,6 | | 2,0 | | | | | | 7,0 | 0,3 | 0,3 | 0,6 | 10,6 | 0,6 | | 6,3 | 10 | | |
| Նոյեմ. | 48,6 | 4 | | 5 | 2,3 | 3,3 | 14,0 | 5,6 | 0,6 | 1,3 | 2,6 | 5,0 | 0,3 | | 1,3 | | | 7,9 | 4,0 | | 0,3 | 11,3 | | 2,3 | 5,3 | 9,3 | 2,0 | 6,6 |
| Դեկտ. | 49,6 | 5,5 | 13 | 9 | 4 | 5 | 6,6 | 5,3 | 1,6 | 1,3 | | 0,6 | 0,3 | 0,3 | 0,6 | 1,0 | 2,0 | 5,6 | 5,3 | | 0,3 | 11,0 | 0,3 | 2,3 | 7,3 | 8,3 | 6,6 | 21,6 |
| Տարեկ | 562,0 | 31,8 | 30,0 | 49 | 83,4 | 77,7 | 162,1 | 46,5 | 29,2 | 16,2 | 15,7 | 13,2 | 2,8 | 1,5 | 3,9 | 5,2 | 3,6 | 88,6 | 46,4 | 4,5 | 6,6 | 113,6 | 24,7 | 23,9 | 77.7 | 107,6 | | |

Այս աղիւսակից էլ հետեւում է.

1. Քամիները ամենից շատ փչում են արեւելա-հարաւարեւելեան կողմից (162,1), ամենից շատ յունիս (25) և ամենից քիչ՝ սեպտեմբեր ամսին (6,3)։

2. Դրանից յետոյ ամենից շատ փչում է արեւելա-հիւսիս-արեւելեան կողմից (83,3), ամենաշատը՝ օգոստոսին (13,6) և ամենաքիչը՝ փետրուարին (1)։

3. Յետոյ արեւելեան կողմից (77,7), ամենաշատը՝ յուլիսին (15) և ամենաքիչը՝ յունուարին (1,6)։

4. Յետոյ արդէն հիւսիս-արեւելեան (49) և հիւսիսային (31,8) ու հիւսիս-հիւսիսարեւելեան (30) կողմերից։

5. Շուշին տարուայ ընթացքում միջին թւով 113,6 օր պատած է լինում մառախուղով, 107,6 օր էլ երկինքը ամպամած է լինում և միմիայն 77,7 օր պարզ է լինում։ Ապրիլ, մանաւանդ մայիս և յունիս ամիսները անձրեւային են։ Առաջին անգամ ձիւն գալիս է նոյեմբերին, թէև երբեմն պատահում է որ սեպտեմբերին և կամ հոկտեմբերին էլ մի մի անգամ գալիս է։ Սակայն մինչև յունուար հազիւ ինը անգամ ձիւն է գալիս և միայն յունուարին և մանաւանդ մարտին, ինչպէս և՝ ապրիլին, Շուշին ծածկւում է ձիւնով։ Սովորաբար մայիսին էլ 3 անգամ ձիւն է գալիս, այնպէս որ մինչև այս ամսի վերջը վառում են վառարանները։ Այս ամիսը նաև սաստիկ փոթորկալից է (11), և ամենից աւելի այս ամսին է կարկուտ գալիս (2,6)։

Գաւառի կլիման բաւական տաք է Շուշու կլիմայից, այնպէս որ խաղողը հեշտութեամբ հասնում է։ Անհամեմատ տաք է Ամարասու դաշտը։





## ԲՈՒՍԱԿԱՆՈՒԹԻՒՆ

*Վարանդայի բուսականութիւնը սաստիկ հարուստ է։ Երկիրը ծածկուած է խիտ անտառներով, արտերով, այգիներով, պարտէզներով, և խոտաւէտ արօտներով։ Անտառները բռնում են* 19,280 *դես. տեղ, ուր աճում են հետևեալ ծառերը. բեխի* *). *բոխի* (Грабъ обыкновенный, Carpinus Betulus). *բռշնի. թխքեռնի. թեղի* (карагачъ, Ulmus campestris). *լորի* (filia Rubra). *կաղնի* (Quercus Macranthera). *կիչի. կէչի*—(береза, Betula). *կոռեղի. կուզնենի. հացի* (Fraxinus. ясень.) *հաճարկի. հաճարի*—(букъ, Fagus.)

*Պտղատու վայրի ծառեր, որ գտնւում են միևնոյն անտառներում. ճըռ-տանձի. ծտի-տանձի. ճըռ-խնձորի. զկռի* (*զղեարի*), (шишковникъ, Mespilus.) *սզնի*—(боярышникъ, Crateseguѕ). *սալորի* (дикая слива, Prunus divericata). *հունի*—(кизилъ, cornus mascula.) *տկողնի*—(лещина—(лѣсной орѣхъ). corylus). *ընկուզի* (грецкій орѣхъ, inglans regia). *իսկ հանդերում՝ միայն մոխրատանձի և լկրթնի։*

## ԹՈՒՓԵՐ

*Մացառներում և շամբերում. ցախաւելի կամ հոռմառկի. գերմասրի* (земляная груша, Heliauthus tuberosus). *թըբլղի. տատասկ* (чертово колючка, Paliurus aculeutus.) *ծմակամոշ* (*մալինա*—малина). *սևամոշ* (*հանդերի մոշ*—ежевника). *մռամոշ* (2—3 *թիզ ցողուն ունեցող*—клубника). *գետամոշ* (*գետերի ափի մոշ*—земляника). *մասուրի* (шиповникъ, Rosa ecuina). *կծըխուրի* (барбазисъ, Berberis vulgaris). *ցրդի. շուշան. եղինճ* (Urtica). *աւելուկ. շեպ* (Rhapanus Rusticus). *բոխի։*

*Ջրերի մէջ կամ մօտերքում՝ ջրիկուտեմ* (sium, F. Cresson). *դաղձ. ջրափափուկ. ճռճռոկ* (Erua sativa)։

*) Օգտուել ենք «Արցախ»-ից։

Դաշտերում՝ շոմին (վայրի սպանախ—spinacea). տոմբալան (գետնախնձորի նման է և միայն խորոված կարելի է ուտել—Tuber). սամիթ (anethum).

## ԻՆՔՆԱԲՈՅՍ ՈՒՏԵԼԻ ԿԱՆԱՉԵՂԷՆՆԵՐ

Ծմակներում լինում են՝ խազազ. կումրզուկ. սմնդուկ. ծմակթափան. սոկոն (սունկ)։ Հանդերում՝ ձնեբեկ (asparagus). փիփերտ. խնջլոզ. շրեշ խնջլոզ. կնձմնձուկ. տըտըպաշար. ուտումտխտեմ (пастушья сумка, capsella). սխպեղ. թարթանջուկ. պառաւապորտ. եզնաճակատ. գինազոխ։

## ՎԱՅՐԻ ԾԱՂԻԿՆԵՐ

Ջրավարդ (մասուրի վարդ). ծմակավարդ. մանուշակ. ձնծաղիկ. նովրուզ. խնձաղալ. նարկիզ. մշտահամուկ (անթառամ ծաղիկ). նունուփար. հարսնածաղիկ (Papaver Rhoeas). շուշան. մեխակ. ձիւնածաղիկ. զամբաղ. լուածաղիկ. խնձորածաղիկ. կռոթնը (Lappa). արջաթանթուլ. տխտըկոռնը. շընավարունկ. սուտ եղինճ. կածուկ. բըլըբխտրի. ագռաւի սողան. նրկարար. ալակիզ. բէանկի. պլանուկ (Conium Maculatum).

---

# ԿԵՆԴԱՆԻՆԵՐ

*Վարանդայի կենդանիներից նշանաւոր են.*

## ՎԱՅՐԵՆԻ ԿԵՆԴԱՆԻՆԵՐ

Արջ. գայլ. աղուէս. չաղալ. գիշերի. առնէտ. սկիւռ. մուկն. եղջերու. նապաստակ։

## ԹՌՉՈՒՆՆԵՐ

Կաքաւ. հաւփալ՝ աղաւնի (աղունակ). տատրակ. լորամարգի. չարթ. մոշահաւ կամ մշահաւ. որի (տուլաշ). արտուտ. ս. Յակովբի թռչուն. ճնճղուկ. չլածիտ։

## ԳԻՇԱԿԵՐ ԹՌՉՈՒՆՆԵՐ

*Արծիւ. անգղ. բազէ 4 տեսակ. լճլակ. ցին. ուրուր. չորթանագող. բու. հողմահար. գայլագռաւ. ագռաւ. կաչաղակ. Ներկարար, ծառակուտկուտ (կտցահար). ճանճագող. չղջիկ. ձկնկուլ. ճայ. ղուլ։*

## ԵՐԳԵՑԻԿ ԹՌՉՈՒՆՆԵՐ

*Կու. կուկու. յոպոպ. լծի. բաբաճրգտ. չլածիտ. դեղձանիկ. զռզռան. ջրըպըղտպըղտ. չափարծակի. շիլոյշիլոյ. մրշահաւ։*

## ՋՈՒՈՂ ԹՌՉՈՒՆՆԵՐ

*Կռունկ. արագիլ. սասարք. սարեակ. ծիծեռնակ։*

## ՍՈՂՈՒՆ ԵՒ ՋԵՌՈՒՆ

*Օձ. լօկ. քարաթոթոշ. կանաչ մողէս. մողէս. կրիայ. խեցգետին. ոզնի. գորտ. կարիճ. իշախառանջ։*

## ՄԻՋԱՏՆԵՐ

*Շանաճանճ. բոռ. ճախարակ. մշակ. փնթիռն. ճպուռն. մարախ. սեւաճանճ. մեծ ճանճ. կանաչ ճանճ. ձիաճանճ. պիծակ. լուսատտիկ. կետ. Աստծու կով. Աստծու եզն. զատիկ. ականջմտուկ. ոթես. մոշաթսի. ոսկեպղոջ. սարդ. թիթեռնիկ. աղօթարար (ունի կանաչ գոյն և երկար ոտեր)։*

## ԸՆՏԱՆԻ ԿԵՆԴԱՆԻՆԵՐ

*Կով. եզ. գոմէշ. ոչխար. այծ և խոզ։ Էշ. ձի. ջորի. ուղտ։*

## ԸՆՏԱՆԻ ԹՌՉՈՒՆՆԵՐ

*Հաւ. բադ. սագ. հնդկահաւ. աղաւնի։*

## ՀԱՆՔԵՐ

Վարանդայում դեռ ևս չեն սկսել հանքերը մշակել. մի քանի տեղ նկատելի են պղնձի հանքեր, բայց ոչ ոք չի ձեռնարկում մշակելու։ Այսպէս Թաղավարդ գիւղի մօտ կայ մի բլրակ, որից բղխում է Կարմիր ջուր անունով մի վտակ, որ իւր մէջ պարունակելով հանքային բաղադրութիւններ, խըմելու համար վնասակար է։ Սա անցնում է մի խոր ձորով, որ կոչւում է Զուրաթանին կապ։ Անցեալներում մի շուշեցի հայ ձեռնարկել էր այդ տեղի պղնձէ հանքերը մշակելու, բայց շուտով կիսակատար էր թողել։

## ՀԱՆՔԱՅԻՆ ՋՐԵՐ

Բուն Վարանդայում նշանաւոր հանքային ջրեր չկան։ Տեղացիները առաւելապէս օգտւում են «Թթու-ջրից», որ գըտնւում է Զանգեզուրում։

---

## ՇՈՒՇԻ

Նախկին բերդ, իսկ այժմ քաղաք Շուշին տարածւում է 39°,35′ հիւսիսային լայնութեան և 64°,25′ արևելեան երկարութեան տակ գտնուող մի լերան գագաթին, որ ծովի մակերևոյթից 4373—5026 ոտ. բարձրութիւն ունի։ Այս լեռը հարաւ-արևմուտքից արևելահիւսիս տարածուելով՝ հետզհետէ ցածրանում է և ներքին մասում բաւական հարթ տարածութիւն կազմում, մինչդեռ հարաւ-արևմտեան կողմում ձգւում է լերան սեռը։ Լերան հարաւային կողմում տարածւում է մի անդնդախոր ձոր, որի միջով հոսում է. Քարինտակի գետակը։ Այս մասում լեռը սաստիկ ժայռոտ և ուղղահայեաց է։ Նմանապէս և հիւսիսային կողմը մի խոր ձոր է, որի միջով հոսում է Ղայբալու գետակը։ Քաղաքը Փանահխանի ժամանակ գլխաւորապէս հիւսիս և արևելեան կողմե



ՇՈՒՇԵՑԻ ՀԱՅ ԿԻՆՆ ՈՒ ԻՒՐ ԹՈՌԸ

րից պարսպած է եղել, որի երկու, Գանձակի և Երևանեան (արևմտեան) դռները դեռ ևս մնում են, ինչպէս և Գանձակի դրան վերև դրուած միքանի թնդանօթները։ Ամբողջ քաղաքը բռնում է մօտաւորապէս 3—4 քառակուսի վերստ տարածութիւն, որը կտրատւում է միքանի մանր և երեք մեծ, հարաւից հիւսիս տարածուող ձորակներով, որոնց միջով հոսում է անձրևի ջուրը, տանելով իւր հետ քաղաքի անմաքրութիւնները։

Քաղաքը բաժանուած է երկու գլխաւոր մասի—Հայոց և Թուրքերի թաղ։ Հայոց թաղը գտնւում է քաղաքի վերին մասում, թուրքերինը՝ ներքինում։ Այս երկու թաղերը միմեանց հետ համեմատելիս պարզ նկատւում է, որ հայկականը աւելի կանոնաւոր փողոցներ ունի, և որ գլխաւորն է, անհամեմատ մաքուր է։ Տների կողմից ևս, մինչդեռ հայկական թաղում գեղեցիկ, երկյարկանի տներ շատ կան, թուրքերի թաղում դրանց թիւը շատ քիչ է։

Ասացինք, թէ Հայոց թաղը մաքուր է, սակայն այս միայն համեմատական էր։ Թաղի ամենալաւ մասում միայն կան փոքր 'ի շատէ լայն փողոցներ, միւս մասերում փողոցներ անգամ չկան, այլ ծուռ ու մուռ նեղ կածաններ են։ Գլխաւոր փողոցների վրայ թէև կան մայթեր, սակայն միայն մի արշին լայնութեան, իսկ փողոցի մէջ տեղը անկանոն քարերով քարած լինելով, սաստիկ խորդուբորդ է, այնպէս որ անվարժ այցելուն շատ դժուարանում է քայլել։ Եւ այս է պատճառը, որ քաղաքում կառքեր չեն մանգալիս, որովհետև անիւները շատ շուտով փշրւում են։

Բացի դրանից, այս փողոցները սաստիկ կեղտոտ էլ են։ Խանութպանը առանց ճնշուելու փողոց է շպրտում ձմերուկի, սեխի կեղևները և այլն։ Ամառը մայթերի առաջ դարսած են լինում ձմերուկ և սեխ. անգործ մարդիկ հաւաքւում են սրանց շուրջը և միմեանց հետ գրազ գալիս, թէ ձմերուկը կարմիր է թէ սպիտակ, որքան է կշռում, կամ կտրուած կտորի միջի կորիզները զոյգ են թէ կենտ, սեխը համեղ է թէ անհամ, յետոյ կտրում և ահագին աղմուկով

արտայայտելով իրենց յաղթանակը, հէնց տեղն ու տեղը ուտում և կեղևները շաղ տալիս փողոցի մէջ տեղը։ Պարզ է, որ այս հաւաքուած խմբերը կտրում են ճանապարհը և անցորդը ստիպուած է տասնեակ անգամ իջնել մայթից և փողոցի միջով գնալ։ Պատահում էլ է, որ գիւղացիները կանգնեցնում են սայլը փողոցի մէջ և եզներին կամ գոմէշներին մայթի վրայ խոտ տալիս։ Դէպի փոստատուն տանող փողոցի վրայ,—ասենք, որ փողոցները գրուած անուն չունին,— երեսները դէպի մայթը դարձրած և շատ անգամ մայթը ամբողջապէս բռնած միշտ կանգնած են ջորիներ, էշեր, իրենց գլուխն անցկացրած պարկերի միջի գարմանը ծամելով։ Հազուագիւտ երևոյթ չէ փողոցներում սատկած կենդանիների, հոտած թուլշու. մքլած պանրի պատահել։

Մի կողմից կեղտոտութիւնը, միւս կողմից սաստիկ ցեխը ստիպում են բնակիչներին տարուայ մեծ մասում կրկնակօշիկ հագնելու։

Սրա վրայ աւելացրէք և՛ գիշերային մթութիւնը, որովհետև միայն գլխաւոր փողոցներում են լապտերներ վառւում (ընդամէնը 172) և այն էլ միմեանցից այնքան հեռու, որ շատ դժուար է առանց լապտերի ման գալ։ Եւ այս է պատճառը, որ ծառաները լապտերը բռնած միշտ առաջնորդում են իրենց «աղաներին» և շատ անգամ անքուն յորանջում կլուբի բակում, սպասելով՝ որ «աղաները» թղթախաղի սեղանից վերկենան, որպէսզի առաջնորդեն դէպի տուն։

Փողոցային տեսարաններից նշանաւոր է և այն, որ քաղաքի յետին մասերում կանայք մի կարպետ են ձգում փողոցի պատերի տակ, վերան նստում և գուլպայ գործելով, իլիկ ճախարակ մանելով զրոյց անում ու անց ու դարձ անողներին մտիկ տալիս։

Գլխաւոր փողոցների վրայ կան միքանի մեծ, լայն պատուհաններով և ահագին դռներով տներ, որոնց պատուհանները երկաթէ խիտ ցանցով պատած են և դռները ամուր կողպէքներ ունին։ Յետին մասերում կան պարսպաւոր տներ, սակայն սրանց պատուհաններն էլ պատած են ցան-

ցերով։ Տներ էլ կան, որոնց փողոցի վրայի պատերի մէջ դիտմամբ պատուհաններ չեն թողած։ Այս բոլորը պարսկական բռնութիւնների ժամանակ տիրող անապահովութեան ազդեցութիւնն է, թէև այժմ էլ այնքան ապահովութիւն չի տիրում։



ՇՈՒՇԵՑԻ ԱՑԱՆՆ ՈՒ ՀԱՐՍԸ

Ուրախալի է, որ տների առաջ փոքրիկ պարտէզներ կան, պտղատու ծառերով և երբ մի բարձր տեղից նայում են՝ այդ պարտէզները շատ լաւ ազդեցութիւն են գործում։

Հայկական թաղի գրեթէ կենդրոնում գտնւում է «Թոփ-խանա» կոչուած հրապարակը, որ մօտաւորապէս 250 ք. ս. տարածութիւն է բռնում։ Սրա մէջ տեղում մի գեղեցիկ քէօս-

քի մէջ վազում է մի աղբիւր, որի ջուրը այլեւս չի խմւում. սրա մօտ մի կողմում գտնւում է հասարակական կշիռը, միւս կողմում մրգավաճառների շարժական վրանները։ Այս հրապարակը շուշեցիների տնտեսական և մտաւոր կեանքի կենդրոնըն է. այստեղ է ծախւում գլխաւորապէս մթերքների ամենամեծ մասը։ Այստեղ խռնւած են միմեանց՝ մարդը, ջրով կամ փայտով բարձած էշերը, ածուխ բարձած ջորիները ու ուղտերը, փայտակիր ձիաներն և այլն։

Այս փոքրիկ տարածութեան մէջ մինը միւսի կողքին դարսուած են ամեն տեսակ մթերքներ և ամառը առհագին քանակութեամբ մրգեր և պտուղներ։ Մարդիկ անդադար ձիւռով ու ոտով անասուններին հրհրելով, ճանապարհ են բաց անում, անց ու դարձ անում և այս ու այն բանը գնում։ Պէտք է ներկայ լինիք սակարգութեան, որ տեսնէք թէ որքան երկար է տեւում։ Քանի՛ անգամ գնորդը հեռանում և վերադառնում է, միջնորդներ է ուղարկում, ձեռք ձեռքի խփում, սուտ սուտ խոստումներ տալիս, ամօթալի կերպով գովում և պախարակում ապրանքը։

Հրապարակի նեղլիկ մայթերի վրայ կանգնած քաղաքի բուրժուաներն խօսում են վաճառականութեան և ընթացիկ գործերի մասին։ Մի փոքր ինչ տարիքաւորները նստած են խանութների սանդուղքների վրայ և առաւելապէս անցեալի մասին զրոյց անում։ Պէտք է ասել, որ Շուշում ունեւոր ունեցող անգործ մարդկանց թիւը փոքր չէ, և սրանք ամբողջ օրը այդտեղ են անցկացնում։ Ղարադաղի բազմաթիւ մշակները (համբալ) վխտում են նրանց շուրջը, նրանց գնածները տուն տանելու։ Սակայն շատ անգամ հարուստ բուրժուան խնայում է մի երկու կոպէկը մշակին տալու, հանում է գրպանից ահագին գունաւոր թաշկինակը, առածը ածում մէջը և ծանր քայլերով ուղեւորւում դէպի տուն։ Կիրակի և տօն օրերը այստեղ է լինում և՛ արհեստաւորների դասակարգը։ Ինտելիգենտ դասակարգն էլ, ուրիշ տեղ չունենալով, փոքրիկ պտոյտից յետ, այստեղ է գալիս և խումբ խումբ կանգնած զանազան հարցերի մասին վիճում, բայց

այնպէս բարձր, որ բաւական հեռու կանգնողներն էլ կարող են ազատ կերպով լսել:

Մինչդեռ տղամարդիկ այստեղ են համախմբւում և միմեանց հետ տեսնւում, խօսում, կանայք էլ եկեղեցի են գնում, ուր ամբողջ ժամասացութեան ժամանակ միմեանց հետ խօսում են, աղջիկ են ընտրում իրենց որդիների համար, զանազան բամբասանքներ անում և այլն· Իսկ սրանց չափահաս որդիները զբօսնում են եկեղեցու բակում, եկեղեցի եկող օրիորդներին դիտելով և քննադատելով:

Շուշում կայ չորս եկեղեցի և մի կուսանաց մենաստան: Բոլորից գեղեցիկն է Ղազանչեցւոց Ս. Փրկիչ մայր եկեղեցին: Սա նշանաւոր է և' ճարտարապետական տեսակէտից. սրա երկարութիւնն է 35, լայնութիւնը 23, իսկ բարձրութիւնը մօտ 35 մետր: Շինուած է բիւզանդական ոճով. յատակագիծը խաչաձև է: Չորս քառանկիւնի, իւրաքանչիւր կողմը մի մի հատ լայն մանէքով (cannelure), սիւների վրայ բոլորւում են ռոմանական կամարներ, որոնց վրայ բարձրանում է կաթուղիկէն: Ունի 10 պատուհան, իւրաքանչիւրը մի մետր լայնութեան և հինգ մետրը երկարութեան: Դռների բարձրում գտնուող պատուհանները խաչաձև են: Դռները երեք են, որոնց առաջ շինուած են գեղեցիկ, բոլորաձև գաւիթներ, երեքական դռներով: Միջին դռների վերև կան մի մի սրբի ռելիէֆ պատկեր: Եկեղեցին ներքուստ բաւական փառահեղ է. խաչկալը բաւական գեղեցիկ: Չորս ահագին ջահ աւելի ևս փայլ են տալիս: Խորանների վրայ կայ նաև ուրիշ երկու խորան:

Զանգակատունը գտնւում է եկեղեցու արևմտեան կողմում, փոքր ինչ հեռու. սա մի եռայարկ շինութիւն է, որի առաջին յարկի չորս անկիւններում կանգնեցրած են մի մի հրեշտակապետի քարէ արձան, որ չափից դուրս կոպիտ են շինուած: Գեղեցիկ է միայն միակտուր քարից շինուած շղթան:

Եկեղեցին սկսուած է 1868 թ. և աւարտուած 1887-ին:

Միւս երեք եկեղեցիներն ու կուսանաց մենաստանը ճարտարապետական տեսակէտից առանձին նշանակութիւն չունին:

Բացի եկեղեցիներից, մինչդեռ ուրիշ գաւառական հայ

քաղաքների, ինչպէս Ախալքալաքի, Ախալցխայի, Աղէքսանդրապօլի, կանայք համախմբւում են բաղնիսներում, միմեանց հետ տեսնւում, ժամերով խօսում, աղջիկ ընտրում, շուշեցիները զրկուած են այսպիսի մի հասարակական և առողջապահական տեսակէտից անհրաժեշտ տեղից, որովհետև ջուր չլինելու պատճառով՝ բաղանիքներ չկան։ Միմիայն մի Թուրքի բաղանիք կայ, որ սաստիկ անմաքուր լինելու պատճառով հայերը չեն յաճախում։ Խեղճ մայրերը ստիպուած են ամէն շաբաթ օր տանը ջուր տաքացնել, փոքրերին լողացնել, իսկ մեծերի միայն գլուխները լուալ։



ՇՈՒՇԵՑԻ ԿԻՆԸ ՓՈՂՈՑՈՒՄ

Սակայն շուշեցի բուրժուա և ինտելիգենտ կինը ունի որպէս հաւաքատեղի քաղաքային կլուբն ու զբօսավայրը, իսկ արհեստաւորի կինը՝ Նահատակի գերեզմանը և մօտակայ ուխտատեղիները։

Քաղաքային կլուբը գտնւում է «Թոփխանի» կողքին, մի եռայարկանի գեղեցիկ շինութեան մէջ։ Այստեղ թէև կայ գրադարան և ընթերցարան, սակայն աւելի թղթախաղն է ընդունուած, քան թէ ընթերցանութիւնը։ Ձմեռը գրեթէ ամէն շաբաթ երեկոյ պարահանդէս է լինում, որի ընթացքում հայ կանայք և օրիորդներն աթոռների վրայ մեխուած մնում են և միայն միքանի ռուսներ թռչկոտում են։ Սակայն երբեմն էլ միքանի հայուհիներ հրաշալի կաքաւում են տեղական կաքաւները, սազանդարների ներդաշնակութեամբ։

Քաղաքային զբօսավայրը գտնւում է արեւմտահարաւային կողմում, բլրի լանջին։ Այստեղ ճեմելիները տերրասներով բարձրանում են և գեղեցիկ տեսարան պարզում ճեմողների առջև։ Ծառեր շատ քիչ կան։ Երկու հովանոց և մի ամենատգեղ բուֆետ կազմում են զբօսավայրի միակ զարդարանքը։ Սակայն ամառը շաբաթը երկու անգամ ածում է զինուորական երաժշտական խումբը առաւելապէս տեղական եղանակներ և գրաւում բազմաթիւ ամարանոց եկողներին այդտեղ։

Զբօսավայրի այդպէս անշուք լինելու պատճառն այն է, որ քաղաքը զուրկ է ջրից. կայ միայն երկու աղբիւր քաղաքի մէջ, միւսները դուրս են և այն էլ բաւական հեռու, այնպէս որ ջրի մի իշաբեռը արժէ 10—20 կոպէկ։ Լուացքի և այլ գործածութեան համար կան ջրհորներ, բայց առաւելապէս գործ է ածւում անձրևի ջուրը, որ խողովակներով հաւաքւում լցւում է յատկապէս այդ նպատակով շինուած ջրի շտեմարանները և կամ ուղղակի թափւում մեծ տակառների մէջ։ Առաջիկայ տարին միայն շնորհիւ տեղացի մի հարստի՝ պ. Թամիրեան՝ շուշեցիները կունենան մաքուր ջուր, որ գալիս է 18 վերստ հեռաւորութիւնից։

Հասարակ դասակարգի զբօսավայր Նահատակի ուխտատեղին գտնւում է Հին-հանգստարանի ներքևում։ Սա Իբրահիմ խանի ժամանակ նահատակուած Անտօն անունով մի թիֆլիսեցու գերեզման է։

Թուրքաց թաղը կեղտոտութեան բուն է. բաւական է ասել, որ հայոց թաղի կեղտոտութիւնները կոյուղիներով հոսում են մինչև այս թաղը, իսկ այնտեղից անցնում են բացօթեայ արխերի միջով, տարածելով սարսափելի գարշահոտութիւն։ Թուրքերը միշտ հրաժարուել են կոյուղիներ շինել տալուց, չնայելով որ այդ արխերը անցնում են նոյն իսկ նրանց տների առջևից։

Այս թաղում նշանաւոր են՝ գլխաւոր մզկիթը, որ բաւական գեղեցիկ շինութիւն է, Մեհտի խանի բնակարանը,



ՄՈԼԼԱՆ ԱԶԱՆ ՏԱԼԻՍ

ուր այժմ ապրում է նրա աղջիկը, շահզադէի և ուրիշ մի քանի հարուստ մարդկանց բնակարանները։

Այստեղ գտնւում է և՛ ռուսաց միակ եկեղեցին, որ ճարտարապետական տեսակէտից ոչ մի արժէք չունի։

Շուշու բնակիչները գլխաւորապէս հայեր և շիա մահմետական պարսիկներ են։ Հայերը գաղթած են Արցախի Տող և ուրիշ գիւղերից, Ղազանչիից, Ագուլիսից և Մեղրիից։ Ընդամէնը 18796 ար., 14456 իգ. 33252 երկու սեռից։ Հայերի թիւն է 11637 ար., 8947 իգ. 20584 երկու սեռից։ Թուրքերինը՝ 7159 ար. և 5509 իգ.։

Վարչական կողմից Շուշին գաւառական քաղաք է, և պատկանում է Գանձակի նահանգին, ունի քաղաքագլուխ, դումա, և գաւառապետ։ Կայ նաև հաշտարար դատարան, ոստիկանատուն և այլն։

Այստեղ է և՛ Ղարաբաղի Հայոց կոնսիստորիան իւր առաջնորդարանով, որ բացուած է 1830ին Թ. Բաղդասար մետրապոլիտի օրով։

---

## ՆՇԱՆԱՒՈՐ ԳԻՒՂԵՐԸ

### ՉԱՆԱԽՉԻ ԿԱՄ ԱՒԵՏԱՐԱՆՈՑ

Մելիքանիստ Չանախչի կամ Աւետարանոց գիւղը գըտնւում է Շուշուց դէպի արևելահարաւ, մօտ 17 վերստ հեռաւորութեամբ։ Սա տարածւում է մի փոքրիկ հարթութեան վրայ, որ կտրւում է հարաւային և արևելեան կողմում Քիրսայ գետի ձորակով, հիւսիս արևելեան կողմից՝ Հախփսիմէի ձորով։ Իսկ արևմտեան կողմում ընդհարւում է մի ժայռի, որ լեզուաձև տարածւում է մինչև Կուսանաց անապատը, որ գտնւում է Քիրս գետակի անմիջապէս ափին բարձրացող բլրակի վրայ։ Այս ժայռը պարսպի հարաւ-արևմտեան դըռան մօտ ճեղքճեղքուելով կազմում է մի մթին քարանձաւ, որ «Բաջքատուն» է կոչւում։

Կուսանաց անապատի արևմտեան կողմից ձգւում է մի

հաստ պարիսպ, որ շրջապատելիս է եղել ամբողջ գիւղը. այժըմ կանգուն է միայն մի մասը և մի քանի աշտարակներ։

Գիւղի հարաւային կողմում, անապատին մօտ, գտնւում է Մելիք Բաղու ապարանքը, որ բաղկացած է եղել մի քանի «Ղարադամներից», ամբողջովին քարից շինուած։ Այս սենեակները դեռ ևս կանգուն են և նրանց մէջ բնակուողներ կան, մինչդեռ նրանց վերևը իշխան Մատաթեանի շինած յարկը բոլորովին քանդուած է։

Արևմտեան կողմում, ժայռի անմիջապէս ափին երբեմն կանգնած է եղել Մելիք Ցիւսէին Ա. ապարանքը, որի առաջ բացւում է մի հիանալի տեսարան, և որը այժմ բոլորովին աւերակ է։

Իսկ հիւսիսային կողմում, պարսպին կից գտնւում է Մելիք Շահնազար Բ. ապարանքը կամ ամարանոցը, բաղկացած մի քանի ղարադամներից և կամարակապ սենեակներից։ Գլխաւոր դրան վրայ կայ հետևեալ արձանագրութիւնը... «Այս ամարաթս Մէլիք Շահնազարի (Գ) որդի Սէյին-բէկին, որ է այս շինութիւնս, որ շինել տուած շէնքն է թ. ՌՄԼԵ։

Մելիք Բաղի ապարանքի մօտ գտնւում է Մելիք Բաղու Ռձ թուին շինած Ս. Աստուածածնի եկեղեցին։ Զորս անպաճոյճ սիւների վրայ բոլորում են ռոմանական կամարներ և ռոմանական կամարակապ ձեղուն, որի վրայ բարձրանում է մի փոքրիկ կաթուղիկէ։ Եկեղեցին ունի մի աւագ և երկու փոքրիկ խորան, երկու էլ խորհրդարան, որոնց վերև կայ մի մի գաղտնի սենեակ, ուր պահւում են եկեղեցու թանգագին իրերը։ Եկեղեցում կայ՝ 1) Կենաց փայտի մի մասը, մի արծաթեայ խաչի մէջ. 2) Թադէոս և Բարդուղիմէոս առաքեալների մասունքները. և 3) Պանդալիան բժշկի մասունքը։

Գիւղից դէպի արևմտահարաւ գտնւում է հին գերեզմանատունը, ուր կան բազմաթիւ, ուշադրութեան արժանի տապանաքարեր, ռըլիէֆ պատկերներով ծածկուած։

Այժմ Զանախչին աւելի մի գիւղաքաղաքի է նման։ Բազմաթիւ, գեղեցիկ և եւրոպական ճաշակով կահաւորուած

տները, բաւական վայելուչ խանութները բոլորովին կերպարանափոխում են գիւղի տեսքը։ Գիւղում կան նաև մետաքսի երեք գործարաններ, որոնք աչագին ազդեցութիւն են ունեցել և ունին գիւղի տնտեսական և բարոյական վիճակի վրայ։ Սա և՛ շուշեցիների սիրելի ամարանոցն է։

Այժմեան բնակիչների թիւն է 265 տուն, 973 ար. 849 իգ. ընդամէնը՝ 1822 հոգի։

Պարապում են երկրագործութեամբ, անասնապահութեամբ, այգեգործութեամբ և առևտրով։

## ՇՕՇՈՒ ԳԻՒՂ

Գտնւում է Շուշի քաղաքից դէպի արևելահարաւ, հագիւ 4 վերստ հեռաւորութեամբ մի բարձրավանդակի լանջի վրայ։ Գիւղի հիւսիսային կողմում ձգւում է մի խոր ձոր, որի միջով հոսում է մի փոքրիկ վտակ, որ թափւում է Գարգարի մէջ։ Գիւղը բաւական ընդարձակ տեղ է բռնում, և Շուշուց դէպի հիւսիս գտնուող գրեթէ բոլոր գիւղերի միակ ճանապարհն է դէպի քաղաքը։ Գիւղում կայ մի, երկու կամարների վրայ հաստատուած եկեղեցի, ՌՃԴ (1655) թուին շինուած։ Բնակիչների շատ քիչ մասն է բնիկ, շատերին Մէլիք Բաղին է Սոթից բերել և բնակեցրել այստեղ. միքանի գերդաստան էլ Ջրաբերդից են եկել։ Պարապում են երկրագործութեամբ. հողն արքունի է, սակաւ և անջրդի։ Գիւղում կայ մի բաւական մեծ և գեղեցիկ մետաքսի գործարան, որ գործ է տալիս գիւղի կանանց և աղջիկներին։

Քաղաքի ազդեցութիւնը զգալի կերպով նկատւում է այս գիւղի վրայ։ Տների մեծ մասն արդէն ղարադամի վիճակից փոխարկուել է կանոնաւոր, երկյարկանի բնակարանների։ Կան միքանի խանութ և մինչև անգամ մի իջևան։

Գիւղի հանդէպ, դէպի հիւսիս, ձորակի միւս ափի բարձրութեան վրայ կայ մի խարխուլ եկեղեցի, որի արևմտեան լուսամուտի մէջ մի խաչքարի վրայ կայ հետևեալ արձանագրութիւնը. «Թվ. ՋԷ (1458) ես Ղոչ սարկաւագ գոյարեցի

(կանգնեցէ՛) խաչս Ազիզա մաւր իմս։ Եկեղեցու շուրջը մի ընդարձակ հանգստարան կայ, որի գերեզմանաքարերը ծածկուած են շատ հետաքրքիր ռելիէֆ պատկերներով։

## ԿԻՒՆԻ ՃԱՐՏԱՐ

Կիւնի (Արեգդէմ) ծարտարի երեք կողմից բոլորում են լեռներ և միայն հարաւ-արևելեան կողմն է բաց։ Հիւսիսային սարը կոչւում է Ղալին-խութ, ուր երբեմն կառուցուած է եղել մի ամրոց։ Արևմտեան կողմինը Ս. Եղիշայ կուսի անապատի սարն է։ Գիւղի տները սփռուած են Ղալին-խութի լեռների լանջերին, իսկ գոմերն ու կալերն գտնւում են դէպի արևելահարաւ, գիւղից մի վերստ հեռաւորութեամբ։ Գրեթէ բոլոր տների առաջ կան թթենու ծառեր, այնպէս որ համարեա ամբողջ գիւղը ծածկուած է ծառերի մէջ և շատ գեղեցիկ տեսարան ունի։ Կանոնաւոր փողոցներ չկան։ Տների մեծ մասը երկու մասից են բաղկացած. հին ղարադամից և նոր, եւրոպական ճաշակով շինուած սենեակներից։ Կան և՛ բաւական թւով երկյարկանի մաքուր տներ։ Այժմ այլ ևս հին ղարադամի ձևով տներ չեն շինում։

Բուն գիւղում կայ մի հասարակ եկեղեցի, միւսն էլ նոր շինում են կալերի մասում։ Դպրոցական շէնք չկայ, թէև գոյութիւն ունէր ս. Գրիգորեան անունով մի ծխական միդասեան ուսումնարան։

Օդը շատ առողջարար է, ջուրը, որ հայթհայթում են երեք աղբիւր, համեղ և մաքուր։

Գիւղի շուրջը տարածւում են այգիներ, ուր բուսնում են թթենիներ, խաղողի որթեր, տանձենիներ և խնձորենիներ։

Բնակիչները գաղթել են Խաչենու, Զարդախլու և Ագուլիս գիւղերից, ընդամէնը՝ 243 տուն. 1046 արական, 896 իգական. 1942 երկու սեռի։ Պարապում են երկրագործութեամբ. ամբողջ Վարանդայում սրանց ցորենը ամենից լաւն է համարւում, այգեպանութեամբ, քաշում են օղի և գինի և անասնապահութեամբ։

## ՍԱՐՈՒՇԷՆ

*Համանուն լերան հարաւ արեւմտահայեաց լանջի վրայ, աւանց կանոնաւոր փողոցների։ Բակերում տնկուած են ծառեր, որ բաւական գեղեցկութիւն են տալիս գիւղին։ Տների մեծ մասը ղարադամ է, թէեւ կան և միքանի երկյարկանի գեղեցիկ տներ։ Կայ և մի, Ամենափրկիչ անունով, մի կամարի վրայ հաստատուած, թէ ներքուստ և թէ արտաքուստ գեղեցիկ եկեղեցի, որ ամբողջ Վարանդայի առաջնակարգ եկեղեցին է։ Եկեղեցում գտնւում է ՌԼԱ. թուին գրուած մի մագաղաթեայ աւետարան, որին ուխտ են գալիս գրեթէ բոլոր գիւղերից։*

*Կլիման ցուրտ է, որովհետև արեւմտեան կողմում բարձրացող Քիրս գագաթից շարունակ ցուրտ քամի է փչում. մանաւանդ ձմեռը։ Ամառն էլ շատ հով է։ Բնակիչները բընիկ են.* 74 *տուն, բոլորն էլ հայ լուսաւորչականներ.* 348 *ար.* 261 *իգ.։ Պարապում են երկրագործութեամբ. հողն արքունի է։ Բացի գիւղի շրջակայքի հողերը, ունին նաև Ամարասի մօտ հողեր։ Այգիներ չունին, որովհետև ընդամէնը միայն երկու աղբիւր ունին։*

*Գիւղում կայ մի Հայոց եկեղեցական ծխական երկսեռ միդասեան դպրոց, որի շէնքը կառուցել է Գ. Այվազեանն իւր ծախքով, և որ բաւական գեղեցիկ և յարմարաւոր է։*

## ՎԱՐԱՁԱԲՈՒՆ

*Այս գիւղը տարածւում է Բողր-Խանի սարից սկիզբն առնող լեռնագօտու Դուրախութի արեւելեան և Մատաղախութի հիւսիսային լանջերի վրայ։ Առաջը տարածւում է մի փոքրիկ դաշտակ։ Գիւղում կայ մի քարաշէն, բաւական գեղեցիկ եկեղեցի, և Ս. Գրիգորեան եկեղ. ծխական միդասեան դպրոցի բաւական յարմարաւոր շէնք։ Բնակիչները Ղարադաղից են. ծերունիներն ասում են թէ Քոչար անունով մի հայ Ղարադաղի Բողր-խանին, նրա ժողովրդին պատճառած նե-*

զուլթիւնների պատճառով, սպանում և փախչում, վերահաստատւում է այս գիւղը, ուր միայն Իբրահիմ խանի միրզաներն էին բնակւում։

Բնակիչներն այժմ 170 տուն են, 506 ար., 425 իգ.։

Պարապում են գլխաւորապէս այգեգործութեամբ, օղեհանութեամբ, գինեգործութեամբ, երկրագործութեամբ (հողը բէկական է) և անասնապահութեամբ։

Թուրքերը և ռուսները այս գիւղին Արանզամին անունըն են տալիս։

## ՆՈՐ ԹԱՂԼԱՐ

Այս գիւղը Վարանդայի ամենաբազմամարդ գիւղն է և գտնւում է Շուշուց դէպի արևելահարաւ, Ղուռու-չայ գետի ափին բարձրացող լեռնաշղթայի հարաւահայեաց լանջին։ Ասել ենք, որ այս լեռնաշղթան տարածւում է մինչև Քիրս գագաթը։ Գիւղը թէև զուրկ է կանոնաւոր փողոցներից, սակայն տները բաւական գեղեցիկ են և ղարադամների թիւն անհամեմատ փոքր։ Կայ նաև մի եկեղեցի, չորս քահանաներով։ Սուրբ Սահակեան միջասեան եկեղեցական ծխական դըպրոցը, որ ունի մի գեղեցիկ, գիւղացիների ծախքով շինուած, շէնք, այժմ փակ է։

Կլիման ցուրտ է։ Շատ անգամ մշուշը պատում է ամբողջ շրջակայքը և զրկում անցորդին գեղեցիկ շրջակայքը դիտելու բաւականութիւնից։

Բնակիչները բոլորն էլ լուսաւորչակա́ն Հայեր են, 530 ծուխ, 1781 արակ., 1459 իգ. տեղափոխուած Հին Թաղլարից։ Պարապում են գլխաւորապէս երկրագործութեամբ և որովհետև հողը մեծ մասով աւազոտ, շատ քիչ և պակաս արդիւնաբեր է, ուստի և պարապում են նաև ածխագործութեամբ։ Եւ պէտք է ասել, որ Շուշեցիների գործածած ածխի ամենամեծ մասը Թաղլարեցիներն են հայթհայթում։ Ամառը պարապում են և՛ թթենիների մշակութեամբ և օղեհանութեամբ։

Ընտանի կենդանիներից Թաղլարեցիները գլխաւորա-

պէս ջորիներ են պահում, երկիրը լեռնոտ լինելու պատճառով: Ձիեր շատ քիչ կան:

Թաղլարի շուրջը կան նախկին գիւղերի աւերակներ. այստեղ՝ դէպի արեւելահիւսիս բարձրանում է Մար-Խաթունի (Մայր-Խաթուն) սարը, (4199 ոտ. բարձ.), որի վրայ գըտնւում են համանուն գիւղի աւերակները: Այստեղ կայ մի փոքրիկ մատուռ, ՌՃԲ թուին շինուած և մի հանգստարան:

Թաղլարի հարաւային կողմում, Ղուռու-չայի ձախ ափին գտնւում է Իշխնեցէք, այսինքն իշխանի գիւղատեղին. իսկ դէպի արեւմուտք՝ Հանգած եղցէ (եկեղեցի) անունով մի եկեղեցի, հանգստարան և գիւղատեղի:

---

## ՆՇԱՆԱՒՈՐ ՎԱՆՔԵՐԸ

### ԱՄԱՐԱՍ

Ամարասը գտնւում է Շուշուց դէպի արեւելահարաւ 45 վերստ հեռաւորութեամբ, Մուղանի դաշտի մէջ, որ գալով ընդհարւում է Լուսաւորչի և Խաղեղի սարերին և կազմում մի գեղեցիկ հովիտ, որի միջով հոսում է Ամարասու վտակը, սկիզբն առնելով շրջակայ գիւղերի աղբիւրներից:

Վանքը զետեղուած է մի 94 մետր երկարութեան և 56 մետր 50 սանթիմ լայնութեան և 5 մետր բարձրութեան պարսպի մէջ, որի չորս անկիւններում բարձրանում են մի մի բուրգ. իսկ պարսպի մէջ կան հրացան արձակելու տեղեր:

Վանքը 23 մետր երկարութիւն, 12 մետր 50 սանթիմ լայնութիւն և 6 մետր բարձրութիւն ունի: Շինուած է 1858 թուին սրբատաշ մաքուր քարից:

Չորս քառանկիւնի անպատուանդան սիւների վրայ բոլորւում են ռոմանական կամարներ, որոնց յենւում է ռոմանական կամարակապ ձեղունը: Արեւմտեան կողմի առաջին կամարների միջեւ բացւում է մի մետր տրամագծով մի կլոր անցք, որի վրայ շինուած է մի փոքրիկ կաթուղիկէ, որ ծա-

ռայում է որպէս զանգակատուն։ Ունի միայն մի դուռն ռոմանական կամարով արեւմտեան պատի մէջ, որի բարձրում նոյնպէս ռոմանական մի պատուհան։ Հիւսիսային և հարաւային պատերի մէջ եւս բացւում են մեծ և լայն նոյն ձեւի, երեքական պատուհաններ, ինչպէս և՝ մինն արեւելեան պատում։ Ունի միայն մի աւագ խորան և. երկու խորհրդարան։ Սեղանի առաջ կախուած է մի գեղեցիկ ջահ։

Ատեանի հիւսիսային կողմից 18 ոտ. սանդուղով իջնում են մի ստորերկրեայ 3 մետր 75 սանթեմէտր երկարութեան, մի մետր 90 ս. լայնութեան և $3^1/_2$ մետր բարձրութեան մի փոքրիկ վիրապ, ուր ամփոփուած է Ս. Գրիգորիս Աղուանից կաթուղիկոսի նշխարները։ Այս մատուռը բացի այժմեան դռնից ունեցել է և մի ուրիշ դուռն արեւելեան կողմից, որ այժմ փակուած է։

Վանքի մէջ, հիւսիսային դասի մօտ, պատին կից գըտնւում է մի բաւական գեղեցիկ գերեզմանաքար, որ ընկնում է մատուռի մէջ ամփոփուած Ս. Գրիգորիսի նշխարների վրայ։ Գերեզմանաքարը մի պատուանդանի վրայ դրուած դագաղաձև միաձոյլ քար է, որի եզրները գեղեցիկ, շըղթայակապ նաշխերով եզրափակուած են։ Քարի երեսին քանդակուած է կաթողիկոսական թագ, գաւազան և խաչ, իսկ ներքեւում կայ հետեւեալ տապանագիրը.

*Տամբարան սրբոյն Գրիգորիսի Աղուանից կաթուղիկոսի թոռին սրբն Գրիգորի Լուսաւորչի Պարթեւի:*

Տապանաքարի երկու կողքին՝ *ծնեալ յամի ՉԻԲ—322. օծեալ ՅԽ—340 եւ նահատակեալ ՅԽԸ—348 ի Սանեսան թագաւորէն Մասգթաց 'ի Դըրբնդ. բերեալ յԱմարաս սուրբ նշխարս ի ձեռն ձեռնասուն սարկաւագաց նորին Արցախումի:*

*Արձանաքարս սրբոյն Գրիգորիսի աշխատութեամբ ճարտարապետ Միքայէլ Տէր Խարայէլեանց Շուշեցւոց ի յիշատակ կենդանեաց եւ ննջեցելոց իւրոց՝ 'ի 1889 ամի 1 նոյեմբերի՝*

Դերեզմանաքարի կողքից մի փոքրիկ անցք է բացուած, որտեղից աղօթողներն հող են վերցնում և ուտում և կամ խառնում ջրի հետ և խմում։

Վանքի խորհրդարանում դրուած է Ս. Գրիգորիսի մասունքը արծաթէ ձեռքի մէջ ամփոփուած։ Ժողովուրդը մատանիներ է անցկացրել մատերը և մի սաթից պատրաստուած ապարանջան դրել թևը։

Պարսպին կից գտնւում են 24 կամարակապ, բաւական բարձր սենեակներ, որոնք կարօտ են մասնաւոր վերանորոգութեան։ Այժմ հարաւային կողմում գտնուած երկրորդ յարկի երեք սենեակը վերանորոգում են վանահօր բնակութեան համար։ Կան նաև երկու ընդարձակ գոմ և երկու սենեակ ձիապանների համար։

Վանքի կալուածներն են.

1) Վարելահող՝ մօտ 300 դես.

2) Այգետեղի՝ մօտ 340 դես.

3) Մի ջրաղաց։

4) 10 կով, մի ձի և մի աւանակ։ Տարեկան եկամուտը հասնում է 700 ր.

Վանքը այժմ պահպանում է մի վարդապետ։

## ՀԻՐՀԵՐ

Գտնւում է Ամարասից դէպի հարաւ, համանուն լեռնագօտու հիւսիսային լանջի վրայ։

Այս գիւղում նշանաւոր է ս. Գրիգորիսի հօյակապ, սըրբատաշ քարերով շինուած եկեղեցին, որի երկարութիւնն է 19, լայնութիւնը 14, իսկ բարձրութիւնը՝ մօտ 8 մետր։ Չորս սիւների վրայ բոլորում են ռոմանական կամարներ և ռոմանական ձեղուն։ Եկեղեցու ժողովրդեան կանգնած տեղից բարձրանում է մի փոքրիկ գմբէթ։ Եկեղեցու մէջ կայ մի սեղան և երկու խորան։

Եկեղեցու վրայ կան հետևեալ արձանագրութիւնները.

Սեղանի ժողովրդահայեաց երեսին.

Կամաւն Աստուծոյ ես Պետրոս Կաթողիկոս

Աղուանից սուրբ աթոռոյ Գանձասարայ՝ նորոգեալ սուրբ աթոռս Ամարասայ արհի եպիսկոպոսութեան բոլոր նահանգի Վարանդու եւ Քոչիզու, քանզի փեռեկտեալ եւ պատառեալ էին զմիմեանս որբին արարեալ ըստ իւրաքանչիւր կամաց. իսկ մեք զցանկ հայրենի նորոգեալ ժողովեցաք, նորոգեցաք զսիրելի աշակերտս մեր զտէր Բարսեղ արհի եպիսկոպոսն, որ եւ հրամայեցաք սմա շինել զեկեղեցի իմ Հովարան Ամարասայ, զոր եւ շինեալ կատ․ րեաց ըստ մերում հրամանի յաւուր տանի այլակերպութեանն Քրիստոսի. եւ աւրհնեցաք զսուրբ տաճարս անուանելով զսա սուրբ Գրիգորիս՝ բերելով ի նշխարաց սրբոյն Գրիգորիսի ամփոփեցաք երկրիս Վարանդու եւ Քոչիզու, զի եղիցի այս երկու աթոռս մի։ Ով ոք զայս վիճակս բաժանել եւ զոք նստեցուցանել այլ տեղի, եթէ կաթուղիկոս իցէ կամ եպիսկոպոս Տէր զայնպիսին՝ նզովեալ եղիցի ՅԺԸ. հայրապետացն, ընդ խաչահանուացն դասեցի. Յուդայի մասնակից եղիցի։ Այս կտակ եւ արձանագիր յաւիտեան մնայ հաստատ։

Հարաւային դրան վրայ.

Ծնորհօքն Քրիստոսի ես Բարսեղ եպիսկոպոս աշակերտ Պետրոս կաթուղիկոսին եւ ծնողն իմ՝ Աղայն եւ Գիւլազայն 'ի զաւառէն Վարանդու, ի գեղջէ Գիլան՝ նորոգեալ պայծառացուցի զսուրբ աթոռս Ամարասայ, պարսպօք շրջապատեցաք հանդերձ յոգնաթիւ սենեկօք, զեկեղեցիս շինեցուցաք զարդուք, տուաք շինել զեկեղեցիս անուամբ Սրբոյն Գրիգորիսի Հովարան սուրբ աթոռոյն Ամարասայ, որ եւ մասն բերեալ 'ի նմանէ ամփոփեցաք աստ, իսկ հիմնարկեցաւ ՌճԺԶ. թվին, կատարեցաւ ՌճԻԵ-ին։

Հարաւային խորանի դրան վրայ.

*Մեր հիմնեցայ ճամփայթս տանուտէր Ղասումս, մեծ եւ փոքր ճանապարհի գլխի տափին սկիզբն վախմ էր սուրբ Աստուածածնին. մեք եւս վախմ արարաք Սուրբ Գրիգորիսին. ով քանդէ, նզովեալ եղիցի յԱստուծոյ։*

Այս խորանի մէջ կան երկու գերեզմանաքարեր, որոնցից մեծի վրայ կայ հետեւեալ տապանագիրը.

Այս է տապան Հայրապետի, սրբազան մեծ վեհապետին
Տեառն Խորայէլ Դիտապետի, տանս Աղուանից հովուապետի.
Աջորդ սրբոյն Եղիշէի, աթոռակալ Գրիգորիսի.
Ժառանգ մեծին Սիմէօնի, և թոռն պետին Ներսիսի,
Զի էր որդի մեծատանի, իշխանազնեայ այն Ասլբէկի,
ՌՄԾԼ Հայոց թուի, յուլիսի երեքն փոխճանի.
Յիշման տացէ սա արժանի, ով ոք կարդալ հանդիպեցի։

Արեւմտեան դրան վրայ.

*Ես Պետրոս կաթողիկոս՝ աշակերտ Ղուկաս վարդապետին եւու շինել կաթողիկէս յիշատակ ինձ եւ աշակերտին իմոյ Բարսեղ եպիսկոպոսին. յիշեցէք ի Քրիստոս։*

*Աստուած աւրհնէ Քոչիզու ժողովուրդն այն աւրհնութեամբն, որ ոչ անցանէ. ձեռնտու եղեն կրին եւ քարին։*

*Զաւրութեամբն Աստուծոյ շինեցաւ սուրբ եկեղեցիս 'ի դառն եւ 'ի նեղ ժամանակիս, վասն ծովացեալ մեղաց մերոց եկն մարախ եկեր զերկիրս Աղուանից եւ աւերեաց բազում տեղիս 'ի թագաւորութեան Շահ Սուլէմանին, պարոնութեան Միրզա Ղուլի բէկին եւ իշխանութեան երկրիս Վարանդայ Մելիք Բաղու որդի Մելիք Շահնա-*

*զարին եւ օժանդակութեան Ովանիսին եւ քահանայից եւ տանուտեարց, մեծամեծաց եւ փոքունց ամէն. Թվին ՌՃԻԲ.*

## ԿՈՒՍԱՆԱՑ ԱՆԱՊԱՏ

«Կուսանաց անապատ» կոչուած վանքը գտնւում է Ջանախչի գիւղի հարաւ արեւմտեան կողմում, մի փոքրիկ քրծի վրայ, որի եզրները լւգում է Քիրսայ գետակը և առջևում բարձրանում Քիրսի, Ղոնչիկի և Մաւասի սարերը, այնպէս որ անապատը իւր կոյսերին միշտ նուիրել է մի գեղեցիկ տեսարան։ Անապատի արեւմտեան կողմից ձգւում է նախկին պարիսպը, որ գնում միանում է «Քաջքատուն» կոչուած ժայռին։

Դրան ճակատակալ քարի վրայի արձանագրութիւնը—«Եկեղեցիս Թվ ՌԿԵ»—պարզում է եկեղեցու հիմնարկութեան ժամանակը։ Իսկ Սարգիս եպիսկոպոս Ջալալեանի այս գիւղում տեսած մի գեղեցկագիր Աւետարանի յիշատակարանը *) հաստատում է, որ վանքը շինել են Գայիանէ և Հռիփսիմէ քոյրերը, Տէր Առաքելի աջակցութեամբ։ Այս Աւետարանը ես չգտայ գիւղում, ո՛վ գիտէ ինչպէս է անհետացել։

Բայց աւանդութիւնը այս վանքի հիմնարկութիւնը Աղուանից թագաւոր Վաչագան Գ-ին է վերագրում, իբր թէ սա քրիստոնէութիւնը ուրանալուց յետոյ զղջացել, առանձնացել է այստեղ և իւր կեանքի մնացած օրերը աւետարան կարդալով է անցկացրել, որի համար և՛ գիւղը Աւետարանոց է կոչուել։

Մի ուրիշ աւանդութիւն էլ ասում է, թէ Աղա Մամադ-Խանի 1797 թուի արշաւանքի ժամանակ, զինուորները մտնում են այս վանքն աւերելու։ Բոլոր կոյսերը փախչում են անտառը և թաք կենում, բացի մինից, որ մի փոքր ուշանում է իւր կիսատ աղօթքը վերջացնելու։ Երբ նա դուրս է գալիս, նրա գլխին շողում է զինուորի սուրը, սակայն նա

*) Ճանապարհ· ի մեծն Հայաստան. Մասն Բ. եր. 246—47.

խոյս է տալիս և Աստուածամօր օգնութիւնը հայցելով՝ քարափից ցած ընկնում և աներևոյթ ուժի զօրութեամբ անվտանգ հասնում գետնին և թաք կենում անտառում։ Այս արշաւանքի ժամանակ շատ թանգագին իրեղէնների հետ կենաց փայտի մի մասն ամփոփող մի արծաթապատ խաչ ևս գերի է տարւում, որ յետոյ, աւանդութեան ասելով՝ աղաւնի դարձած վերադառնում է վանքը ու նորից նախկին խաչի ձևն ստանում։

Մի ուրիշ աւանդութիւն էլ ասում է, թէ ամէն տարի զատկին մի այծեամ Աստծու հրամանով գալիս էր այստեղ և մեկնում իւր վիզը՝ զոհուելու, սակայն յետոյ, մարդկանց մեղքի պատճառով՝ Աստուած դադարեցրեց այդ զոհը։

Կուսանաց անապատը շինուած է տեղական տաշած քարից։ Յատակագիծը խաչաձև է, 12 արշին երկարութեան, 8 արշին լայնութեան և 7 արշին բարձրութեան։ Երկու բոլորովին հասարակ սիւների վրայ բոլորում են աղեղնաձև կամարներ և կամարակապ ձեղուն, որ արտաքուստ եռանկիւնաձև է։ Արևմտեան կողմում բացւում է մի փոքրիկ դուռն, և վերևում՝ երկու պատուհան։ Հարաւային պատի մէջ ևս կայ երկու, իսկ արևելեանի մէջ մի փոքրիկ պատուհան։ Ունի մի սեղան, երկու խորան և մի աւազան։ Անապատի արևմտեան կողմում կայ մի աղեղնաձև կամարակապ ձեղունով անսիւն գաւիթ՝ 6 մետր երկ. 9 մ. լայնութեան, իւրաքանչիւր պատին մի փոքրիկ պատուհանով։ Սա եղած է Մելիք Շահնազարեանների իշխանական ցեղի դամբարանը։ Այստեղ գտնւում են Մանուէլ վարդապետի, Մելիք Միրզայի, Մելիք Յիւսէինի, Մելիք Յովսէփի, սրանց կանանց և մայրապետի գերեզմանները։

Անապատի շուրջը ամուր պարսպով պատած է եղել, որի միայն հետքերը կան, իսկ պարսպի ներսը եղել են շատ խցեր՝ կոյսերի բնակութեան համար։

Այժմ վանքը բոլորովին անխնամ է թողնուած։

Թէ կուսանաց անապատում և թէ դուրսը գտնուած

Մելիքների գերեզմանների տապանագրերից նշանաւոր են հետեւեալները.

*Այս է տապան Մէլիք Շահնազարին (Գ.)*
*Որ է որդի Մէլիք Ցիւսէինին.*
*Արցախ գաւառաց իշխանին,*
*Վարանդու տիրապետողին.*
*Սա էր հայր Մէլիք Ջիմշիտին.*
*Ըստ ռուսաց պլկովնիկին,*
*Ազնիւ ոմն Հայոց ազգին,*
*Արի եւ քաջ զօրավարին*
*Խնդրեմ առնել զայս արժանին*
*Միոյ բերան Հայր մեղային,*
*ՌՄԽ. Թվին (1792)*

---

*Այս է տապան Մելիք Ջիմշուտին*
*. . . . Սա էր*
*Թոռն մեծասեռին*
*Ազնիւ Մէլիք Ցիւսէյնին (Բ).*
*Խնդրեմ առնել զայս արժանին*
*Միոյ բերան հայր մեղային.*
*Թվ. ՌՄԿԱ. ապրիլի ԻՆ (1812)*

---

*Այս է տապան Մէլիք Ջհանբաշխին*
*Իշխող Վարանդայ գաւառին.*
*Ազնիւ որդոյ Մէլիք Շահնազարին*
*Վախճանեցաւ 1822.*

---

*Մէլիք Խուդա՛Հ իշխող Վարանդայ*
*Թոռն ըստ մարմնոյ Մէլիք Ջիմշիտայ,*
*Այս նորա տապան յորում մարմնով կայ,*
*Կենդանի հոգւով միշտ եւ յարակայ,*
*Ամաց քառասնից եւ սա յաշխարհէ*

Ձերծ արդ գտանի յամէնայն չարէ.
Զայս վէմ ետ շինել առն իւրում 'ի ծօն,
Ի պատիւ սորա կին սորին զգօն,
Թվ. ՌՄՁԲ. էր» (1833)։

---

## ՂԵՒՈՆԴԵԱՆՑ ԱՆԱՊԱՏ ԿԱՄ ՂՈՆԴԻԿ

Սա մի փոքրիկ, անտաշ քարերով, առանց կամարի մի մատուռ է Ղևոնդեանց անունով, շինուած այն բարձր սարի գագաթին, որ միայնակ բարձրանում է Աւետարանոց, Սարգսաշէն, Վերին Թաղավարդ և Մոշ-խմհատ գիւղերի կենտրոնում։ Մատրան կից է մի գաւիթ։ Անապատի դրան հիւսիսային սեմի վրայ գրուած է ՌԷՃ. իսկ գաւթի դրան վերև ՌՄԻԷ-ին յիշատակ է գաւիթս Զաքարիա, Յովսէփ և Մելքոն վարդապետաց։

Ծերունիները ասել են գեր. Սարգիս եպ. Ջալալեանին, թէ ս. Ղևոնդ երէցի ազգականները Վարանդայում պտտելով, նրա նշխարներից՝ գտել են և բերել ամփոփել այդտեղ և կառուցել եկեղեցի։ Եկեղեցում կայ Ս. Ղևոնդի պատկերը, որ գեղարուեստական ոչ մի արժէք չունի։

Այս անապատում կան հ' ետևեալ մասունքները.

1) Մասն Թադէոսի առաքելոյն, մի արծաթեայ փոքրիկ խաչում։

2 և 3) Մասն Յովհաննու Մկրտչի, զետեղուած մի արծաթեայ փոքր և մի մեծ խաչում։

4) Ղևոնդեանց մասունք, մի արծաթի միջակ խաչում։

Անապատի շուրջը պարիսպ է քաշուած, որի ներսում կան մի քանի հին սենեակներ, որ այժմ կիսաւեր են։ Այժմ եղբայր ժամհարեանները մի երկյարկանի գեղեցիկ բնակարան են շինում ուխտաւորների համար։

Պարսպի մէջ կան բաւական թուով գերեզմաններ։

Անապատումս բնակւում է իբրև պահապան մի քահանայ իւր ընտանիքով։

## ԵՂԻՇԱՅ ԿՈՒՍԻ ԱՆԱՊԱՏ

Գտնւում է Նուշուց դէպի արեւելք, Սօս գիւղի, Լուսաւորչի սարի, Քերթ և Ղուզի ծարտար գիւղերի միջեւ բարձրացող բաւական բարձր սարի վրայ, ուր կան նաև թեղի և տխկի ծառեր։

Մենաստանը 16 մետր երկարութիւն, 9 մետր 75 սանտ. լայնութիւն և 5 մետր բարձրութիւն ունի։ Երկու հաստաբակ սիւնի վրայ բոլորում են ռոմանական կամարներ և՛ կամաբակապ ձեղուն, որի մէջտեղից բարձրանում է մի փոքրիկ կաթուղիկէ, որ ծառայելիս է եղել իբրև զանգակատուն։ Մենաստանը շինուած է անտաշ որձաքարով։ Մենաստանի մէջ կայ մի աւագ սեղան, երկու խորհրդարան, աւազան, չորս լուսամուտ և մի դուռն արեւմտեան կողմից։

Աւագ խորանի տակ ամփոփուած է Ս. Եղիշէ կուսի նշխարները, և բեմի մէջ կայ մի փոքրիկ խորանաձև բացուածք, որի մէջ կայ մի փոքրիկ, բայց շատ խորը ծակ, որ հաւանականօրէն հասնում է մինչև կուսի գերեզմանը։ Հիւանդները աղօթելուց և մոմեր վառելուց յետոյ մի անմեղ երեխայի ձեռքը փաթաթում են շորերով և այդ խորանի մէջն են երկարացնել տալիս։ Ասում են թէ միքանի րոպէից յետոյ հիւանդի ցաւած տեղին համապատասխանող մի ոսկր թռչում կանգնում է երեխայի թեւին։ Անմիջապէս վերցնում են այդ ոսկրը, ձգում ջրի մէջ և այդ ջրով լուանում հիւանդի ցաւող մասը, որ իսկոյն և եթ լաւանում է։

Բեմի վրայ կայ մի քարեայ խաչկալ, որի հարաւային դրան երկու սիւնի վրայ գրուած է. «Յիշատակ է Համասուտանց Միրզախանի որդի Մանուէլ Վարդապետիս այս խաչկալս. եղբարքն իմ Պապան և Վանլալան, քորար իմ Գուլասմար, ենթաղիհ, ծնողքն իմ Մխանուիմ, կողակից իմ Նազլու, որդի իմ Հախնազար, Շահպատ, Սիրուն, Վռամին, Մագրվանին և տատերն իմ Բաջուն, Դոստաշին, թվ. ՌԾԴ.

Դրան ճակատի քարի վրայ՝ Կարողութեամբն ամենազօրին Աստուծոյ ես Նուաստ տէր Յոհան անձամբ տկար արե-

ղայս և որդէգիր Փոքր տէր Յովանս շինեցաք սբ. զեկեղեցիս ըստ անուան Սրբուհոյ կուսին Եղիշէի 'ի կաթուղիկոսութեան տեառն Երեմիայի և տանս Աղուանից որ է մայր աթոռոյն Գանձասարայ վասնորոյ յիշել աղաչեմք հանդերձ ծնողովք մերովք ՌՃԽԴ.

Արևմտեան պատի մէջ կան խաչաքարեր, որոնցից լուսամուտից վերև գտնուողի վրայ գրած է.

Տէր Աստուած Յիսուս Քրիստոս, ես անարժան ուստայ Կարբելս շինեցի այս եկեղեցիս ի ձեռամբ իմով, ով կարդա մէկ բերան ողորմի տայ. Խաչս յիշատակ է Գաբրելիս և ծընողաց իմոց և դստերաց և որդոց իմոց։

## ԲՈՒԻ ԵՂՑԷ (ԵԿԵՂԵՑԻ)

Հացի գիւղից դէպի արևելք, փոքր ինչ հեռու մի սարի լանջին գտնւում են բազմաթիւ գերեզմաններ, երկու միմեանց մօտ գտնուող եկեղեցի, երկու մատուռ և երեք բեմ։ Ժողովուրդը այս բոլորին Բուի եղցէ անունն է տալիս։

Առաջին եկեղեցին գտնւում է լերան գագաթին, մի հարթութեան վրայ և ունի 7 մետր երկարութիւն, $7^1/_2$ մետր լայնութիւն և 8 մետր բարձրութիւն։ Շինուած է սպիտակ անտաշ քարով։ Սիւներ չունի և կամարակապ է, առանց գըմբէթի, ունի մի նեղ աւագ սեղան և երկու խորհրդարան, որոնց դռները գեղեցիկ նշխերով և խաչերով եզրափակուած են։ Ձախ խորանը կիսով չափ քանդուած է։ Սեղանի առաջ դրուած է մի քար, որի վրայ կայ հետևեալ արձանագրութիւնը։

*Թվին ՁԺԹ: ի տերութեան Տր Ստեփանոսի յն . . . սիսի (յեպիսկոպոսութեան ՙնէրսիսի) Ես Մխիթար որդի Յո . . . . կանգնեցի զխաչս:*

Եկեղեցու մէջ կան բաւական թուով գերեզմաններ, որոնցից մինն ունի հետևեալ տապանագիրը.

*Այս է տապան Տր Յօհանիսին որդի Տր Կարապետին. Թվ. ՌՄԴԷ.*

Բ. եկեղեցին առաջնի արևմտեան կողմումն է, երեք մե-

տըր հեռաւորութեամբ. երկարութիւնն է 6 մետր 50 ս., լայնութիւնը՝ 4 մետր 18 սանտ. և բարձրութիւնը՝ 7 մետր։

Արևմտեան պատը գրեթէ ամբողջովին ծածկուած է խաչերով, միակ դրան շուրջը կան գեղեցիկ քանդակներ և կողքերին մի մի ռըլիէֆ սիրամարգ, որոնց ձախի կողքում փորագրուած է.

*Զխաչենիկ վարդապետ սուրբ եկեղեցոյս յաղաւթս յիշեցէք 'ի Քրիստոս։*

Բ. մատուռն գտնւում է լանջի ստորոտում. արևմտեան պատի արտաքին երեսը խաչերով ծածկուած։ Արդէն կիսաւեր է։ Սրա դրան հիւսիսային սեմի վրայ կայ հետևեալ արձանագրութիւնը.

*Զ. Շահէն վարդապետ եկեղեցոյս յիշեցէք ի Տէր։*

Դռան վերևում.

*....քահանայ եւ եղբայր իմ Վարհամ եւ վարհայք .... ունաւիս շինեցաք զեկեղեցիս բազում աշխատանաւք յառաջնորդութեան Տէր Յովաննիսին եւ տէր Ներսիսի յիշատակ հոգոց ազգաց եւ ծնողաց մերոց, որք կարդայք յաղաւթս յիշեցէք աշխատողք եկեղեցոյս։*

Ա. բեմն գտնւում է Բ մատուռից փոքր ինչ վերև։ Բարձրութիւնն է 3 մետր 60 ս., լայնութիւնն է 3 մետր 25 ս., հաստութիւնը 1 մետր 83 սանտ.։ Սրա արևմտեան երեսին զետեղուած են խաչարձաններ, եզրափակուած գեղեցիկ նըշխերով։

Բ. բեմը առաջնի հարաւային կողմումն է, իսկ Գ. փոքըր ինչ աւելի հեռու երկրորդից։

Այս բեմերի վրայ կան արձանագրութիւններ, բայց ոըովհետև բաւական եղծուած են, ամփոփ միտք չի դուրս գալիս։ Միայն յայտնի է լինում որ առաջինը շինուած է ՆԱ, երրորդը Ջժ թուին։

## ԿԱՐՄԻՐ ԵԿԵՂԵՑԻ

*Ծովատեղ գիւղի մօտ մի բլրակի վրայ գտնւում է կարմիր եկեղեցին, որ Մելիք Փաշայեանների գամբարանն է եղած։ Սա բաղկացած է մի փոքրիկ, անսիւն, կամարակապ եկեղեցուց և երեք ստորերկրեայ մատուռներից, որոնք միմեանց հետ հաղորդակցւում են փոքրիկ դռներով։ Մատուռների, ինչպէս և՛ եկեղեցու մէջ կան գերեզմաններ, որոնց տապանաքարերը ահագին միապաղաղ քառանկիւնի սև քարեր են, առանց մի որևիցէ գրութեան կամ քանդակի, որոնց ներքին կողմում կանգնացրած են միևնոյն լայնութեան և մի սաժէն բարձրութեան խաչարձաններ, հրաշալի նշխերով եզրափակուած։ Խաչերի ներքև կան տապանագրեր։*

*Ա. մատրան ճակատակալ քարի վրայ կայ հետևեալ արձանագրութիւնը.*

*Թվ. ՌՀ. Դաւիթ եպիսկոպոս՝ յիշատակ է եկեղեցի վանքս որ լինի սա դամբարան եւ շիրիմ մերոց նախնեաց։*

*Ա. մատրան խորանի հարաւային խաչի վրայ.*

*Թվ. ՌԼԵ. 'ի հայրապետութեան Դաւիթ, առաջնորդի Մէլիք Փաշին, Պետրոս եպիսկոպոս:*

*Բեմի խաչի վրայ.*

*Դաւիթ արեղայ կանգնեցի զխաչս Առան վարդապետի Տորոնեց... եւ զիս իշա (յիշեա).*

*Խորանի հիւսիսային կողմի խաչքարի վրայ.*

*Թվ. ՌԻԵ. ի հայրապետութիւն Տէր Յովհանիսի. առաջնորդութիւն Մելիք Փաշին. յանուն Աստուծոյ ես Սահակ եպիսկոպոս կանգնեցի զխաչըս 'ի փրկութիւն եղբաւր իմոյ Ղազարին, աղաւթըս յիշեցէք:*

*Բ. մատրան մի մեծ խաչի վրայ.*

*Այս է Սահ:ակ եպիսկոպոսն, որ փոխեցաւ...*

*միւս կողմի վրայ.*

*Անուամբն Աստուծոյ ես Պետրոս եպիսկո-*

*պրս, Դաւիթ խան այանս կանգնեցինք զխաչս 'ի փրկութիւն Սահակ եպիսկոպոսին, աղաւթեցէք։*

**Դ. մատրան մէջ մի խաչքարի վրայ.**

*Կամաւ ամենակալին Աստուծոյ, ես Մելիք Աւան կանգնեցի զխաչս 'ի փրկութիւն Հօր իմոյ Մէլիք Պապին եւ մաւր իմոյ խոնդի խաթունին, ով որ յիշէք 'ի Տէր, յիշեսջիք առ Աստուած. Թվ. ՌԺՆ. ին:*

**Մի ուրիշ խաչի վրայ.**

*Կամաւ ամենակալին Աստուծոյ ես Մէլիք Աղամ որդի Մէլիք Պապին որդոյ Նախիջանայ Թոռանն որդոյն Թումասին որդոյ մեծի իշխանին Աւանայ կանգնեցաք զխաչս 'ի փրկութիւն նախնեաց մերոց, ով որ երկրպագէք, յիշեցէք 'ի Տէր, Աստուած զձեզ յիշէ:*

**Այլ խաչարձանի վրայ.**

*Իշխանութեան Թահմազին, Հայրապետութեան տեառն Գրիգորիսի եւ առաջնորդութեան ուխտիս Սահակայ եպիսկոպոսի....*

**Այս եկեղեցու շուրջը կան բազմաթիւ գերեզմաններ, որոնց միքանիսի տապանաքարերը շատ գեղեցիկ են։ Այստեղ կայ և մի այր, ուր Սարգիս Ջալալեանի ասութեամբ ածուած են սրից և սովից մեռածների դիակները։**

## ԲՈՂՐԽԱՆԻ ՎԱՆՔ

**Գտնւում է Համանուն սարի Հարաւ արևելեան կողմում ձգուող մի փոքր ձորակի ձախ լանջին, փոքրիկ Հարթակի վրայ։ Երկարութիւնն է 9 մետր, լայնութիւնը՝ 5 մետր 60 ս.։ Շինուած է մի կամարի վրայ, անտաշ կաթնագոյն քարով, որ ունի մի դուռն, երեք լուսամուտ և երկու խորհրդարան։**

**Վանքի շուրջը բոլորում է մի պարիսպ, որ ունի մի դուռն։ Պարսպի Հարաւային և արևմտեան կողմերում ներքուստ շինուած են բազմաթիւ խցեր միաբանների բնակու-**

*թեան համար, որոնք այժմ բոլորն էլ, բացի վանահօր սենեակից, կիսաւեր են։*

## ՄԱԽԱՍԻ ՎԱՆՔ

*Մաւաս գիւղի մօտ, մի բարձր բլրի վրայ, որի արեւելեան և հիւսիսային կողմերում արձանանում են ահագին ժայռեր, միացած միմեանց հետ մի հաստ պարսպով, որի այժմ միայն հետքերն են մնում։ Վանքը կառուցուած է երկու սիւների վրայ. խորանի տակ կայ չորս գերեզմանաձև շիրիմ։ Պարսպի մէջ եղած են խցեր, միաբանների համար, բայց այժմ բոլորն էլ աւերակ են։ Այս վանքը և իւր շիրիմները մեծ ուխտատեղի են համարւում։*

## ՇՈՇԿԱՑ ՎԱՆՔ

*Խաչմաչ և Մամնայ գիւղերի միջև տարածուող լեռնագօտու գագաթին* (4669 *ոտ.*) *է գտնւում։ Մի կամարի վրայ հաստատուած* 9 *մետր երկ. և* 6 *մետր լայնութեան վանք է, որ ունի մի սեղան, երեք լուսամուտ և մի դուռն արևմտեան կողմից։ Գաւթում կան միքանի ծառեր, որ սուրբ են համարւում։*

---

# ՆՇԱՆԱՒՈՐ ԲԵՐԴԵՐԸ

## ԴՋԴԱԼԱ (ԱՂՋԿԱՑ ԲԵՐԴ)

*Համանուն գիւղից դէպի հիւսիս բարձրանում է մի լեռ, որի արեւելեան մասում տարածւում է մի ընդարձակ դաշտավայր, հիւսիսային կողմում հազիւ մի վերստ հեռաւորութեամբ ցցւում է Քարին-կառը սարը, արեւմտեան կողմում Մեծ Նահատակի և Սառաջաքար, իսկ հարաւայինում Փոքր Նահատակի և Փլեկի սարերը, որոնք փոքր ինչ աւելի բարձր են սրանից։*

Այս սարի հիւսիսային և արևմտեան կողմերը ուղղահայեաց ժայռեր են, իսկ արևելեան և հարաւային կողերը զառիվայրեր։ Ահա այս սարի վրայ է գտնւում Ղըզղալան։

Նկատելի է, որ մի հաստ պարիսպ և մի խոր խրամ բոլորելիս են եղել այս սարի շուրջը։ Նրան գագաթին նոյնպէս նկատւում է մի պարիսպ, հետևապէս և կարելի է ենթադրել, որ միջնաբերդ էլ է եղել։ Բերդի արևմտեան լանջին կան երեք աւազան, գտնուած փողրանքները ցոյց են տալիս, որ ջուրը բերուած է եղել Փլեկի սարից։ Միջնաբերդի մէջ նկատելի են ստորերկրեայ շինութիւններ։

Մի գիւղացի ինձ ցոյց տուեց մի բրոնզեայ թուր, որ գտել էր բերդի ստորոտում մի գերեզմանի միջից։ Ցաւալի էր, որ գիւղացին թուրը ոսկեայ կարծելով՝ կտոր կտոր էր արել, մաս մաս ծախելու համար։

## ՂԱԼԻՆ-ԽՈՒԹ

Այսպէս կոչւում է այն սարը, որ բարձրանում է Կիշու, Մշկապատի և Կիւնի ձորերի միջև, և որ ունի 3735 ոտ. բարձրութիւն։ Սրա հարաւային և արևմտեան կողմերն անմերձենալի քերծեր են, իսկ արևելեան և հիւսիսային կողմերում տարածուած է եղել մի ամուր պարիսպ, թէև առանց աշտարակների, որի միայն հիմքերն են մնացել։ Կան մի քանի ջրաւազաններ և հիւսիսային պարսպի ստորոտում մի անուշահամ աղբիւր։

## ԲՐԴԱՀՈՆՋԻՆ ՂԱԼԱ

Ներքին Թաղավարդի արևելեան կողմում բոլորովին առանձնացած կանգնած է 3300 ոտնաչափ բարձրութեան մի սար, որի արևելեան, հարաւային և արևմտեան կողմերն ահագին ժայռեր են, իսկ հիւսիսային կողմը սաստիկ զառիվայր։ Այս կողմում, ժայռից ժայռ ձգւում է կրկնապարիսպ, որի արտաքինն ունի և՝ աշտարակներ։ Ահա՛ այս է Բրդա-

Հոնչին կամ Բրդաունչ ղալան, որ միայն մի դուռն ունի արեւելեան կողմից: Ներան գագաթին գտնւում է և՛ մի միջնաբերդ, ուր կան բնակարանների հետքեր: Կան միքանի այրեր և ջրի աւազաններ: Բերդի մէջ ոչ մի աղբիւր չկայ, միայն արեւելեան ստորոտում բղխում է մի աղբիւր, որ հաւանականօրէն ջուր է մատակարարելիս եղել բերդին: Այժմ բերդը ամբողջովին ծածկուած է խիտ անտառի մէջ *):

Ե. Լ.

---

*) Իմ ճանապարհորդութեանս ժամանակ ուղեցոյց եմ ունեցել Գեր. Մակար եպ. Բարխուդարեանի «Արցախը», որ բաւական նըպաստել է ինձ, մանաւանդ արձանագրութիւնները ընդօրինակելիս:

# ՍՏԱՏԻՍՏԻՔԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ

*(Շուշու ամբողջ գաւառի մասին)*

---

Ամենից առաջ մի քանի կարեւոր բացատրութիւններ ուսումնասիրութեան վայրի, նիւթերի և տեղեկութիւնների դասաւորութեան մասին։

Ինչո՞ւ տեղեկութիւնները վերաբերում են Շուշու գաւառին և ոչ բացառապէս Վարանդային։

Վարանդան այն սահմաններում *), որը նրան տեղական ժողովուրդն է տալիս, ինչպէս յայտնի է, այժմ առանձին վարչական միաւոր չի կազմում և ամբողջութեամբ մըտնում է Շուշու գաւառի մէջ, իսկ որովհետեւ այն սակաւաթիւ ստատիստիկական նիւթերը, որ մենք ունէինք մեր ձեռքի տակ, վերաբերում էին Շուշու ամբողջ գաւառին, դրա համար էլ միայն Վարանդայի բնակչութեան ստատիստիկա մենք չէինք կարող կազմել։ Առաջարկելով ներողամիտ ընթերցողներին Շուշու գաւառի (գլխաւորապէս հայ) բնակչութեան ստատիստիկան, թոյլ ենք տալիս մեզ կարծել, որ այն՝ ինչ բնորոշ է ամբողջ գաւառի բնակչութեան, բնորոշ կը լինի և Վարանդայի համար, որովհետեւ վերջինս թէ կլիմայական և թէ տնտեսական ու կուլտուրական տեսակէտից շատ չի տարբերւում գաւառի միւս մասերից, օրինակ Խաչէնի հայ գաւառակից, որ Վարանդայից յետոյ ամենահայաբնակ տեղն է Շուշու գաւառում։

---

*) Տես «Տեղագրութիւն»։

Զուննելով աւելի ստոյգ և արժանահաւատ աղբիւրներ, մենք ստիպուած էինք օգտուելու այնպիսի հիմնարկութիւնների հաւաքած նիւթերից, որոնց ձեռնհասութիւնը ստատիստիքական գործում չափազանց կասկածելի է։ Չնայած այն բոլոր խստութեան և զգուշութեան, որը մենք գործ ենք դրել այդ նիւթերի վերաբերմամբ, վերջիններիս վրայ հիմնուող մեր տեղեկութիւնները բնականաբար միայն մօտաւորապէս ճիշտ են։ Թէ ինչու մենք վստահացանք նմանօրինակ «միայն մօտաւորապէս ճիշտ» թուեր տալ ընթերցողներին, դա այն պատճառով, որ այդ թուերը ևս ընդունակ են ընդհանուր գծերով ցոյց տալ ստատիստիքական մի քանի երևոյթների զարգացումը Շուշու գաւառում, որովհետև նոյնատեսակ սխալները բոլոր տարիների թուերի մէջ փոփոխել չեն կարող այս կամ այն երևոյթի զարգացման բնաւորութիւնը տարիների ընթացքում։ Իբրև նիւթ մեզ ծառայել են տեղական կոնսիստորիայի 1881—1895 թուականների «տարեկան ժամագրեալ հաշիւ»-ների տեղեկութիւնները, պսակների, ծնունդների և ննջեցեալների մասին Շուշու գաւառում, յետոյ Շուշու գաւառապետի 1895-ի «Отчетъ-ը», նահանգապետին գաւառի դրութեան մասին և վերջապէս Կովկասեան ստատիստիքական կոմիտէի 1893 հրատարակած «Сводъ статистическихъ данныхъ о населенiи Закавказскаго края, извлеченныхъ изъ посемейныхъ списковъ 1886 г.“

Նիւթերի դասաւորութեան մէջ մենք հետևել ենք G. Rümelin-ի «Die Bevölkerungslehre» յօդուածին Schönberg-ի քաղաքատնտեսութեան յայտնի ձեռնարկի մէջ և գերմանական կառավարութեան հրատարակած «Statistisches Jahrbuch für das Deutsche Reich» ժողովածուին· սրանցից էլ վերցրել ենք եւրոպական ժողովուրդներին վերաբերող թուերը։

---

# Ա.

## ԲՆԱԿՉՈՒԹԵԱՆ ԿԱԶՄՈՒԹԻՒՆ

### I. Բնակչութեան թիւը եւ խտութիւնը 1886 եւ 1895 թ. սկիզբներին

Աղիւսակ 1.

| | Տարածութիւնը քառ. կիլոմետրով | Բնակչութիւնը (հայ և թիւրք) 1886-ի սկզբին | | | Բնակչութիւնը (հայ և թիւրք) 1895-ի սկզբին | | | Մի քառակուսի կիլոմետրի վրայ | | Բնակչ. աճումը 1886—95 |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | Արակ. | Իգակ. | Միաս. | Արակ. | Իգակ. | Միաս. | 1886 | 1895 | %-ով |
| Գաւառը քաղաքի հետ . . | 5204,32 | 72664 | 58304 *) | 130968 | 80393 | 65527 | 145920 | 25,2 | 28,4 | 11,2 |
| Միայն գաւառը | 5200,84 | 56890 | 46295 | 103185 | 61597 | 51071 | 112668 | 20 | 21,6 | 8,8 |
| Քաղաքը | 3,5 | 15774 | 12009 | 27783 | 18796 | 14456 | 33252 | — | — | 19,5 |

*) Աղիւսակի մէջ բերուած 1886 թուականի իգական բնակչութեան թիւը 5000-ով աւելի է «Сводъ»-ի մէջ բերուած թուից։ Ահա թէ ինչ հիման վրայ մենք աւելացրել ենք այդ 5000-ը։ 1886 թուականին եղել է Շուշու գաւառում թիւրքեր ըստ «Сводъ»-ի 32209 արական և 20678 իգական (1000 տղամարդի վրայ միայն 646 կին!), իսկ 1895 թ. 34050 արական և 27301 իգական, ուրեմն 9 տարուայ ընթացքում աւելացել են 1841 տղամարդ և 6623 կին, հետևապէս և՛ կանայք համարեա թէ չորս անգամ աւելի արագ են աճել քան թէ տղամարդիկ։ Բայց դա անկարելի է, քանի որ 1) գաւառի տուած տեղեկութիւնների հիման վրայ թիւրք տղաներ շատ են ծնւում քան աղջիկներ (օրինակ 1895 թ. ծնուել են Շուշու գաւառում 498 տղայ և միայն 342 աղջիկ թիւրք մանուկներ) և 2) որովհետև կանանց ինչ որ իմմիգրացիայի կամ տղամարդկանց էմիգրացիայի մասին խօսք անգամ չի կարող լինել։ Թիւրք կանայք իսկապէս 9 տարուայ ընթացքում 6623-ով չեն աճել, և այդ անորմալ երևոյթը պէտք է բացատրել նրանով, որ 5000-ի չափ կանայք չեն մտել 1886-ի վիճակագրութեան մէջ և դրա համար էլ ոստիկանութեան 1895 թ. աւելի ճիշտ տեղեկութիւնների մէջ երևան են գա-

1895 բնակիչների թուի մէջ չեն մտցրուած 1329 (արական 1036, իգական 293) զինուորական և աստիճանաւորների դասակարգերին պատկանող ռուսներ, լեհեր, հրէաներ, վրացիներ և այլն և 1913 օտարահպատակներ (1096 արական, 817 իգական)։ Նոյնը և 1886-ի բնակիչների թուի մէջ։

---

## II. Բնակչութիւնը ըստ ազգութիւնների եւ դաւանութիւնների 1886 եւ 1895 թուերին:

Աղիւսակ 2.

| Տարի | Ամբողջ գաւառի (քաղաքի հետ) բնակչութիւնը | | | Միայն գաւառի բնակչութիւնը | | | Քաղաքի բնակչութիւնը | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Միասին | Հայ | Թիւրք | Միասին | Հայ | Թիւրք | Միաս. | Հայ | Թիւրք |
| 1886 | 130968 | 73081 | 57887 | 103185 | 57893 | 45292 | 27783 | 15188 | 12595 |
| | | 56,2% | 43,8% | | 56% | 44% | | 54,5% | 45,5% |
| 1895 | 145920 | 84569 | 61351 | 112668 | 63985 | 48683 | 33252 | 20584 | 12668 |
| | | 58% | 42% | | 57% | 43% | | 61,8 | 38,2 |

Թէ 1886-ին և թէ 1895-ին հայերը գաւառում և քաղաքում բնակչութեան մեծամասնութիւնն են կազմում։ Մի բան ևս արժանի է ուշադրութեան, որ հայ բնակչութեան համեմատական թիւը (%-ը) թէ գաւառում և թէ քաղաքում (մանաւանդ այստեղ) 9 տարուայ ընթացքում բարձրացել է, իսկ թիւրքերինը ընկել։

Բոլոր հայերը, բաց առած մի քանի տասնեակ (ճիշտ թիւը յայտնի չէ) բողոքականներ, լուսաւորչական են, իսկ թիւրքերից 59204 (արական 32820, իգական 26384) շիա-

---

լիս իբրև նոր աւելացածներ։ Յօգուտ մեր ենթադրութեան խօսում է և այն, որ այդպիսով ստացած աճումը՝ (6623-ից հանած 5000) 1623 աւելի նորմալ է թիւրք կին բնակչութեան համար և նոյնպէս աւելի նորմալ է (մեր երկրի համար), այդպիսով ստացած սեռերի թուական յարաբերութիւնը՝ 1000 տղամարդի վրայ 802 կին, համարեա թէ նոյնքան, որքան և հայերի մէջ (1000-ի վրայ 826)։

ներ են և 2147 հոգի (1230 արական և 917 իգական) սիւննիներ։

*III. Բնակչութիւնը ըստ բնակութեան տեղի 1886 եւ 1895 թ.*

Աղիւսակ 3.

| Տարի | Ամբողջ բնակչութ. որ % է ապրում | | Հայ բնակչութեան որ % է ապրում | | Թիւրք բնակչութ. որ % է ապրում | |
|---|---|---|---|---|---|---|
| | Գաւառում | Քաղաքում | Գաւառում | Քաղաքում | Գաւառում | Քաղաքում |
| 1886 | 78,6 | 21,4 | 79,2 | 20,8 | 78,2 | 21,8 |
| 1895 | 77,4 | 22,6 | 75,5 | 24,5 | 79,6 | 20,4 |

Մի երևոյթ խսկոյն և եթ աչքի է ընկնում այս աղիւսակի մէջ. դա քաղաքի հայ բնակչութեան %-ական աճումը և գիւղական բնակչութեան % անկումն է։

Մեր նպատակից և ոյժերից վեր է այստեղ բացատրել այդ երևոյթի պատճառները։

Թիւրք բնակչութեան մէջ նոյնը չի նկատւում, քաղաքի բնակչութեան սաստիկ դանդաղ աճման պատճառով։

## IV. ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ ԸՍՏ ՍԵՌԻ

*Սեռերի թուական յարաբերութիւնը 1895-ին։*

1000 տղամարդի վրայ ամբողջ գաւառում (քաղաքի հետ) գալիս են 812 կին
» » » միայն գաւառում » » 836 »
» » » քաղաքում . . . » » 773 »
» հայ տղամարդի վրայ ամբողջ գաւառում » » 826 »
» » » » միայն » » » 853 »
» » » » քաղաքում . . . » » 769 »
» Թիւրք » » ամբողջ գաւառում » » 794 »
» » » » միայն գաւառում » » 808 »
» » » » քաղաքում. . . . » » 786 »

Շուշու գաւառում, ինչպէս և բոլոր Հայաստանի եր-

*կիրներում, տղամարդկանց թիւը աւելի շատ է քան թէ կանանց *)։ Բայց մեզ մօտ երկու սեռերի թուերի զանազանութիւնն աւելի մեծ է, քան թէ որև է ուրիշ վիճակագրութեան ենթարկուած հարաւային երկրում։ Այդ մասամբ կարելի է բացատրել նրանով, որ բոլոր կանայք (նամանաւանդ թիւրքերի մէջ) չեն մտել ոստիկանութեան հաւաքած տեղեկութիւնների մէջ։ Աղիւսակի մէջ հետաքրքիր է այն երևոյթը, որ սեռերի թուական յարաբերութիւնը գաւառում թէ հայերի և թէ թիւրքերի համար աւելի նորմալ է քան թէ քաղաքում, երևի այն պատճառով, որ այստեղ աշխատանքի համար եկած ամուրի տղամարդկանց թիւը շատ մեծ է։*

## Բ.

## ԲՆԱԿՉՈՒԹԵԱՆ ՇԱՐԺՈՒՄՆ

### I. ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆՆԵՐ

#### 1. *Ամուսնութիւնների թիւը եւ բնակչութիւնը (հայ եւ թիւրք) **) 1895 թ.*

Աղիւսակ 1.

| | Ամուսնութիւնների թիւը | Բնակչութիւնը 1000-ներով | 1000 բնակչի վրայ գալիս են ամուսնութիւններ |
|---|---|---|---|
| Ամբողջ գաւառի հայ և թիւրք բնակչութիւնը . . . . . . . . | 808 | 144 | 5,65 |
| Ամբողջ գաւ. հայ բնակչութիւնը. | 473 | 85 | 5,63 |
| Ամբ. գաւ. թիւրք բնակչութիւնը. | 335 | 59 | 5,68 |
| Միայն գաւառի հայ և թիւրք բնակչութիւնը . . . . . . . . | 607 | 110 | 5,52 |
| Միայն գաւ. հայ բնակչութիւնը. | 331 | 64 | 5,25 |
| Միայն գաւ. թիւրք բնակչութիւնը | 276 | 46 | 5,87 |
| Քաղաքի հայ և թիւրք բնակչութիւնը . . . . . . . . . . | 201 | 34 | 6,1 |
| Քաղաքի հայ բնակչութիւնը. . . | 142 | 1 | 7,1 |
| Քաղաքի թիւրք բնակչութիւնը . | 59 | 13 | 4,5 |

*) Իտալիայում 1000 տղամարդի վրայ գալիս են . . . 995 կին
Ցունաստանում » » » » » . . . 906 »
Հնդկաստանում » » » » » . . . 954 »

**) 2147 սիւննի թիւրքեր չեն մտցրուած, որովհետև նրանց մասին տեղեկութիւններ պակասում են։

1895 թ. 1000 բնակչի վրայ քաղաքում աւելի շատ պսակներ են գալիս, քան թէ գաւառում (1000 հայ բնակչի վրայ քաղաքում 7,1, իսկ գաւառում 5,25), միւս կողմից 1000 թիւրք բնակչի վրայ աւելի շատ պսակներ են գալիս, քան թէ 1000 հայ բնակչի վրայ։

---

## 2. Ամուսնութիւնները եւ հայ բնակչութիւնը 1881—95 թ.

Աղիւսակ 2.

| Տարի | Գաւառում (առանց քաղաքի) | | | Քաղաքում | | |
|---|---|---|---|---|---|---|
| | Բնակչութեան մօտաւոր թիւը 1000-ներով | Պսակների թիւը | 1000 բնակչի վրայ ընկնում են պըսակներ | Բնակչութեան մօտաւոր թիւը 1000-ներով | Պսակների թիւը | 1000 բնակչի վրայ ընկնում են պըսակներ |
| 1881—1885 *) | 56 | 372 | 6,6 | 14 | 158 | 11,3 |
| 1886—1890 *) | 59 | 340 | 5,9 | 16 | 141 | 8,8 |
| 1891 | 61 | 365 | 6 | 18 | 170 | 9,4 |
| 1892 | 62 | 433 | 7 | 19 | 170 | 9 |
| 1893 | 63 | 512 | 8,1 | 19 | 142 | 7,5 |
| 1894 | 63 | 552 | 8,7 | 20 | 139 | 7 |
| 1895 | 64 | 331 | 5,2 | 21 | 142 | 6,8 |
| 1881—1895 *) | 63 | 439 | 7 | 19 | 153 | 8 |

Այս աղիւսակի մէջ եւս նկատւում է նոյն երեւոյթը, որի վրայ մենք վերեւում մատնանիշ եղանք, այն է, որ 1000 բնակչի վրայ քաղաքում աւելի շատ պսակներ են գալիս,

*) Միջին թուով մի տարուայ համար։

քան թէ գաւառում։ Արժանի է լուրջ ուշադրութեան և ուսումնասիրութեան մի փաստ ևս, որ քաղաքի պսակների թիւը թէ 1000-ի վրայ (1881—85-ի համար 11,3, 1886—90-ի համար 8,4, 1891—95-ի համար 8) և թէ բացարձակապէս (158—142) տարէցտարի պակասում է։ Գաւառում ընդհակառակը նա անընդհատ աճում է, թէև ոչ այնպէս արագ, ինչպէս ընկնում է քաղաքում։ Ամուսնացողների ⁰/₀₀ հայ ժողովրդների մէջ շատ չի տարբերւում եւրոպական ժողովուրդների ամուսնացողների ⁰/₀₀-ից (1000 բնակչի վրայ գալիս են պսակներ՝ Գերմանիայում 7,6, Անգլիայում 7,4, Բելգիայում 7, Շվէյցարիայում 6,8, Շվեդիայում 6,3)։

---

### *3. Հայ ամուսնացողների հասակը 1881—1890 թ. Զինուորագրութիւն.*

Աղիւսակ 3.

| Տարի | Գաւառում 100 ամուսնացող տղամարդկանցից եղել են | | | | | | Քաղաքում 100 ամուսնացող տղամարդկանցից եղել են | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Մինչև 21 տ. հասակում | 21—25 | 26—30 | 31—35 | 36—40 | 40-ից բարձր | Մինչև 21 տ. հասակում | 21—25 | 26—30 | 31—35 | 36—40 | 40-ից բարձր |
| 1881 | 26 | 50 | 13 | 4 | 4 | 3 | 9 | 32 | 42 | 5 | 10 | 2 |
| 1882 | 34 | 48 | 10 | 4 | 2 | 2 | 6 | 38 | 42 | 6 | 5 | 3 |
| 1883 | 29 | 52 | 9 | 5 | 3 | 2 | 10 | 33 | 40 | 7 | 5 | 5 |
| 1884 | 22 | 48 | 17 | 6 | 4 | 5 | 15 | 32 | 45 | 2 | 5 | 1 |
| 1885 | 40 | 37 | 10 | 4 | 3 | 6 | 9 | 35 | 44 | 4 | 4 | 4 |
| 1886 | 49 | 34 | 9 | 3 | 3 | 2 | 7 | 50 | 29 | 8 | 3 | 3 |
| 1887 | 5 | 70 | 16 | 4 | 4 | 1 | 4 | 37 | 41 | 7 | 7 | 4 |
| 1888 | — | — | — | — | — | — | 0 | 23 | 52 | 15 | 8 | 2 |
| 1889 | 3 | 28 | 43 | 12 | 10 | 4 | 3 | 28 | 46 | 11 | 8 | 4 |
| 1890 | 9 | 40 | 35 | 7 | 6 | 3 | 4 | 37 | 41 | 7 | 7 | 4 |
| Միջին թիւ 1881—1886 | 34 | 45 | 11 | 4 | 3 | 3 | 9 | 38 | 40 | 5 | 5 | 3 |
| Միջին թիւ 1887—1890 | 6 | 46 | 31 | 8 | 6 | 3 | 3 | 31 | 45 | 10 | 7 | 4 |

Այս աղիւսակը բերում ենք այստեղ ցոյց տալու համար այն ահագին սօցիալական ազդեցութիւնը, որ ունեցել է զինուօրագրութիւնը Շուշու գաւառում։ Մինչև 1886 թ. այսինքն մինչև հայերից զինուոր վերցնելը, 100 ամուսնացող տղամարդկանցից 34-ը գտնւում են եղել (գաւառում) մինչև 21 տ. հասակում, 1886 թ. յետոյ 100 ամուսնացող տղամարդկանցից նոյն հասակում գտնւում են եղել միայն 6 հոգի։ Նոյն թուականից յետոյ սաստիկ բարձրանում է 26—40 տարեկան հասակում ամուսնացողների թիւը (մինչև 1886 թ. դրանք կազմել են ամուսնացողների 18 %, իսկ 1886-ից յետոյ 45%), իսկ 21—25 տ. հասակում ամուսնացողների % համարեա թէ նոյնն է մնացել (մինչև 1886 թ. 45%, 1886-ից յետոյ 46%)։ Նոյն երևոյթը նկատւում է և քաղաքում այն տարբերութեամբ, որ այստեղ պակասել է և 21—25 տարեկան հասակում ամուսնացող տղամարդկանց թիւը (մինչև 1886 թ. 100-ից ամուսնացել են այդ հասակում 38 հոգի, 1886 թ. յետոյ միայն 31)։ Նոյնպէս սաստիկ բարձրացել է 25—35 տ. հասակում ամուսնացողների թիւը (մինչև 1886 թ. բոլոր ամուսնացողների 45%, 1886-ից յետոյ 55%)։ Առհասարակ նկատելի կերպով բարձրանում է 1886 թուականից տարիքաւոր ամուսնացողների թիւը (մինչև 1886 թ. գաւառում 100 ամուսնացողներից 10 հոգի գտնւում են եղել 31—40 տ. և 40 տ. բարձր հասակում, իսկ 1886 թ. յետոյ 17 հոգի. քաղաքում մինչև 1886 թ. 13 հոգի, 1886-ից յետոյ 21)։ Զինուօրագրութիւնից յետոյ պսակուողների թիւը գաւառում չի պակասել, այլ ընդհակառակը մենք նկատում ենք անընդհատ, թէև դանդաղ աճումն *)։

---

*) Տես «Բնակչութեան շարժումն», աղիւս. 2.

## 4. Ամուսնացողները (Հայ) 1881—90 թ.

Աղիւսակ 4.

| Տարի | 100 պսակներից եղել են գաւառում | | | | 100 պսակներից եղել են քաղաքում | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Ամուրի տղամարդը աղջկայ հետ | Ամուրի տղամ. այրի կնոջ հետ | Այրի տղամարդը աղջկայ հետ | Այրի տղամարդը այրի կնոջ հետ | Ամուրի տղամարդը աղջկայ հետ | Ամուրի տղամ. այրի կնոջ հետ | Այրի տղամարդը աղջկայ հետ | Այրի տղամարդը այրի կնոջ հետ |
| 1881 | 82 | — | 11 | 7 | 73 | 1 | 16 | 10 |
| 1882 | 85 | 1 | 7 | 7 | 81 | 1 | 12 | 6 |
| 1883 | 84 | — | 9 | 7 | 79 | — | 10 | 11 |
| 1884 | 80 | 1 | 12 | 7 | 75 | 4 | 11 | 10 |
| 1885 | 79 | — | 16 | 5 | 78 | — | 11 | 11 |
| 1886 | 77 | — | 14 | 9 | 81 | — | 10 | 9 |
| 1887 | 91 | — | 9 | — | 78 | 2 | 11 | 9 |
| 1888 | — | — | — | — | 84 | — | 10 | 6 |
| 1889 | 79 | 2 | 13 | 6 | 77 | 1 | 10 | 12 |
| 1890 | 81 | — | 11 | 8 | 82 | 2 | 8 | 8 |
| 1881—1890 | 82 | 0,5 | 11,5 | 6 | 78,8 | 1,1 | 10,9 | 9,2 |

Ամուսնութիւնների ահագին մեծամասնութիւնը (գաւառում 82°/₀, քաղաքում 78,8°/₀) կատարւում է ամուրի տղամարդի և աղջկայ մէջ։ Այդ կարգի ամուսնութիւններից յետոյ երկրորդ տեղը բռնում են այրի տղամարդկանց ամուսնութիւնները աղջիկների հետ, երրորդ տեղը բռնում են այրի տղամարդկանց ամուսնութիւնները այրի կանանց հետ.

և չորրորդ ու ամենաչնչին տեղը բռնում են ամուրի տղամարդկանց ամուսնութիւնները այրի կանանց հետ։ Մի բան աչքի է ընկնում աղիւսակի մէջ. գիւղում, ուր սեռերի թուական յարաբերութիւնը աւելի նորմալ է (1000:853), քան թէ քաղաքում (1000:769), աւելի քիչ են ամուսնանում այրի կանանց հետ, քան թէ քաղաքում (100 ամուսնացող կանանցից եղել են այրի՝ գիւղում 6,5°/o, իսկ քաղաքում՝ 10,3°/o)։

---

## 5. Ամուսնութիւնները ըստ ամիսների (Հայերի մէջ) 1885—1890 թ.

Աղիւսակ 5.

| Ամիս | 100 պսակներից գիւղում կատարուել են | | | | | | | 100 պսակներից քաղաքում կատարուել են | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | 1885 | 1886 | 1887 | 1888* | 1889 | 1890 | 1885 մինչև 1890 | 1885 | 1886 | 1887 | 1888 | 1889 | 1890 | 1885 մինչև 1890 |
| Յուն. | 25 | 20 | 27 | — | 13 | 18 | 21 | 32 | 10 | 14 | 9 | 14 | 10 | 15 |
| Փետր. | 2 | 14 | 16 | — | 13 | 16 | 12 | 3 | 23 | 12 | 23 | 27 | 17 | 18 |
| Մարտ | — | — | — | — | — | — | — | — | — | — | 6 | — | — | 1 |
| Ապրիլ | *) | — | — | — | — | — | — | — | — | — | — | — | — | — |
| Մայիս | 4 | 2 | — | — | — | 1 | 1 | 4 | — | — | — | — | 2 | 1 |
| Յունիս | 2 | 3 | 3 | — | 2 | 4 | 3 | 7 | 9 | 5 | 4 | 3 | 5 | 5 |
| Յուլիս | 2 | 4 | 1 | — | 2 | 2 | 2 | 5 | 3 | 7 | 6 | 3 | 6 | 5 |
| Օգոստ. | 4 | 4 | 4 | — | 4 | 3 | 4 | 8 | 8 | 10 | 12 | 6 | 18 | 10 |
| Սեպտ. | 9 | 8 | 1 | — | 2 | 5 | 5 | 11 | 12 | 9 | 10 | 7 | 12 | 10 |
| Հոկտ. | 11 | 10 | 3 | — | 14 | 7 | 9 | 7 | 11 | 11 | 15 | 12 | 11 | 11 |
| Նոյեմ. | 15 | 15 | 14 | — | 18 | 15 | 15 | 10 | 13 | 14 | 6 | 7 | 8 | 12 |
| Դեկտ. | 26 | 20 | 31 | — | 32 | 29 | 28 | 13 | 11 | 18 | 9 | 11 | 11 | 12 |

*) Թուերը պակասում են։

Թէ քաղաքի և թէ գաւառի համար բնորոշ է այն, որ մարտ և ապրիլ ամիսներին մեծ պասի պատճառով պսակներ չեն լինում։ Պսակների minimum'ը գաւառում ընկնում է ամառային և աշնանային առաջին ամիսների վրայ, մայիսից մինչև հոկտեմբեր, գիւղական ժողովրդի պրօդուկտիւ գործունէութեան ամենաեռուն ժամանակը. ամենաշատ ամուսնութիւններ կատարւում են նոյեմբերից մինչև փետրուար (maximum դեկտեմբերին)։ Քաղաքում ամենից քիչ ամուսնութիւններ լինում են մայիս, յունիս, յուլիս ամիսներին, օգոստոսին արդէն պսակների թիւը բաւականին մեծ է և կամաց կամաց աճելով փետրուարին հասնում է իր maximum'ին։ Այս երկու աղիւսակները միմեանց հետ համեմատելիս մի բան աչքի է ընկնում. գիւղական հարսանիքների 76% կատարւում է նոյեմբերից մինչև փետրուար ամիսները և միայն 24% մայիսից մինչև հոկտեմբեր, այսինքն դաշտային աշխատանքների ժամանակ, իսկ քաղաքում նոյեմբերից մինչև փետրուար եղած հարսանիքների %-ը 57 է, իսկ մնացած ամիսներինը 43։ Քաղաքի բնակիչները (արհեստաւորներ, վաճառականներ, բանուորներ, աստիճանաւորներ և այլն), ունենալով այնպիսի պարապմունքներ, որոնք ամբողջ տարուայ ընթացքում հաւասար աշխատանք են պահանջում և տարուայ այս կամ այն ժամանակից համարեա թէ կախումն չունին (իբրև բացառութիւն պէտք է յիշենք ղըջիկ արհեստաւորներին և բանուորներին՝ հիւսներին, որմնադիրներին, քարտաշներին և այլն, որոնք ամառը աւելի շատ են բանում, քան ձմեռը), իրենց կեանքի մէջ աւելի քիչ են ենթարկւում տարուայ եղանակների ազդեցութեան, քան գիւղացիները։

# II. ԾՆՈՒՆԴՆԵՐ

## *1. Ծնունդները (օրինաւոր եւ ապօրինի) եւ բնակչութիւնը (հայ եւ թիւրք) 1895 թ.*

Աղիւսակ 1.

| | Ծնունդների թիւը | Բնակչութիւնը 1000-ներով | 1000 բնակչի վրայ ընկնում են ծնունդն. |
|---|---|---|---|
| Ամբողջ գաւառի հայ և թիւրք բնակչութիւնը. . . . . | 3121 | 144 | 21,6 |
| Ամբողջ գաւ. հայ բնակչութ. | 2097 | 85 | 25 |
| » » թիւրք » | 1024 | 59 | 17,3 |
| Գաւառի (առանց քաղաքի) հայ և թիւրք բնակչութ. | 2332 | 110 | 21,2 |
| Գաւառի հայ բնակչութիւնը | 1492 | 64 | 23,3 |
| » թիւրք » | 840 | 46 | 18,2 |
| Քաղաքի հայ և թիւրք բնակչ. | 789 | 34 | 23,2 |
| » » բնակչութիւնը | 605 | 21 | 28,8 |
| » թիւրք » | 184 | 13 | 14,2 |

Աղիւսակից երևում է, որ 1895 թ. 1000 բնակչի վրայ քաղաքում աւելի շատ ծնունդներ են եղել, քան թէ գաւառում և որ 1000 հայ բնակչի վրայ թէ գաւառում և թէ քաղաքում աւելի շատ ծնունդներ են եղել քան թէ 1000 մահմեդական բնակչի վրայ։ Թէ առաջին և թէ երկրորդ երևոյթները կարող են ճիշտ լինել, բայց տարբերութիւնը մի կողմից քաղաքի և գաւառի, միւս կողմից հայ և թիւրք ծնունդների մէջ մեր կարծիքով այնքան մեծ չը պիտի լինի, ինչպէս աղիւսակում, որովհետև բազմաթիւ երեխաներ գաւառում առհասարակ և մանաւանդ թիւրքերի մէջ, որոնք մինչև ցուցակի մէջ մտցնուելը (հայերի մօտ մինչև մկրտուելը) մեռնում են, չեն մտնում մեր բերած թուերի մէջ. նոյնպէս չեն մտնում ցուցակի մէջ ապօրինի ծնունդների մեծամասնութիւնը։ Մեռելածին մանուկների թիւը թէ գաւառում և թէ քաղաքում բոլորովին ուշադրութեան չի առնւում, չնայած նրան, որ դրանք մի պատկառելի կոնտինգենտ են կազմում բոլոր ծնուածների թուի մէջ։

## 2. Ծնունդները եւ հայ բնակչութիւնը 1881—1895 թ.

Աղիւսակ 2.

| Տարի | Գաւառում (առանց քաղաքի) | | | | | | | Քաղաքում | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Բնակչութիւնը 1000-ով | Ծնունդների թիւը | | | 1000 բնակչի վրայ ընկն. ծնունդներ | | | Բնակչութիւնը 1000-ով | Ծնունդների թիւը | | | 1000 բնակչի վրայ ընկն. ծնունդներ | | |
| | | Տղայ | Աղջիկ | Միասին | Տղայ | Աղջիկ | Ընդհա-նուր | | Տղայ | Աղջիկ | Միասին | Տղայ | Աղջիկ | Ընդհա-նուր |
| 1881—1885 | 56 | 902 | 650 | 1552 | 16,1 | 11,6 | 27,7 | 14 | 303 | 291 | 594 | 21,6 | 20,8 | 42,4 |
| 1886—1890 | 59 | 943 | 701 | 1644 | 16 | 12 | 28 | 16 | 320 | 302 | 622 | 20 | 18,9 | 38,9 |
| 1891 | 61 | 1131 | 752 | 1883 | 18,5 | 12,3 | 30,8 | 18 | 345 | 280 | 625 | 19,1 | 15,5 | 34,6 |
| 1892 | 62 | 986 | 749 | 1735 | 15,1 | 12,1 | 28 | 19 | 323 | 303 | 626 | 17 | 16 | 33 |
| 1893 | 63 | 1162 | 892 | 2054 | 18,4 | 14,2 | 32,6 | 19 | 324 | 315 | 639 | 17 | 16,6 | 33,6 |
| 1894 | 63 | 1128 | 794 | 1922 | 17,9 | 12,6 | 30,5 | 20 | 294 | 311 | 605 | 14,7 | 15,6 | 30,3 |
| 1895 | 64 | 845 | 647 | 1492 | 13,2 | 10,1 | 23,3 | 21 | 326 | 279 | 605 | 15,5 | 13,3 | 28,8 |
| 1891—1895 | 63 | 1050 | 767 | 1817 | 16,7 | 12,2 | 28,9 | 19 | 322 | 298 | 620 | 17 | 15,6 | 32,6 |

Վերեւում քաղաքի և գաւառի ծնունդների մասին նկատածը տեսնում ենք և այստեղ. առաջինում 1000 բնակչի վրայ անհամեմատ աւելի շատ ծնունդներ են գալիս, քան թէ վերջինում։ Գաւառի ծնունդները թէ բացարձակապէս (1881—85 1552, 1886—90 1644, 1881—95 1817) և թէ 1000-ի վրայ (27,7, 28, 28,9) աճում են, իսկ քաղաքում (ինչպէս և պսակների թիւը) թէ բացարձակապէս (622 և 620) և թէ 1000-ի վրայ պակասում (42,4. 38,9 և 32,6)։ Քաղաքի ծնունդների պակասիլը մենք մասամբ բացատրում ենք նրանով, որ այստեղ ամուրի տղամարդկանց (աշխատանքի համար եկած) %-ը աճում է, իսկ ամուսնացածներինը ընկնում։

Եթէ աղիւսակի մէջ դուրս բերուած թուերը (1000-ի վրայ) համեմատելու լինինք՝ եւրոպական ժողովուրդների ծնունդների թուերի *) հետ, կը տեսնենք որ մեր թուերը շատ ցածր են. դա այն պատճառով, որ եւրոպական թուերը վերաբերում են բոլոր ծնունդներին (դրանց մէջ մտնում են բոլոր պտղահանք և մեռելածին երեխաները), իսկ մեզ մօտ միայն բոլոր մկրտուած երեխաներին։

*) 1000 բնակչի վրայ գալիս են ծնունդներ՝ Գերմանիայում 38,18 (1881—90), Իտալիայում 38, Ֆրանսիայում 26,6, Մեծ-Բրիտանիայում 35,4, Բելգիայում 34,1, Նորվեգիայում 32,1։

Աղիւսակից երեւում է, որ ամենայն տարի աւելի շատ տղաներ են ծնւում, քան թէ աղջիկներ (Գաւառում 1881—1885 թ. ծնուել են 902 տղայ և 650 աղջիկ, 1886—90 943 տղայ և 701 աղջիկ, 1891—95 1050 տղայ և 767 աղջիկ, քաղաքում 1881—85 303 տղայ և 291 աղջիկ, 1886—90 320 տղայ և 302 աղջիկ, 1891—95 322 տղայ և 298 աղջիկ)։ Ինչպէս կարելի է տեսնել այս թուերից, տարբերութիւնը տղայ և աղջիկ ծնունդների մէջ գաւառում աւելի մեծ է քան թէ քաղաքում, ուր մի քանի տարիներում աղջիկ ծնունդների թիւը համարեա թէ հաւասար է ծնուած տղաների թուին (1881—85 և 1893 թուին), իսկ 1894 թ. մինչև անգամ աւելի շատ աղջիկներ են ծնուել քան թէ տղաներ։

### 3. Ապօրինի ծնունդների համեմատական թիւը.

Գաւառում

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1881—85 | 1 | ապօրինի ծնունդ ընկնում է | 1108 | ծնունդների վրայ |
| 1886—90 | 1 | » » » | 822 | » » |
| 1891—95 | 1 | » » » | 324 | » » |

Քաղաքում

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1881—85 | 1 | ապօրինի ծնունդ ընկնում է | 208 | ծնունդների վրայ |
| 1886—90 | 1 | » » » | 346 | » » |
| 1891—95 | 1 | » » » | 387 | » » |

Ապօրինի զաւակների թիւը եւրոպականի *) հետ համեմատած՝ չափազանց քիչ է, երևի այն պատճառով, որ ապօրինի զաւակներից շատ քիչերն են մինչև մկրտուիլը ապրում (եւրոպական ժողովուրդների համար արդէն ապացուցուած է, որ մահացութիւնը ապօրինի զաւակների մէջ աւելի մեծ է, քան թէ օրինաւորների մէջ. ապօրինի ծնունդների մէջ մեռելածինների %-ը աւելի մեծ է քան թէ օրինաւոր ծնունդների մէջ)։ Ըստ աղիւսակի՝ ապօրինի ծնունդների թիւը քաղաքում տարէցտարի պակասում է (թէև հակառակը պէտի լինէր, քանի որ ամուրի տղամարդկանց թիւը հետզհետէ աւելանում է), իսկ գաւառում աճում է և վերջին հինգամեակի ընթացքում ապօրինի ծնունդների համեմատական թիւը գաւառում աւելի մեծ է քան թէ քաղաքում։

*) Գերմանիայում ապօրինի ծնունդները կազմում են բոլոր ծնունդների 8,8%, Ֆրանսիայում և Իտալիայում 6,3%, Անգլիայում և Ուէլսում 5,5%, Բելգիայում 7,1%, Շվէյցարիայում 4%։

## 4. Ծնունդները եւ յղութիւնը ըստ ամիսների (Հայերի մէջ) 1885—90 թ.

Աղիւսակ 4.

| Ծննդեան ամիսները | Յղութեան ամիսները | Գաւառում 100 ծնունդներից եղել են | | | | | | | Քաղաքում 100 ծնունդներից եղել են | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | 1885 | 1886 | 1887 | 1888 | 1889 | 1890 | 1885 մինչև 1890 | 1885 | 1886 | 1887 | 1888 | 1889 | 1890 | 1885 մինչև 1890 |
| Յունուար | Ապրիլ | 12 | 12 | 13 | 10 | 12 | 11 | 11,6 | 12 | 8 | 11 | 10 | 9 | 9 | 9,9 |
| Փետրուար | Մայիս | 9 | 10 | 8 | 9 | 11 | 9 | 9,3 | 8 | 10 | 10 | 9 | 12 | 9 | 9,6 |
| Մարտ | Յունիս | 8 | 8 | 8 | 9 | 11 | 9 | 9 | 10 | 11 | 9 | 8 | 9 | 7 | 9 |
| Ապրիլ | Յուլիս | 7 | 7 | 9 | 7 | 7 | 6 | 7,2 | 6 | 8 | 9 | 9 | 8 | 7 | 7,8 |
| Մայիս | Օգոստոս | 9 | 8 | 8 | 6 | 7 | 8 | 7,6 | 8 | 7 | 7 | 6 | 9 | 6 | 7,2 |
| Յունիս | Սեպտեմբ. | 7 | 7 | 7 | 7 | 5 | 6 | 6,5 | 8 | 7 | 6 | 7 | 5 | 6 | 6,5 |
| Յուլիս | Հոկտեմբ. | 9 | 9 | 7 | 6 | 5 | 6 | 7 | 9 | 6 | 7 | 6 | 6 | 8 | 7 |
| Օգոստոս | Նոյեմբեր | 8 | 8 | 8 | 10 | 8 | 9 | 8,5 | 7 | 7 | 7 | 9 | 9 | 8 | 7,9 |
| Սեպտեմ. | Դեկտեմբ. | 10 | 9 | 7 | 9 | 9 | 8 | 8,7 | 9 | 8 | 9 | 10 | 10 | 9 | 9,1 |
| Հոկտեմբ. | Յունուար | 6 | 7 | 8 | 9 | 8 | 8 | 7,6 | 9 | 10 | 9 | 12 | 7 | 12 | 9,9 |
| Նոյեմբեր | Փետրուար | 8 | 8 | 9 | 9 | 10 | 11 | 9,1 | 7 | 10 | 9 | 9 | 8 | 11 | 9 |
| Դեկտեմբ. | Մարտ | 7 | 7 | 8 | 9 | 7 | 9 | 7,9 | 7 | 8 | 7 | 5 | 8 | 8 | 7,1 |

Թէ գաւառում և թէ քաղաքում ամենից քիչ ծնունդներ պատահում են յունիսին (minimum) և յուլիսին, ուրեմն ամենից քիչ յղութիւններ լինում են աշնան սկզբի ամիսներին՝ սեպտեմբերին և հոկտեմբերին։ Ամենից շատ ծնունդներ ընկնում են թէ գաւառում և թէ քաղաքում յունուար (maximum), փետրուար, մարտ և սեպտեմբեր, հոկտեմբեր, նոյեմբեր ամիսների վրայ։ Ուրեմն ամենից շատ յղութիւններ լինում են գարնան ամիսներին, տարուայ այն ժամանակին, որին բանաստեղծը пора любви и страсти нѣжной է կոչում և ձմեռուայ երեք ամիսներին, հարսանիքների և տնային փակ կեանքի սէզօնում։—Աղիւսակի մէջ հետաքրքիր է մի բան ևս, այն է, որ ծնունդների թիւը դեկտեմբերին (յղութիւնը մարտին) թէ գաւառում և թէ քաղաքում համեմատելով նախընթաց և գալիք ամիսների թուերի հետ՝ շատ ցածր է։ Չլինի՞ թէ այդ երևոյթը պէտք է վերագրել այն բանին, որ մարտը (մեծ պասը) ապաշխարութեան և ժուժկալութեան ամիս է։

# III. ՄԱՀԱՑՈՒԹԻՒՆ

## 1. Մահացութիւնը եւ բնակչութիւնը (հայ եւ թիւրք) 1895 թ.

Աղիւսակ 1.

| | Նոջեցեալների թիւը | | | Բնակչութիւնը 1000-ներով | | | 1000-ից վախճանուել են | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Տղամարդ | Կին | Ընդամենը | Տղամարդ | Կին | Ընդամենը | Տղամարդկանցից | Կանանցից | Ընդհանուր |
| Ամբողջ գաւառի հայ և թիւրք բնակչութիւնը. | 905 | 694 | 1599 | 79 | 65 | 144 | 11 | 11 | 11 |
| Ամբողջ գաւ. հայ բնակչ. | 511 | 418 | 929 | 47 | 38 | 85 | 11 | 11 | 11 |
| » » թիւրք » | 394 | 276 | 670 | 32 | 27 | 59 | 12 | 10 | 11 |
| Գաւառի (առանց քաղաքի) հայ և թիւրք բնակչ. . | 640 | 443 | 1083 | 60 | 50 | 110 | 10 | 9 | 9,8 |
| Գաւառի հայ բնակչութ. . | 318 | 237 | 555 | 35 | 29 | 64 | 9 | 8 | 9 |
| » թիւրք » . . | 322 | 206 | 528 | 25 | 21 | 46 | 13 | 10 | 12 |
| Քաղ. հայ և թիւրք բնակչ. | 265 | 251 | 516 | 19 | 15 | 34 | 14 | 17 | 15 |
| Քաղաքի հայ բնակչութ. . | 193 | 181 | 374 | 12 | 9 | 21 | 16 | 20 | 18 |
| » թիւրք » . . | 72 | 70 | 142 | 7 | 6 | 13 | 10 | 12 | 11 |

Քաղաքի հայ բնակիչների մահացութիւնը ճիշտ երկու անգամ մեծ է քան թէ գաւառինը (քաղաքում 18°/₀₀, գաւառում 9°/₀₀)։ Քաղաքի թիւրք բնակչութեան մահացութիւնը համարեա նոյնքան է, որքան և գաւառում։ Մահացութիւնը գաւառում թիւրքերի մէջ աւելի մեծ է, քան թէ հայերի մէջ, իսկ քաղաքում ընդհակառակը։ 1895 թ. կին ննջեցեալների բացարձակ թիւը փոքր է տղամարդ ննջեցեալների թուից, իսկ 1000 կնոջ վրայ ամբողջ գաւառում նոյնքան կին է մեռել, որքան 1000 տղամարդի վրայ տղամարդ։ Մի բան եւս արժանի է ուշադրութեան աղիւսակի մէջ. այդ այն է, որ 1895 թ. կին ննջեցեալների °/₀₀-ը գաւառում ցածր է (1000 տղամարդից մեռել են 10, 1000 կանանցից 9), իսկ քաղաքում բարձր տղամարդկանց °/₀₀-ից (1000 տղամարդից մեռել են 14, իսկ 1000 կանանցից 17) և գաւառի կին ննջեցեալների °/₀₀ շատ ցածր է քաղաքի կին ննջեցեալների °/₀₀-ից (1000 կանանցից գաւառում մեռել են 9, իսկ քաղաքում 17)։

## 2. Մահացութիւնը հայերի մէջ 1881—95 թ.

Աղիւսակ 2.

| ՏԱՐԻ. | ԳԱՒԱՌՈՒՄ | | | | | | | | | ՔԱՂԱՔՈՒՄ | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | ՆՆՋԵՑԵԱԼՆԵՐ. | | | Բնակչութիւնը 1000-ներով. | | | 1000 ի վրայ ընկնում են ննջեցեալ. | | | ՆՆՋԵՑԵԱԼՆԵՐ. | | | Բնակչութ. 1000-ներով. | | | 1000 վրայ ընկնում են ննջեցեալներ. | | |
| | Տղամարդ. | Կին. | Ընդամ. | Տղամարդ. | Կին. | Ընդամ. | 1000 տղամարդի վրայ. | 1000 կնոջ վրայ. | 1000 ընդհանուրի վրայ. | Տղամարդ. | Կին. | Ընդամ. | Տղամարդ. | Կին. | Ընդամ. | 1000 տղամարդի վրայ. | 1000 կնոջ վրայ. | 1000 ընդհանուրի վրայ. |
| 1881—85 | 262 | 196 | 458 | 30,5 | 25,5 | 56 | 8,6 | 7,7 | 8,2 | 149 | 153 | 302 | 7,8 | 6,2 | 14 | 19,1 | 24,7 | 21,6 |
| 1886—90 | 446 | 286 | 732 | 32,5 | 26,5 | 59 | 13,7 | 10,8 | 12,8 | 181 | 153 | 334 | 9,4 | 6,6 | 16 | 19,2 | 23,2 | 20,9 |
| 1891 | 659 | 426 | 1085 | 33 | 28 | 61 | 19,9 | 15,2 | 17,8 | 228 | 226 | 454 | 10 | 8 | 18 | 22,8 | 28,2 | 25,2 |
| 1892 | 710 | 494 | 1214 | 34 | 28 | 62 | 20,9 | 17,6 | 18,6 | 235 | 218 | 453 | 11 | 8 | 19 | 21,3 | 27,2 | 24 |
| 1893 | 361 | 260 | 621 | 34 | 29 | 63 | 10,6 | 9 | 9,8 | 179 | 178 | 357 | 11 | 8 | 19 | 16,3 | 22,2 | 18,8 |
| 1894 | 474 | 373 | 847 | 34 | 29 | 63 | 14 | 13,1 | 13,4 | 207 | 205 | 412 | 11 | 9 | 20 | 18,8 | 22,8 | 20,6 |
| 1895 | 318 | 237 | 555 | 35 | 29 | 64 | 9 | 8,2 | 8,7 | 193 | 181 | 374 | 12 | 9 | 21 | 16,1 | 20 | 17,9 |
| 1891—95 | 504 | 360 | 864 | 34 | 29 | 63 | 14,8 | 12,4 | 13,7 | 208 | 202 | 410 | 11 | 8 | 19 | 18,9 | 25,2 | 21,6 |

1895 թ. հայերի մահացութեան մասին նկատածը տեսնում ենք և այստեղ. 15 տարի շարունակ գաւառում մահացութիւնը (թէ տղամարդկանց և թէ կանանց) աւելի ցածր է, քան թէ քաղաքում, գաւառի կանանց մահացութեան °/₀₀ ցածր է տղամարդկանց մահացութեան °/₀₀-ից (1881—95 թ. գաւառում 1000-ի վրայ աւելի քիչ կին է մեռնում, քան տղամարդ), իսկ քաղաքում ընդհակառակը կանանց մահացութիւնը շատ մեծ է տղամարդկանց մահացութիւնից։

Եւրոպական թուերի *) հետ համեմատած Շուշու գաւառի մահացութեան թուերը շատ ցածր են. այդ այն պատճառով, որ եւրոպական թուերի մէջ մտնում են և ծնուելուց յետոյ շուտով վախճանուած մանուկները, իսկ մեզ մօտ դրանք, չմտնելով ծնուածների ցուցակի մէջ, վախճանուածների ցուցակի մէջ էլ չեն մտնում։

### 3. Մահացութիւնը հայերի մէջ ըստ ամիսների 1885—90 թ.

Աղիւսակ 3.

| Ամիս | Գաւառում 100-ից վախճան. են | | | | | | | Քաղաքում 100-ից վախճան. են | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | 1885 | 1886 | 1887 | 1888 ** | 1689 | 1890 | 1885 մինչև 1890 | 1885 | 1886 | 1887 | 1888 | 1889 | 1890 | 1885 մինչև 1890 |
| Յուն. | 11 | 10 | 5 | — | 9 | 14 | 9,8 | 14 | 15 | 18 | 11 | 6 | 16 | 11,6 |
| Փետր. | 9 | 8 | 3 | — | 4 | 8 | 6,4 | 10 | 14 | 13 | 9 | 6 | 11 | 10,5 |
| Մարտ | 8 | 10 | 5 | — | 3 | 7 | 6,6 | 12 | 6 | 12 | 14 | 6 | 15 | 10,9 |
| Ապրիլ | 9 | 8 | 5 | — | 3 | 7 | 6,4 | 6 | 8 | 8 | 5 | 6 | 6 | 6,5 |
| Մայիս | 4 | 5 | 5 | — | 4 | 5 | 4,6 | 6 | 6 | 8 | 6 | 5 | 8 | 6,5 |
| Յուն. | 8 | 8 | 7 | — | 4 | 5 | 6,4 | 3 | 8 | 9 | 8 | 5 | 5 | 6,3 |
| Յուլիս | 8 | 8 | 11 | — | 8 | 5 | 8 | 4 | 9 | 10 | 8 | 7 | 4 | 7 |
| Օգոս. | 5 | 7 | 9 | — | 13 | 9 | 8,6 | 9 | 7 | 7 | 11 | 9 | 6 | 8,2 |
| Սեպ. | 7 | 7 | 12 | — | 12 | 10 | 9,6 | 9 | 8 | 7 | 7 | 11 | 7 | 8,2 |
| Հոկտ. | 11 | 9 | 11 | — | 13 | 8 | 10,4 | 7 | 4 | 4 | 6 | 14 | 6 | 6,8 |
| Նոյեմ. | 7 | 11 | 14 | — | 14 | 10 | 11,2 | 9 | 6 | 6 | 8 | 11 | 5 | 7,5 |
| Դեկտ. | 13 | 9 | 13 | — | 13 | 12 | 12 | 11 | 9 | 8 | 7 | 14 | 11 | 10 |

Թէ գաւառում և թէ քաղաքում ամենից քիչ ննջեցեալներ լինում են ապրիլ, մայիս (minimum) և յունիս ամիսներում, ամենից շատ ննջեցեալներ լինում են գաւառում հոկտեմբեր, նոյեմբեր, դեկտեմբեր և յունուար ամիսներում, իսկ քաղաքում դեկտ., յունուար (maximum), փետր. և մարտ ամիսներում։

*) Արեւմտեան Ռուսիա 29,3 (1000-ից մեռնում են), Գերմանիա 26,8, Իտալիա 30, Շվէյցարիա 23,5, Ֆրանսիա 22,4, Ֆինլանդիա 22,2.

**) Թուերը պակասում են։

4. Մահացութիւնը 16-ից 36 տարեկան կանանց մէջ եւ ծնունդները ըստ ամիսների (գրաֆիկ պատկերացումը):



# IV. ՀԱՅ ԲՆԱԿՉՈՒԹԵԱՆ ԱՃՈՒՄԸ

*1. Ծնուածների «աւելը» գաւառում 1886—1895 թ. (բնակչութեան բնական աճումը):*

Աղիւսակ 1.

| Տարի | Պսակների թիւը | Ծնուածների թիւը | | | Ննջեցեալների թիւը | | | Աւելացել են | | | Բնակիչներ 1000 | 1000 բնակ. վրայ ընկն.են | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | Արական | Իգական | Միասին | Արական | Իգական | Միասին | Արական | Իգական | առհասարակ | | Պսակներ | Ծնունդներ | Ննջեցեալն. | Աւելացածն. |
| 1886 | 340 | 742 | 630 | 1372 | 165 | 95 | 260 | 577 | 535 | 1112 | 58 | 5,8 | 23,6 | 4,4 | 19,2 |
| 1887 | 395 | 987 | 671 | 1658 | 565 | 309 | 874 | 422 | 362 | 784 | 59 | 6,7 | 28,1 | 14,8 | 13,3 |
| 1888 | — | 1040 | 800 | 1840 | 337 | 238 | 575 | 703 | 562 | 1265 | 59 | — | 31,2 | 9,7 | 21,5 |
| 1889 | 244 | 1015 | 743 | 1758 | 546 | 333 | 879 | 469 | 410 | 879 | 60 | 4 | 29,3 | 14,6 | 14,7 |
| 1890 | 380 | 931 | 663 | 1594 | 616 | 456 | 1072 | 315 | 207 | 522 | 60 | 6,3 | 26,5 | 17,8 | 8,7 |
| 1891 | 365 | 1131 | 752 | 1883 | 659 | 426 | 1085 | 472 | 326 | 798 | 61 | 6 | 30,8 | 17,8 | 13 |
| 1892 | 433 | 986 | 749 | 1735 | 710 | 494 | 1204 | 276 | 255 | 531 | 62 | 7 | 28 | 18,6 | 9,4 |
| 1893 | 512 | 1162 | 892 | 2054 | 361 | 260 | 621 | 801 | 632 | 1433 | 63 | 8,1 | 32,6 | 9,8 | 22,8 |
| 1894 | 552 | 1128 | 794 | 1922 | 474 | 373 | 847 | 654 | 421 | 1075 | 63 | 8,7 | 30,5 | 13,4 | 17,1 |
| 1895 | 331 | 845 | 647 | 1492 | 318 | 237 | 555 | 527 | 410 | 937 | 64 | 5,2 | 23,3 | 8,7 | 14,6 |
| 1886—1895 ընթացքում | 3552 | 9967 | 7341 | 17308 | 4751 | 3221 | 7972 | 5216 | 4120 | 9336 | 609 | 6,4 | 28,4 | 13,1 | 15,3 |

Աղիւսակ 2.

## 2. Ծնունդների աճը քաղաքում 1886—95 թ.

| Տարի | Պսակների թիւը | Ծնուածների թիւը | | | Ննջեցեալների թիւը | | | Աւելացել են | | | Բնակիչները 1000-ներով | 1000 բնակչի վրայ ընկնում են | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | Արական | Իգական | Առհասարակ | Արական | Իգական | Առհասարակ | Արական | Իգական | Միասին | | Պսակներ | Ծնունդներ | Ննջեցեալն. | Աւելացումն. |
| 1886 | 170 | 325 | 281 | 606 | 118 | 109 | 227 | 207 | 172 | 379 | 15 | 11,3 | 40,4 | 14,4 | 26 |
| 1887 | 151 | 318 | 310 | 628 | 166 | 143 | 309 | 152 | 167 | 319 | 16 | 9,4 | 39,2 | 19,3 | 19,9 |
| 1888 | 136 | 336 | 291 | 627 | 195 | 125 | 320 | 141 | 166 | 307 | 16 | 8,5 | 39,2 | 20 | 19,2 |
| 1889 | 120 | 322 | 346 | 668 | 249 | 235 | 484 | 73 | 111 | 184 | 17 | 7,1 | 39,3 | 28,4 | 10,9 |
| 1890 | 130 | 299 | 280 | 579 | 173 | 154 | 327 | 126 | 126 | 252 | 17 | 7,6 | 34 | 19,2 | 14,8 |
| 1891 | 170 | 345 | 280 | 625 | 228 | 226 | 454 | 117 | 54 | 171 | 18 | 9,4 | 34,6 | 25,2 | 9,4 |
| 1892 | 170 | 323 | 303 | 626 | 235 | 218 | 453 | 88 | 85 | 173 | 19 | 9 | 33 | 24 | 9 |
| 1893 | 142 | 324 | 315 | 639 | 179 | 178 | 357 | 145 | 137 | 282 | 19 | 7,5 | 33,6 | 18,8 | 14,8 |
| 1894 | 139 | 294 | 311 | 605 | 207 | 205 | 412 | 87 | 106 | 193 | 20 | 7 | 30,2 | 20,6 | 9,6 |
| 1895 | 142 | 326 | 279 | 605 | 193 | 181 | 374 | 133 | 98 | 231 | 21 | 6,7 | 28,9 | 17,9 | 11 |
| 1886—1895 | 1470 | 3212 | 2996 | 6208 | 1943 | 1774 | 3717 | 1269 | 1222 | 2491 | 178 | 8,2 | 34,8 | 20,9 | 13,1 |

1886 թ. սկզբից մինչև 96 թ. սկիզբը (տաս տարուայ ընթացքում) գաւառի Հայ ծնուածների աւելը մեռածների վրայ հաւասար է 9336 (5216 արական, 4120 իգական), իսկ քաղաքում—2491 (1269 արական, 1222 իգական)։ Ամեն տարի միջին թուով 1000-ի վրայ աւելացել են գաւառում 15,3, իսկ քաղաքում 13,9։ Այս երկու թուերն էլ շատ բարձր են *) եւրոպական ժողովուրդների աւելացածների ‰-ից։ Աւելացածների ‰ քաղաքում քանի գնում պակասում է, իսկ գաւառում աւելանում։

3. Հայ բնակչութեան իսկական աճումը 1886 թ. սկզբից մինչեւ 1895 թ. սկիզբը։

(Էմիգրացիա և բնական աճումն).

| | Բնակչութիւնը 1886-ի սկզբին | Բնակչութիւնը 1895-ի սկզբին | 1886—1895 թ. բնակչութեան իսկական աճումը | 1886—1895 թ. բնակչութեան բնական աճումը (ծնունդն. աւելը) | Իմիգրացիայից առաջացած (+), կամ էմիգր. (—) պակասած թիւը | Բնակչութեան իսկական աճումը 1886—1895 %-ով |
|---|---|---|---|---|---|---|
| Գաւառ և քաղաք | 73081 | 84569 | 11488 | 10659 | + 829 | 15,6% |
| Գաւառ | 57893 | 63985 | 6092 | 8399 | —2307 | 10,4% |
| Քաղաք | 15188 | 20584 | 5396 | 2260 | +3136 | 35,5% |

Լ. Աթաբէգեան

---

*) Ծնուածների աւելը մեռածների վրայ Գերմանիայում (1000 բնակչի վրայ) հաւասար է 11,4, Ֆրանսիայում 2,3, Մեծ-Բրիտանիայում 13,9, Իտալիայում 9,2, Շվէյցարիայում 7,3, Բելգիայում 10, Շվեդիայում 12,1, Ֆինլանդիայում 7,1 (1881—90 թուականների համար)։

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ԴՐՈՒԹԻՒՆ

Մանաւոր մարդու համար, մի մարդու, որ ցանկանում է ճանաչել իւր հայրենակիցներին և նրանց կեանքի զանազան երևոյթները պարզել իւր և ուրիշների համար, գործը վերին աստիճան դժուար է։ Որպէս զի տալ օր. Շուշու գաւառի տնտեսական դրութեան լիակատար նկարագիրը, բաւական չէ շրջել այդ գաւառում, իբրև տուրիստ, որին ժողովուրդը ցանկութիւն անգամ չունի անսխալ տեղեկութիւններ տալու։ Եւ այդ որոշ չափով հասկանալի է. ծանր պայմանների մէջ ապրող գիւղացին կարծում է, թէ իւրաքանչիւր ճշմարիտ տեղեկութիւն, որ նա տալիս է, պիտի աւելացնի մի նոր հոգս նրա չարատանջ կեանքի մէջ, պիտի աւելացնի մի քանի ժամ էլ առանց այն էլ յոգնեցնող աշխատանքի վրայ։ Ի նկատի պէտք է ունենալ և՛ տուրիստի միանգամայն զարմացնող դերը գիւղերում, երբ նա առաջարկում է հարցեր գիւղացուն։ Յիշում եմ, երբ ես հարցնում էի սրանոցի տիրոջ՝ նրա այդ սեփականութեան մասին, նա այնքան թերահաւատութեամբ էր նայում ինձ, որ այդ րոպէին իսկապէս կարելի էր խղճալ նրան...

Բայց այդ բոլորը դեռ կարելի է լրացնել։ Այն՝ ինչ որ պատմում է գիւղացին իւր և իւր երկրի վիճակի մասին, դեռ բաւական չէ՝ այդ երկրի տնտեսական դրութեան լիակատար պատկերը ներկայացնելու համար։ Պէտք է ունենալ թուեր։ Միակ աղբիւրը, որից ես կարողացել եմ հանել թուեր, այդ «Кавказскій календарь»-ի մի քանի տարուայ հատորներն էին։ Բայց որքա՞ն կարելի է հաւատալ այդ հրատարակութեան, քանի որ իւրաքանչիւր քայլափոխում պատահում են նորանոր կուրեօզներ։ Անկարելի է այդտեղից արտագրել թուեր՝ անհոգ մնալով նրանց ճշտութեան նկատմամբ։ Կարելի է երևակայել ուսումնասիրողի դրութիւնը, երբ նա հանում է «Կավկազսկի կալենդար»-ից մի տարուայ հացահատիկների ընդհանուր քանակութիւնը և յետոյ համեմատելով այդ գաւառապետի տուած՝ նոյն տարուայ մասին տեղեկութիւնների հետ, տեսնում է, որ մէկի թուերը չեն համապատասխանում միւսին, այլ մէկը միւսից տարբերւում է 70,000-ով։

Իմ այս աշխատութեան մէջ պակասում են թուեր շատ հար-

ցերի մասին։ Այսպէս, ես չեմ կարող թուերով ապացուցանել հողատիրութեան դրութիւնը մեր գաւառում։ Եթէ դրա մասին ունենայի ստոյգ տեղեկութիւններ, առանց վարանելու պիտի ասէի այն, ինչ որ տեսնում է ճանապարհորդը գաւառում։ Կարելի է կարծել թէ աշխատութեանս մէջ բերուած մի քանի թուերը ճիշտ են բոլոր բնակիչների համար։ Եթէ այդ այդպէս լինէր՝ այն ժամանակ կասկած չէր մնալ, որ Շուշու գաւառի գիւղացին ապրում է բարօրութեան մէջ։ Եթէ իւրաքանչիւր հողի ունենար 4 չետվերտ հացահատիկ, ինչպէս այդ կը տեսնի ընթերցողը իմ յօդուածում, եթէ իւրաքանչիւր տուն ունենար ձի, ոչխար, եզ ու կով, այն ժամանակ նա կունենար առնուազը բարեկեաց երկրագործի վիճակը. բայց միթէ այդ ճիշտ է և իրականութեան մէջ... Գաւառում կան ծխեր, որոնք ունին մի կամ երկու դեսեատին հող, մինչդեռ իւրաքանչիւր ընտանիքի անդամների թիւը 6—10 է։ Զօրեղ գիւղացին ունի աւելի հող քան նա, որ ճնշուած է, նա, որ հասարակութեան մէջ դիրք չունի։ Հացի սակաւութիւնը բերում է պարտքեր, որոնք աներեւակայելի տոկոսներ են բերում պարտատէրերին։ Ամենեին ստախօսութիւն չպէտք է համարել, եթէ գիւղացին յայտնում է 10 ռուբլու 100 դառնալը կարճ ժամանակուայ ընթացքում։ Յետոյ՝ կան գիւղերում մարդիկ, որոնք պարապում են բացառապէս վաշխառութեամբ։ Դրանք շրջում են գիւղերը ամբողջ տարին և ամենայն ջանք թափում են իրենց գործը օգտաւէտ դարձնել հարկերի հաւաքման ժամանակ։ Մի գիւղացի, որին մտրակով ստիպում են շաբթուայ ընթացքում, որտեղից էլ լինի փող ճարել և վճարել արքունի հարկը, անկասկած թեթեւութիւն է զգում, երբ տեսնում է, որ վաշխառուն պատրաստ է անհրաժեշտ գումարը տալու նրան։ Բայց ինչքա՜ն թանգ է նստում այդ թեթեւութիւնը գիւղացուն։

Ընթացրենք գիւղացին վերցրել է պարտք։ Կալից յետոյ՝ նա տալիս է տոկոսը ցորենով, որովհետև փող չունի։ Ցորենը գնահատւում է աւելի ցած քան որ կարող էր վաճառուել։ Դրամագլուխը հետզհետէ մեծանում է, չնայելով որ գիւղացին վճարում է տոկոսը։ Անպաշտպան գիւղացին գանգատուել այդ անիրաւութեան դէմ չէ կարող, որովհետև գիւղական դատարանը պաշտպան է վաշխառուին. տանուտէրը յաճախ ինքը վաշխառու, իսկ բարձր դիտանցիաները մատչելի չեն ժողովրդին... Բացի դրանից՝ գիւղացին ունի տալու «չափար-փուլի», «գեազմա-փուլի», «դաչի-փուլի» և պիտի տայ փող զանազան ոստիկանների և այլ պաշտօնեաների հիւրընկալելու համար։ Վերջապէս նա ունի ընտանիքի ծախքեր։ Այն, ինչ-որ կարելի էր ասել գիւղական ժողովրդի ընտանեկան ծախքերի մասին 10 տարի առաջ, այժմ չէ կարելի, որովհետև հետզհետէ աւելանում

են գիւղացու պահանջները։ Այսպէս, եթէ տասը տարի առաջ գիւղացու խմելիքը միայն ցուրտ ջուրն էր, այժմ նա գործ է ածում թէյ. եթէ մինչև այժմ նա գաղափար չունէր թանգագին խմիչքների մասին, այժմ ունևոր դասակարգի հարսանիքում նա տեսնում է «կոնեակ»։ Նոյն տարբերութիւնը և՛ զգեստների, ուտելիքների վերաբերմամբ։

Տնտեսական պայմանների ծանրութիւնը կարելի է պարզել մասամբ և՛ գործարանական բանուորների երևոյթով։

Մետաքսի գործարաններում աշխատում են 8 տարեկան աղջիկներ։ Անկասկած ընտանիքը չէր թողնի իւր երեխային դեղնել, գունատուել և հիւանդանալ գործարանական կեղտոտ մթնոլորտի մէջ, եթէ նա ապահովուած լինէր։ Այդ նշանակում է, որ ընտանիքի անդամներից իւրաքանչիւրը հարկադրուած է աշխատել՝ պահելու իւր գլուխը։ Եթէ գործարանը տար նշանաւոր օրավարձ, ապա կարելի էր ասել, թէ գիւղացուն գրաւում է այդ, մանաւանդ որ ժողովրդի մէջ փողը բացակայում է։ Բայց չէ՞ որ երեխան ստանում է 7—10 կոպ. օրավարձ։ Գործարաններում աշխատում են նոյնպէս հասակաւոր կանայք։ Անշուշտ բարոյականութեան առաքեալները, տեսնելով հայ կնոջ գործարանի պատերի մէջ՝ ծախելիս իւր աշխատանքը և իրեն, պիտի պոռային ազգի կորստի մասին։ Բայց հայ «բարձրակոչ» բարոյականութիւնն անգամ չը դիմացաւ գոյութեան պաշտպանութեան հարցում,—իրականութիւնն այդպէս է։

Գործարանների աճումը նոյն իսկ ցոյց է տալիս երկրի բնակիչների տրամադրութիւնը։ Մի գիւղ, որ ունի փող՝ բացի բնական հարստութիւնից, ամենևին թոյլ չի տալ իւր որդիներին գործարանում աշխատելու։ Այդ դիպուածում գործարանատէրը կամ պիտի իւր հետ բանուորներ բերի, որը շատ թանգ կը նստի նրան, կամ գործարան չբանայ այդ գիւղում։ Ընդհակառակը մենք տեսնում ենք, որ նոյն իսկ կան ձեռքեր, որոնք կ՚առաջարկէին իրենց աշխատանքը, եթէ նորանոր գործարաններ բացուէին։ Մի փաստ էլ։ Այն գիւղերը, որոնք ունին մետաքսի գործարան՝ հարկերի հաւաքման ժամանակ դժուարութիւն չեն զգում—փող ունին։ Այստեղից էլ այն եզրակացութիւնը կարելի է անել, թէ գործարան ունեցող գիւղի ծխերից մեծ մասը տալիս է բանուորներ...

---

Բացի վերը յիշած «Кавказскій календарь»-ներից, ես ունեցել եմ 1895 թուի՝ գաւառապետի տարեկան հաշիւը. յետոյ, արհեստաւորների և բանուորների մասին ինձ տեղեկութիւններ տուել է պ. Լ. Աթաբէգեան։

# Ա) ԳԻՒՂԱՏՆՏԵՍՈՒԹԻՒՆ

## I. ԵՐԿՐԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

*ա) Հացահատիկներ։—Երկրագործութիւնը Շուշու գաւառում ժողովրդի ամենակարեւոր պարապմունքն է։ Գաւառի դաշտային և լեռնային մասերում հողը մշակւում է արօրով (ալաթ), իսկ գութանը, որը պահանջում է աւելի մեծ թւով բանւոր և անասուն, գրեթէ վերացուած է։ Եթէ չհաշւենք մի քանի ունևոր գիւղացիներին, գաւառում ժողովուրդը երկրագործական եւրոպական տեսակի գործիներ չունի։ Տիրապետող սակաւահողութիւնը չի ստիպում գիւղացիներին ունենալ կատարելագործուած մեքենաներ, որովհետև նըրանք չունին փող, գաւառում չկայ համայնական վարկ և ժողովուրդը չունի տեխնիկական գիտութիւններ։ Հայ երկրագործը բոլորովին չէ պարարտացնում հողը. աղբը նա գործադրում է, եթէ անտառներ չունի, իբրև վառելիք և սակաւ անգամ միայն կտրում է այգիները։ Միակ միջոցը, որով գիւղացին ուժեղացնում է հողը, այդ արտերի անցան թողնելն է* (запущеніе)*։ Եթէ երկու-երեք տարի մի արտում ցանեն, երրորդ կամ չորրորդ տարին նոյն արտը չեն մշակում, այլ թողնում են մի կամ երկու տարի, որից յետոյ ցանում են կամ դարձեալ առաջւայ արմտիքը կամ մի այլ։ Հազիւ է պատահում, որ միևնոյն արտը երեք տարի իրար վրայ ցանուի, սովորաբար երրորդ տարին ուրիշ հացահատիկ են սերմում։ Ջրովի արտեր մեր երկրագործը չունի։*

*Սակաւահողութիւնը, բանւոր անասնի պակասութիւնը յաճախ ստիպում են գիւղացիներին կամ բոլորովին չպարապել երկրագործութեամբ, պանդխտել, կամ եթէ պարապում են, ոչ այլապէս, քայց եթէ միանալով իրենց համագիւղացիների հետ, ընկերովի։ Այսպէս, եթէ գիւղացին չունի գոնէ մի լուծ եզ—*minimum 2 *զոյգ—նա ընկերանում է իւր համագիւղացու հետ և երկուսը միասին մշակում են ունեցած հողերը, կամ՝ համագիւղացիները միանալով վերցնում են մի երրորդից հող և մշակ ու հօտաղ վարձելով, միասին տանում են գործը։ Ստացած բերքի չորրորդ մասը տըւում է նրան, որից վերցրուել է հողը, իսկ մնացածը կիսւում է։*

*Հացահատիկների ցանքով պարապող գիւղացիների թիւը հետզհետէ ընկնում է։ Թաղլարում այդ աւելի աչքի է ընկնում, ու-*

րովհետև այդտեղ բնակիչների մօտ $^2/_3$ միայն պարապում է այդ ցանքով։

Ցանուող հացահատիկները հետևեալներն են. աշնանացան և գարնանացան ցորեն, գարի և կորեկ։ Ձեռքի տակ ունեցած նիւթերից հանելով Շուշու գաւառին վերաբերեալ թուերը, երևում է, որ ստացուած հացահատիկների ընդհանուր քանակութիւնները հետևեալ ութ տարիներում եղել են.

| Տարիներ | | 1886 | 1889 | 1890 | 1891 | 1892 | 1893 | 1894 | 1895 |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Չետվերտներ | Ստացուած է հացահատիկ գաւառում | 424,566 | 149,146 | 147,745 | 257,417 | 386,750 | 481,358 | 508,230 | 620,700 |
| | Մի հոգու վերայ գալիս է գաւառում | 4,11 | 1,39 | 1,37 | 2,37 | 2,52 | 4,34 | 4,54 | 5,5 |

1886 թուին Շուշու գաւառի գիւղացին ունեցել է աւելի մեծ քանակութեամբ հացահատիկներ, քան այդ հարկաւոր էր նրան՝ կերակրուելու և սերմահատիկ պահելու համար։ Գալիս է 1889 թուականը, երբ գիւղացին չունի հացի անհրաժեշտ քանակութիւնը. 90 թուին նոյնպէս. Նոյնը կարելի է ասել 91 և 92 թուերի մասին, եթէ ի նկատի ունենանք այն հանգամանքը, որ գիւղացին՝ բացի անհրաժեշտ քանակութիւնից, պիտի շատ աւելի ունենար, որպէս զի կարողանար ծածկել նախորդ տարիների վնասները։ Չմոռանանք, որ 1879, 80 և 81 թուականներն էլ գիւղացին անց է կացրել դժուարութեամբ և անկասկած պարտքերի տակ է մնացել։ Գիւղերում շատերից կարելի է լսել սովի տարուա պարտքերի մասին։ Այսպէս ուրեմն 89 թուի ցանքի անբերրիութիւնը և նրա հետևանքները մասամբ մոռացւում են միայն 93-ին, որից սկսած մինչև 95 թիւը գիւղացին արդէն բաւական հաց ունի, որը սակայն չէ տալիս այն օգուտը, ինչ որ սպասում էր նա, որովհետև 94 թուից հացի գինը նկատելի կերպով ընկնում է։

Յիշելու է և այն հանգամանքը, որ գաւառը՝ գրեթէ միայն

տալիս է քաղաքին հաց։ Իրաւ, եթէ Ջիբրայէլի կամ Ջէվանշիրի գաւառներից հացահատիկ բերէին Շուշու շուկաները, անկասկած պիտի չունենային այն օգուտը, ինչ որ ունենում է մեր գաւառի գիւղացին։ Այդ բաւական պարզ է, որովհետև ճանապարհների հեռաւորութիւնը, ժամանակի և աշխատանքի վատնումը Ջիբրայէլի կամ Ջէվանշիրի գաւառի գիւղացիների համար աւելի մեծ է քան Շուշու գաւառի, մինչդեռ քաղաքի շուկաներում հացի տիրապետող գինը մնում է՝ գաւառի ամենամօտիկ և ամենահեռու, ամենալաւ և ամենավատ հացերի գների միջինը։

Այդպէս ուրեմն՝ Ջիբր. և Ջէվ. գաւառները, եթէ վաճառում էլ են հաց Շուշու շուկաներում, այն էլ աննշան քանակութեամբ։ Եթէ այդպէս է, նշանակում է մեր գաւառի գիւղացին իր հացի մի մասը տալիս է քաղաքին։ Յետոյ՝ վերը բերած աղիւսակի թուերի մէջ մտնում է և կարտոֆիլի քանակութիւնը, որը, սակայն, գիւղացին չէ գործադրում, իբրև հաց։ Իսկ գարին բացառիկ դիպուածներում միայն հացի տեղ է գործադրւում։

Որպէս զի ցոյց տամ առանձին առանձին ցանուող հացահատիկները և նրանց քանակութիւնները, մէկից ստացածը և մի հողու վրայ եկող հացի քանակութիւնը միայն գաւառում, դնում եմ ներքև երկրորդ աղիւսակը։ Այդ չորս տարուց ընթերցողը կարող է տեսնել, որ հացահատիկների մէջ գերազաս տեղ բռնում է աշնանացան ցորենը, որից յետոյ գալիս է գարին և ապա կորեկը։ Այդ դասաւորութիւնը բնորոշ է գաւառի համար ոչ միայն այդ մի քանի տարիների վերաբերմամբ, այլ և ընդհանրապէս։

---

| Տարիներ | ՑՈՐԵՆ | | | | | | | ԳԱՐԻ | | | | ԿՈՐԵԿ | | | | Գաւառի բնակիչ-ների ընդհանուր թիւը |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Աշնանացան | | | Գարնանացան | | | | | | | | | | | | |
| | Ցանուած է | Ստացուած է | Մէկից առ. | Ցանուած է | Ստացուած է | Մէկից | Մի հոգու վրայ ցանուած է | Ցանուած է | Ստացուած է | Մէկից | Մի հոգու վրայ ցանուած է | Ստացուած է | Ցանուած է | Մէկից | Մի հոգու վրայ ցանուած է | |
| 1886 | 58,419 | 292,905 | *) 5,0 | 5,509 | 23,060 | 4,18 | 3,06 | 17,696 | 95,450 | 5,5 | 0,92 | 1,409 | 12,681 | 9,0 | 0,12 | 103,185 |
| 1889 | 35,097 | 81,208 | 2,3 | 2,180 | 3,770 | 1,7 | 0,79 | 20,458 | 51,9:0 | 2,5 | 0,48 | 3,802 | 8,376 | 2,2 | 0,07 | 106,635 |
| 1891 | 52,335 | 117,630 | 2,5 | 5,600 | 10,400 | 2,0 | 1,7 | 23,893 | 66,227 | 2,77 | 0,6 | 21,059 | 46,260 | 2,1 | 0,4 | 108,942 |
| 1894 | 71,104 | 367,733 | 5,1 | 8,000 | 40,200 | 5,0 | 3,65 | 17,000 | 87,000 | 5,1 | 0,77 | 19,700 | 102,500 | 5,2 | 0,9 | 111,735 |

*) 58,419. 292,905. 5,0.

բ) Բ ա մ բ ա կ։ Երկրագործական պարապմունքներից մէկն էլ, իբրև գիւղատնտեսական շահաւէտ մի ճիւղ՝ բամբակի մշակումն է։ Երկար ժամանակ չէ, որ բամբակը տարածուել է Շուշու գաւառում, հազիւ 10 տարի առաջ սկսուած լինի տնտեսութիւնը։ Սակայն կարճ ժամանակի ընթացքում նա բաւական առաջ է գնացել։ Հաւանականաբար բամբակի առաջադիմութիւնը բաւական սերտ կապ ունի այն հանգամանքի հետ, որ տարուայ որոշ ժամանակին ժողովուրդը կարող է փող ունենալ բամբակի վաճառումից. իսկ այդ փողը շատ հարկաւոր է գիւղացուն,—պետական հարկերի և զանազան ծախսքերի համար, որոնց նա չէ կարողանում ծածկել հացահատիկների ցանմամբ միայն։ Ներքև բերուած թուերը ցոյց են տալիս մաքուր բամբակի այն քանակութիւնը, որ ստացուած է 1890, 1893, 94 և 95 թուերին։

| 1890 թ. | 1893 թ. | 1894 թ. | 1895 թ. |
|---|---|---|---|
| 2,138 փ. | 4,3008 փ | 4,474 փ. | 4342 փ. |

գ) Կ ա ր տ օ ֆ ի լ։ Գանձակի նահանգում Շուշու գաւառը գրեթէ երկրորդ տեղն է, ուր մեծ քանակութեամբ կարտոֆիլ է ցանւում։ Հետևեալ վեց տարիներում ստացուած է կարտոֆիլ.

| Տարիներ | 1886 | 1889 | 1890 | 1891 | 1893 | 1894 |
|---|---|---|---|---|---|---|
| Ցանուած է չետվերտ | 94 | 530 | 4,950 | 3,070 | 16,830 | 13,753 |
| Ստացուած է չետվերտ | 470 | 3,882 | 18,450 | 16,850 | 85,570 | 73,597 |

Այս աղիւսակի թուերից պարզ երևում է, որ տասն տարի առաջ գաւառում կարտոֆիլ ցանւում էր աննշան քանակութեամբ, այն ինչ այժմ շատ մեծ ծաւալ է ստացել նա, և ցանւում է աւելի մեծ քանակութեամբ, քան օր. գարնանացան ցորենը։

---

Ե ր կ ր ա գ ո ր ծ ա կ ա ն   բ ա ն ո ւ ո ր ն ե ր։ Սրանք պատկանում են գիւղական ժողովրդի այն մասին, որը չունի երկրագործութեան համար անհրաժեշտ բանուոր անասունը, գործիները և բաւականաչափ հող. բացի դրանից ունի զգալի պարտքեր։ Գիւղացիները այդ պայմաններից ստիպուած՝ կամ թողնում են իրենց ծննդավայրը աւելի երկար ժա-

մանակով, կամ պանդխտում են շրջակայ Թիւրք գիւղերը՝ նրանց դաշտերում աշխատելու համար և կամ վերջապէս, եթէ հնարաւոր է, աշխատում են իրենց համագիւղացիների մօտ։

Հասակաւոր գիւղացին չէ ծառայում իւր համագիւղացուն ամբողջ տարով. քչերը միայն գարնան կամ աշնան աշխատում են ուրիշի արտերում և ստանում 7—10 րուբլ ամսավարձ։

Վերն ասացի, թէ աղքատ գիւղացին պանդխտում է շրջակայ Թուրք գիւղերը աշխատութիւններ գտնելու համար,—դրանք հեռաւեալներն են.

1) Վ ա ր ո ղ. Սա ցանում է մահմեդական գիւղացու արտերը, գործադրելով նրա անասունը, գործիները և սերմահատիկը. Գործատէրը տալիս է վարողին մի օգնական. վարողն էլ պարտաւորւում է մասնակցել հնձին և ստանում է բերքի $^{1}/_{5}$-ը։

2) Հ ն ձ ո ղ. Ստանում է 20-ից 3-ը, ինչպէս ասում է գիւղացին, կամ 15%. Եթէ վարձը տրւում է փողով, հնձողն ստանում է իւրաքանչիւր փնջակի համար—5 խուրձ—20—25 կոպ. և կարող է հնձել օրը 4 փնջակ, minimum 2 փնջակ։

3) Հ օ տ ա ղ. Սա տարիքով աւելի փոքր է քան վարողն ու հնձողը, որովհետև իւր գործը համեմատաբար աւելի քիչ ֆիզիքական ուժ և փորձառութիւն է պահանջում։ 10—15 տարեկան գեղջուկը ծառայում է իւր պարտատիրոջ տանը. վարձւում է ամբողջ տարով. գործատէրը նշանակում է նրան 10—20 րուբլ տարեվարձ, ստանում է ուտելիքը, հագուստն ու տրեխը։

Հօտաղը վարձւում է և ամսով. այս դիպուածում նա ստանում է 4 րուբլ ամսավարձ, ուտելիքն ու տրեխը։

Կ ի ն  բ ա ն ո ւ ո ր ն ե ր. Հայ կինը իւր գիւղից դուրս, ուրիշ գիւղի դաշտերում չէ աշխատում։ Նրա զբաղմունքն, իբրև երկրագործ բանուորի, քաղհանն է։ Քաղհան անող կինն ստանում է 15—20 կոպ. օրավարձ։

## II. ԱՅԳԵԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Այգեգործութիւնը գաւառում վաղուց տարածուած պարապմունք է ժողովրդի համար. իսկ վերջերս նա նկատելի կերպով ծաւալւում է և երկրագործութիւնից ցետոյ՝ առաջ է գալիս, իբրև ամենակարևոր տնտեսութիւն։ Չէ կարելի ասել, թէ գիւղացին մեծ օգուտներ ունի այգիներից, որովհետև նա առ այժմ մեծ քանակութեամբ օղի կամ գինի *) չէ արտահանում։

---

*) Այգեգործութիւնն այստեղ սահմանափակւում է խաղողի և թթի այգիների մշակմամբ, որովհետև գաւառում պտղատու ծառերի այգիները շատ չեն։

Այգեգործութեան արդիւնաբերածը մեծ գումարներ է տալիս հարուստ գործարանատէրերին, իսկ գիւղացին ինքը յաճախ ծախում է իւր այգին կամ աւելի լաւ ասել—որոշ վարձատրութիւն ստանալով զիջում է մի որև է հարուստ գործարանատէրի՝ շահագործելու մի տարի և այդպէս գրեթէ՝ իւրաքանչիւր տարի։ Խաղողի այգիներից ստացած գինին հայ գիւղացին գործածում է տանը և միայն քիչ քանակութեամբ վաճառ է հանում։ Գաւառում իւր գինով յայտնի է Ղզլար. վերջինիս տուած գինին վաճառւում է աւելի թանգ գնով, քան մնացած տեղերինը։ Թուրք ազգաբնակութիւնը, խաղողի այգիները կամ ծախում է՝ (իւրաքանչիւր տարի գրեթէ) շահագործելու հայերին կամ ինքը խաղողը վաճառում, իբրև պտուղ։ Խաղողից թուրքերը պատրաստում են բէքմէզ։

Շուշու գաւառի հայ գիւղացու պատրաստ գինին շուտով թըթւում է։ Այս վերջին երևոյթը, բացի այն որ գիտութեան բացակայութեան հետևանք է, ունի մի այլ պատճառ էլ. դա գաւառի աշխարհագրական դիրքն է և սրա հետ կապուած վաղաժամ ցրտերն ու ձմեռը, որոնք ստիպում են գիւղացուն խաղողը քաշել—դեռ չհասած։ Գաւառի դաշտային մասերում և աւելի տաք տեղերում միայն քիչ ուշ է սկսւում խաղողաքաղը։

Գինին պատրաստւում է շատ հասարակ կերպով։ Խաղողը թափւում է հնձանի կամ «չրվիշի» մէջ և յետոյ տղամարդիկ մերկ ոտքերով սկսում են կոխոտել խաղողը. գոյացած հեղուկը թափւում է հնձանից կարասների մէջ,—այդքանով վերջանում է գինի պատրաստելու պրոցէսը։

Ներքև բերած վեց տարիներում գաւառում պատրաստուած է գինի—վեդրոններով հաշուած.

| 1884 թ. | 85 թ. | 90 թ. | 93 թ. | 94 թ. | 95 թ. |
|---|---|---|---|---|---|
| 95,406 | 40,000 | 130,000 | 180,000 | 186,000 | 17,900 |

1895 թուականին գաւառում ստացուած գինու քանակութեան փոքրութիւնը պիտի բացատրել այն հանգամանքով, որ այդ տարի գաւառում տիրում էր խաղողի հիւանդութիւն։ Իսկ ընդհանրապէս թուերից երևում է, որ խաղողի այգիները բաւական նշանաւոր տեղ են բռնում երկրում։ 95 թուի տեղեկութիւններից երևում է, որ գաւառում խաղողի և թթի այգիները բռնում են 7—8 հազար դեսեատին հող, որից 5 հազարը միայն խաղողի, իսկ 2—3 հազար դեսեատինը թթի այգիները։

Թթի այգիների շահագործութիւնը հայ գիւղացուն տալիս է որոշ չափով օղի և կերակրում է նրա շերամին։ Թուրք ազգաբնա-

կուլթիւն՛ը բոլորովին չէ պատրաստում օղի. Թթի այգիները նա նուիրում է շերամի որդերի կերակրելուն.

1895 թուին գաւառում պատրաստուած է 300,000 վեդրօ օղի. հաշուելով վեդրօի գինը 4 ր. 50 կոպ., կը տեսնենք, որ այգեգործութիւնը միայն օղի արտադրելով, տուել է 1,300,000 րուբլի. եթէ աւելացնենք դրա վրայ գինին 17,900 վեդրօ՝ 23,270 րուբլու արժողութեամբ, կ'ունենանք 1,323,270 րուբլի. Այդ միլիօնը միայն ցոյց է տալիս գաւառի այգեգործութեան ահագին նշանակութիւնը, իբրև գիւղատնտեսական նշանաւոր և օգտաւէտ ճիւղերից մէկի, բայց նա չէ ցոյց տալիս ժողովրդի տնտեսական դրութեան աստիճանը. Ինչպէս Շուշու գաւառը տալիս է արժողութիւններ, որոնց ամենամեծ մասը մնում է յօգուտ հարուստ այգետէրերի և գործարանատէրերի, իսկ ժողովուրդն այդ բոլորից վերցնում է այնքան, որքան կարող է վերցնել անփող, արդիւնաբերութեան ձեռնարկութեան անկարող գիւղացին. Արդիւնաբերուած օղին և գինին գրեթէ ամբողջապէս դուրս է եկել նրա այգիներից և նրա աշխատանքի պըտուղն է, սակայն այդ բոլորից նա շահել է այնքան, որ պիտի շահէր, եթէ տասնապատիկ պակաս աշխատած և քրտինք թափած լինէր, որովհետև նա ստիպուած է եղել անձեռնտու պայմաններով վաճառել իւր այգիների պտուղը.

---

## Այգեգործական բանուորներ.

1. Դարիջի. սա ստանում է ամբողջ սէզօնի համար, որը տեւում է 6 կամ 7 շաբաթ, 10—15 րուբլի. Հասակով դարիջիները լինում են 12—15 տարեկան.

2. Թութ թափողներ. ստանում են ամսական 20 րուբլի, ամբողջ սէզօնի համար 30—35 րուբլի. Սէզօնը տևում է յունիսի 10-ից մինչև յուլիսի վերջը.

3. Շալ բռնող կանայք ստանում են ամսական maximum 6 րուբլի.

4. Խաղող քաղող կանայք ստանում են 10—20 կ. օրավարձ.

5. Խաղող կրող (տղամարդ) » » 30—40 » »

6. Խաղող կոխող » » » 40—60 » »

Գարնան խաղողի այգիների հողը փափկացնում են. դրա համար վարձում են բանուորներ, որոնք բահում են այգու հողը և ստանում են 30—50 կոպ. օրավարձ.

Օրավարձ բանուորն ստանում է գործատէրից՝ բացի դրամական վարձատրութիւնից՝ կերակուր.

---

## III. ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹԻՒՆ

Անասնապահութիւնը հայ ազգաբնակութեան մէջ զարգացած չէ։ Նա կապուած է երկրագործութեան հետ։ Հայ ազգաբնակութիւնը չէ պահում աւելի մեծ քանակութեամբ անասուն, քան որքան հարկաւոր է երկրագործական պահանջներին մինիմալ կերպով բաւականութիւն տալու համար։ Նրա ամենաանշան մասը միայն ունի մեծ քանակութեամբ տաւար, ոչխար, այծ ու խոզ։ Տաւարը նիհար է, հասակով ցած և վատոյժ։ Մի քանի հայ գիւղեր միայն —Տումի, Թաղոտ, Ախտարանոց և Շոշլի—պարապւում են անասնապահութեամբ. սակայն այստեղ էլ վերջինս երկրագործութեան չափ զարգացած չէ. իսկ մնացած գիւղերում աւելի յաճախ պատահում են ծխեր, որոնք տաւար բոլորովին չունին, ինչու և երկրագործութեամբ չեն պարապւում։ Տաւարն արածում է արօտատեղերում և ցլած արտերում։ Արօտատեղերը ըստ մեծի մասին գտնւում են Թուրք ելլաղչիների ձեռքին, որոնք գարնանը չւում են տափարակներից լեռները։

Պ. Ա. Քալանթարի աշխատութիւնից *) տեսնում ենք, որ տաւարի քաշը 5—7—8 փութ է։ Կովը տալիս է օրական 8—15 ֆունտ կաթ—մայիսին և յունիսին։ Ամբողջ տարուայ համար, միջին թւով, կովը տալիս է ոչ աւելի քան 9.5 ֆունտ։

Շուշու գաւառում Թուրք ազգաբնակութեան մէջ անասնապահութիւնը բռնում է գերադաս տեղ՝ համեմատելով գիւղատնտեսական միւս ճիւղերի հետ։ Գարնան սկզբներին գաւառի Թուրքերը թողնելով իրենց բնակութեան վայրերը, չւում են լեռները, որտեղ անասնապահութեան վերաբերեալ բոլոր գործերը կատարում են կանայք։ Տղամարդիկ մասամբ մնում են տափարակներում իրենց վար ու ցանքին նայելու և հունձը հաւաքելու։ Գարնան և ամառը ստացած արդիւնքներից Թուրքերը վաճառ են հանում մի մասը։ Բուրդը, իւղը և պանիրը նրանք ծախում են հայերին, փոխանակում են ցորենով և այլն։

Կովից ստանում են օրական 8—15 ֆունտ կաթ—մայիսին և յունիսին՝ յետոյ 4—6 ֆունտ։ Կարելի է ասել, Թուրքերի կովը տալիս է 8.25 ֆ. կաթ, միջին թւով։ Գտնելով առաջին և վերջին թւերի (9.5 և 8.25) միջինը, ստանում ենք մօտ 8.9 ֆունտ. այդքան, ուրեմն, կաթ է ստացւում մի կովից պ. Ա. Քալանթարի տեղեկութիւնների համաձայն։

---

*) А. Калантаръ. Скотоводство на Кавказѣ.

Ներքև դնում եմ 1891 և 1895 թուերում գաւառի ունեցած անասունների աղիւսակը:

Աղիւսակ 1.

| Անասուններ | 1891 թ. | | | 1895 թ. | | |
|---|---|---|---|---|---|---|
| | Քաղաք | Գաւառ | Բոլորը | Քաղաք | Գաւառ | Բոլորը |
| Ձի. . . . . | 210 | 6,212 | 6,422 | 370 | 12,600 | 12,970 |
| Էշ . . . . . | 85 | 13,000 | 13,085 | 320 | 13,200 | 13,520 |
| Ջորի. . . . | 145 | 800 | 945 | 160 | 840 | 1,000 |
| Եզ-կով . . . | 550 | 59,161 | 59,711 | 580 | 64,400 | 64,980 |
| Գոմէշ-մատակ | — | 10,000 | 10,000 | — | 11,200 | 11,200 |
| Ոչխար (հաս.) | 650 | 139,221 | 139,871 | 220 | 155,000 | 155,200 |
| Այծ. . . . . | 66 | 5,644 | 5,710 | 380 | 8,200 | 8,580 |
| Խոզ . . . . | — | 12,880 | 12,880 | 60 | 22,000 | 22,060 |
| Ուղտ. . . . | — | 219 | 219 | — | 256 | 256 |

Խոզապահութեամբ պարապում են միայն հայերը: Իսկ ուղտերը պատկանում են թուրքերին:

Բացարձակ թուերից էլ երևում է, որ 1891 թուից մինչև 1895-ը անասուններն ընդհանրապէս բազմացել են: Այժմ տեսնենք ինչպէս է արտայայտւում այդ զարգացումը գաւառի ազգաբնակութեան թուի վերաբերմամբ: Վերցնում է միայն գաւառը:

Աղիւսակ 2. *)

| Անասուններ | | | Ծխերի մօտ. թիւը | | Բնակիչն. մ. թիւը | | Մի ծխին գալիս է | | Մի հոգուն գալիս է | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | 1891 | 1895 | 1891 | 1895 | 1891 | 1895 | 1891 | 1985 | 1891 | 1895 |
| Ձի . . | 13,716 | 20,250 | 18,157 | 18,778 | 108,942 | 112,668 | 0,75 | 1,07 | 0,125 | 0,179 |
| Եզ-կով. | 79,161 | 86,800 | | | | | 4,38 | 4,56 | 0,75 | 0,79 |
| Ոչխար. | 143,926 | 161,835 | | | | | 7,9 | 8,6 | 1,32 | 1,43 |
| Խոզ . . | 12,880 | 22,000 | | | | | 1,22 | 2,02 | 0,2 | 0,37 |

*) Երկրորդ աղիւսակի մէջ բոլոր ջորիներն ու էշերը դարձրած են-

Վերը բերած թուերից երեւում է, որ իւրաքանչիւր ծխին 1891 թուին ընկնում է ձի 0,75. ասել է թէ՝ այդ թուին գաւառում կային ծխեր, որոնք ամենեւին ձի չունէին. Եթէ թուերն էլ չլինէին, այդ կարելի էր ասել համարձակ կերպով գոնէ հայերի համար։ Նոյն բանը կարելի է ասել 95 թուի մասին. կոտորակն աճել է մինչեւ մի ամբողջ և աւելի։

Այսպէս թէ այնպէս՝ թուերը ցոյց են տալիս գաւառի վերացական բարեկեցութիւնը, միջին հարստութիւնը, բայց իրողութիւնը։ Եթէ լինէին թուեր տնտեսական դրութեան մասին, որոնք ցոյց են տալիս ձի, եզ, ոչխար և այլն չունեցող ծխերի քանակութիւնը, մենք պիտի տեսնէինք, որ այդպիսիները կազմում են նշանաւոր կօնտինգէնտ։ Յետոյ այդ չորս տարուայ ընթացքում կրկնապատկուել է գաւառի ձիերի թիւը։ Այդ կրկնապատկումը բացատրել ձիերի աճմամբ չէ կարելի. ընթերցողը կարող է ենթադրել, թէ ազգաբնակութիւնը վերը յիշած ժամանակի ընթացքում հարստացել է որոշ չափով, բայց գուցէ այդ երեւոյթը հետեւանք է գիւղական ունեոր դասակարգի հարստութեան զարգացման և ոչ գաւառի ժողովրդի ընդհանրապէս, որն աւելի հաւանական է։

Ինչ վերաբերում է խոզերին, վերջիններս պատկանում են հայերին, որովհետեւ թուրք ազգաբնակութիւնը խոզապահութեամբ չէ պարապում. ուստի 2-րդ աղիւսակի վերջին չորս սիւնեակների թուերը վերաբերում են միայն հայերին։

1891 թուից մինչեւ 1895 թիւը՝ իւրաքանչիւր տարի մի հազար մարդու վրայ, գաւառում, աւելացել է մօտ 37 հոգի, իւրաքանչիւր հազար ձիի վրայ 102 հատ, հազար ոչխարի վրայ 102 հատ, հազար եզ-կովի վրայ 125 հատ *)։ Թէեւ այս թուերից գաւառի համար օրէնք հանել չէ կարելի, բայց նրանք գոնէ ցոյց են տալիս, որ անասուններն այդ չորս տարուայ ընթացքում աճել են աւելի արագ քան մարդիկ։

Համեմատութեան համար մենք այստեղ դնում ենք Ռուսաստանի մի քանի նահանգների **) վերաբերեալ թուեր, որոնցից ընթերցողը կը տեսնի որ այդ նահանգներում իւրաքանչիւր ծուխն աւելի քիչ տաւար և այլ անասուններ ունի, քան մեր գաւառում։

---

ձիեր, գոմէշներն ու մատակները—կովեր, ուղտերն ու այծերը—ոչխարներ, հաշուելով մի ձին հաւասար 2 էշի և $^{4}/_{5}$ ջորու, մի կովը կամ եզը=$^{1}/_{2}$ գոմէշի կամ մատակի, իսկ մի այծը $^{5}/_{6}$ ոչխարի։

*) Հազար խոզի վրայ աւելացել է 115 հատ։

**) Այդ թուերը վերաբերում են Նովորոսսիայի, Մալորոսսիայի և Չերնոզեօմի մի քանի նահանգներին։ Տես „Нов. Время“, №№ 7312, 14, 17 և 20.

Աղիւսակ 3.

| Անասուններ | Մի ծխին գալիս է ռուս. նահանգ. | | Մի ծխին գալիս է Շուշու գաւառ. | |
|---|---|---|---|---|
| | 1862 | 1893 | 1891 | 1895 |
| Ձի. . . . | 2,06 | 0,59 | 0,75 | 1,07 |
| Տաւար. . | 2,47 | 0,84 | 4,38 | 4,[illegible]6 |
| Ոչխար. . | 7,87 | 2,02 | 7,9 | 8,6 |
| Խոզ. . . | 1,66 | 0,37 | — | — |

1895 թուին գաւառում ստացուած է բուրդ 10,230 փութ, որից ծախել են 8,300 փ.—3 ր. 20 կոպէկով փութը, ընդամենը 26,560 րուբլ։

---

## IV. ՇԵՐԱՄԱՊԱՀՈՒԹԻՒՆ

Շերամապահութիւնը մեր գաւառում վաղուց տարածուած է, Գաւառի բոժոժը մի ժամանակ եղել է իտալական դեղին տեսակից։ Շերամապահ գիւղացին իւր տանը ոստնաչարխով պատրաստում է եղել թել, որը գնել են տեղական վաճառականները և արտահանել արտասահմանեան քաղաքները։

Եօթանասնական թուականներին գալիս են մեր գաւառը ֆրանսիացիներ, որոնք մեծ քանակութեամբ սերմ են հանում տեղական բոժոժից, իսկ արտասահմանեան հիւանդոտ սերմը բերում են տարածում գաւառում։ Այսպիսով հիւանդանում է սերմի գործադրուող տեսակը և տեղի է տալիս ուրիշ տեսակներին։ Սակայն այդ թուականներին տեղական (շուշեցի) վաճառականները արտասահմանից օրինակում են մանարանը և մետաքս ոլորող մեքենան և այնուհետև սրանց բոլոր ջանքը լինում է բերել առողջ սերմ Ցեյլիսի եղանակով պատրաստած։ Այսպիսով շերամապահութիւնը կրկին առաջ է գնում։ Այժմ գիւղացին սերմ ստանում է կամ գործարանատէրերից կամ ուրիշ մարդկանցից, որոնք շրջում են գիւղերը և սերմ բաժանում որոշ պայմաններով։

1890 թուին գաւառում ստացուած է բոժոժ 2,138 փութ, 1893-ին 4,300 փ., 1894 ին 17,000 փ. և 1895-ին 9 000 փութ.

1895 թուին, գաւառապետի տեղեկութիւնների համաձայն, 4,300 փութ բոժոժ ուղարկուած է արտասահման։

---

## V. ՄԵՂՈՒԱԲՈՒԾՈՒԹԻՒՆ

Գաւառում մեղուապահութեամբ պարապում են քչերը միայն, և ստացած մեղրը գիւղացին մեծ մասով գործադրում է տանը։ Ժողովուրդը մեղու պահել չգիտէ, այնպէս որ յաճախ փեթակները լցւում են որդներով, որոնք ոչնչացնում են մեղուներին։ Այդ է պատճառը, որ գիւղացիների մէջ մեղուաբուծութիւնը տարածուած չէ։

Ես ունիմ թուեր՝ ստացուած մեղրի և մոմի քանակութեան մասին՝ միայն 1895 թուի համար, որ և բերում եմ.

| Մեղուաբուծութեամբ պարապող գիւղերի թիւը | Փեթակների ընդհանուր թիւը | Ստացուած է մեղր, փութ | Ստացուած է մոմ, փութ | 1000 շնչի վրայ ընկնում է փեթակ | Մի փեթակից ստացուած է մեղր և մոմ, փութ |
|---|---|---|---|---|---|
| 46 | 283 | 75,6 | 9,8 | 2,44 | 0,3 |

---

## VI. ՁԿՆՈՐՍՈՒԹԻՒՆ

Վարանդայում մեծ լճեր և գետեր չլինելու պատճառով յատկապէս ձկնորսութեամբ պարապողներ չկան։ Միայն սիրողները, այն էլ ազատ ժամանակներում, որսում են մի քանի տեսակ ձըկներ, որ գլխաւորապէս իրենք են գործածում և կամ շատ քիչ դէպքերում վաճառքի հանում։ Բացի սովորական ուռկանից (թոռ), գործ են ածում և՛ ճվարան։ Սա կոնաձև հիւսուած մի կողով է, մէջը մըտցրած մի երկրորդը, որ աւելի փոքր է և երկու ծայրից էլ բաց։ Մեծի մէջ թափում են հացի փշրանքներ և առհասարակ այնպիսի բաներ, որոնք կարող են գրաւել ձկներին։

Ճվարանը տեղաւորում են մի այնպիսի անկիւն, ուր ջուրը թափւում է աննշան բարձրութիւնից։ Ձկները մտնում են ճվարանի

մէջ և երբ վերջինս հանում են, նրանք մէջն են մնում։ Ձուկ որսում են նաև ջրի ընթացքը փոխելով։

---

## VII. ՈՐՍՈՐԴՈՒԹԻՒՆ

Որսորդութեամբ պարապւում են նոյնպէս սիրողները, գործածելով առաւելապէս ամբողջ Կովկասում գործածական հին ձևի զէնքերը։ Սպանած որսը սովորաբար իրենք են գործածում և կամ ծախում մեծ մասամբ իրենց գիւղերում։ Առաւելապէս Աւետարանոց, Թաղլար, Թաղավարդ և այլ գիւղերի բնակիչները իրենց շրջակայ անտառներում որսում են եղջերու, այծեամ (քօչ), արջ, գայլ, վայրի կատու, չաղալ և այլն։



Զ է ն ք ե ր

Առհասարակ խմբով են գնում որսի և թռչուն որսալու համար տանում են իրենց հետ «ադամլա», որ քառանկիւնի մի շրջանակի վրայ կպցրած գոյնզգոյն կտոր է։ Սրա վրայ կան երեք ծակ, երկուսը որսորդի աչքերի, իսկ երրորդը հրացանի համար։ Թռչնորսը դամլան ձեռին բռնած առաջ է գնում, ծածկուելով նրա ետևում։

Թուշուններին «ծղարակով» էլ են որսում.—Այգու մէջ կամ մի որև է յարմար տեղ մի փոս են փորում և բերանը ծածկում երկու բարակ տախտակով՝ փեղկերի նման. Սրանք յենւում են չլփլների վրայ—թարմ ու ճկուն ոստիկներ, որոնք թուով չորս են, իւրաքանչիւր փեղկի համար երկուսը և կատարում են զսպանակի դեր. Երբ թուշունը կանգնում է տախտակների վրայ, չլփլինները՝ նրա ծանրութիւնից կռանում են, փեղկերը բացւում են փոսի մէջ և նա ընկնում է ծղարակը. Դրանից յետոյ չլփլինները կրկին ուղղւում են, փոսը ծածկւում է և թուշունը մնում փակուած.



Շուշու ջրկիր.

---

## Բ) ԱՐՀԵՍՏՆԵՐ

Արհեստները մեր գաւառում բաւական տարածուած են և նրանցով պարապւում են բացառապէս հայերը. Ի հարկէ խօսքս գիւղերի մասին է և ոչ քաղաքի, ուր թուրքերն էլ պարապւում են արհեստներով, բայց շատ սահմանափակ կերպով. Ամենից աւելի տարածուած արհեստները քարտաշութիւնը, որմնադրութիւնը և հիւսնութիւնն են. Չնայելով արհեստաւորների թուի մեծութեան, նրանցից միայն քչերը մնում են գաւառում, իսկ մեծ մասը պանդխտում

է զանազան կենդրոններ աշխատանք գտնելու համար։ Դրանք պան-դխտում են յաճախ կարճ ժամանակով և յետոյ վերադառնում, մնում են տանը որոշ ժամանակ և դարձեալ գնում են։ Ինչ վերաբերում է դաւառում մնացող արհեստաւորներին, նրանք մեծ մասով երկրագործ-ներ էլ են։ Դրանք բոլորն ստանում են գործատէրից կերակուրը, իսկ գործատէրը աշխատութիւնների մէջ ակտիւ մասնակցութիւն է ունենում։ Կան և այնպիսի արհեստաւորներ, որոնք մի քանի ար-հեստ գիտեն։

Արհեստաւորների բանուորական օրն սկսւում է գիւղում վաղ առաւօտից և տևում է մինչև երեկոյեան վերջալոյսը՝ մի ժամի չափ դադար ունենալով։

Վարպետը դաւառում իւր աշակերտի տէրն է։ Գործ մտնելու օրից՝ աշակերտը իւր տան համար գրեթէ չպիտի աշխատի. նա՝ մին-չև քարգան դառնալը՝ բացի վարպետի հետ աշխատելուց, արհեստին վերաբերեալ գործերը կատարելուց, ծառայում է և՛ նրա տանը։

Արհեստաւորի բանուորական օրը քաղաքում սկսւում է գրեթէ ժամը 5-ից և տևում է մինչև 6 կամ եօթը։ Կան արհեստաւորներ, որոնք աւելի շուտ են վերջացնում օրուայ աշխատութիւնները։ Դա-դարը լինում է միայն կէսօրին, ճաշի համար և տևում է այնքան ժամանակ, որքան հարկաւոր է ճաշելու համար։

Ներքև ես դնում եմ դաւառի այն արհեստաւորներին, որոնք պարապւում են միայն իրենց արհեստով, ապա պիտի յիշեմ նրանց, որոնք զբաղւում են իրենց արհեստով միայն ձմեռը։

## I.

1. Դերձակներ. սրանք կատարում են ոչ միայն մի գիւղի պատուէրները, այլ և շրջակայ հայ և թուրք գիւղերինը։

2. Հիւսներ—նոյնպէս։

3. Դարբիններ—ձմեռը գնում են թուրք գիւղերը և այն-տեղ աշխատում։

4. Պայտառներ, որոնք աշխատում են որև է գիւղում և շըր-ջակայ թուրք գիւղացիների համար։ Պայտառները չորեքշաբթի օ-րերն աշխատում են մալականների շուկայում։ Նրանք պայտերն ստանում են Շուշուց։

5. Տակառագործներ։

6. Որմնադիրներ։

7. Երաժիշտներ—բոլոր գիւղերում երաժիշտներ չկան. եթէ

որև է գիւղ ունի երաժիշտներ, շրջակայ Թուրք և հայ գիւղերն էլ հրաւիրում են նրանց։

8. Անասնաբուժներ։

9. Մսագործներ։

## II.

Դերձակներ, կլէկչիներ, դարբիններ և տակառագործներ, որոնք ուրիշ արհեստներ էլ ունին. Սափրիչներ. Թաղլարում կայ մի սափրիչ, որը և՛ որմնադիր է, և՛ հիւան, և՛ ձէթ պատրաստող, և՛ օղէգործարանատէր։

Նոյն գիւղում կայ մի համետագործ և մի դերձակ, որոնք աշխատում են պատուիրատուի տանը՝ գործադրելով նրա մատերիալը։

---

Արհեստաւորների աշակերտներ.— Բոլոր աշակերտները մինչև քարգահ դառնալը՝ ստանում են իրենց վարպետներից հագուստ և կերակուր, իսկ վարձ չեն ստանում։

1. Դերձակի աշակերտը երկու տարի վարձ չէ ստանում, յետոյ իբրև քարգահ ստանում է 25—50 ր. տարեվարձ։

2. Դարբնի աշակերտը երկու և կէս կամ երեք տարի սովորում է. դարբնի քարգահն ստանում է եղած արդիւնքի $1/4$ ը։

3. Կլէկչու (կլայեկող) աշակերտը սովորում է արհեստը 6 ամսում, դրանից յետոյ, եթէ ընկերանում է վարպետի հետ, ստանում է արդիւնքի $1/3$-ը։ Կլէկչիները գիւղերում իրենց վարձն ստանում են արմտիքով։

4. Տակառագործի աշակերտը սովորում է արհեստը $2\,1/2$ կամ 3 տարուայ ընթացքում. յետոյ իբրև քարգահ՝ ստանում է 40—50 րուբլ տարեվարձ։

---

## ԿԻՆ ԱՐՀԵՍՏԱՒՈՐՆԵՐ

1. Հացթուխ.— Բացառապէս հացթխութեամբ պարապող կանայք գաւառում շատ քիչ են, որովհետև իւրաքանչիւր տանտիկին գիտէ հունցել և թխել։ Երեք պատ հաց թխելուց յետոյ—մի ժամում նա ստանում է 3 հատ բաղ։

2. Բուրդ գզող } ստանում են 10 կոպ. օրավարձ։
3. Թել մանող }

4. Կապերտ գործող կինը մի կազ երկարութեան և երկու կազ լայնութեան կապերտը գործելուց յետոյ ստանում է 2 ր. 50 կ. —3 րուբլի։ Գործը տևում է մօտ մի ամիս։ Օրավարձ կապերտ գործողն ստանում է 10—20 կոպ.։ Պէտք է ասել, որ Շուշու գաւառում բաւական զարգացած է գորգագործութիւնը։ Թէև առանձին գործարաններ չկան, բայց շատ տներում գործում են գորգ, կապերտ, ձիու չուլ և այլն։

1895 *թուի գաւառի արհեստաւոր վարպետների, աշակերտների և բանուորների թիւը ցոյց է տալիս ներքև զետեղած աղիւսակը։*

| Արհեստաւորներ | Շուշի քաղաք | | | Շուշու գաւառ | | |
|---|---|---|---|---|---|---|
| | Վարպետ | Բանուոր | Աշակերտ | Վարպետ | Բանուոր | Աշակերտ |
| Հացթուխ | 13 | 9 | 3 | 6 | 4 | — |
| Կանդլիտեր | 4 | 3 | 5 | — | — | — |
| Մսագործ | 12 | 11 | — | 9 | — | — |
| Դերձակ | 80 | 29 | 62 | 12 | — | 7 |
| Կին դերձակ | 1 | 1 | — | — | — | — |
| Գլխարկ կարող | 24 | 4 | 20 | 3 | — | 1 |
| Կօշկակար և մաշկակար | 85 | 2 | 60 | 3 | — | 2 |
| Դարբին | 18 | — | 5 | 10 | — | — |
| Պողպատագործ | 15 | 5 | 9 | — | — | — |
| Պղնձագործ | 3 | 2 | 1 | — | — | — |
| Զինագործ | 1 | — | 1 | — | — | — |
| Վառարանագործ | 3 | 1 | — | — | — | — |
| Թիթեղագործ | 11 | 3 | 6 | — | — | — |
| Պայտառ | 12 | — | — | 9 | — | — |
| Դանակ սրող | 4 | — | 4 | — | — | — |
| Կլայեկող | 9 | — | 3 | 2 | 1 | 2 |
| Հիւսներ | 12 | 6 | 9 | 1 | — | 1 |
| Ատաղձագործ | 10 | 3 | 7 | 7 | — | — |
| Ապակեգործ | 3 | — | — | 1 | — | — |
| Կառք շինող | 1 | — | 1 | 1 | — | 1 |
| Քարտաշ | 13 | — | 6 | 8 | — | — |
| Ժամագործ | 4 | — | 4 | — | — | — |
| Սափրիչ | 34 | 8 | 29 | 2 | 2 | — |
| Ներկարար (պոյաճի) | 10 | 2 | 8 | — | — | — |
| Ներկարար | 2 | — | — | — | — | — |
| Կաշեգործ | 7 | — | 2 | — | — | — |
| Թամբագործ | 4 | — | 4 | — | — | — |
| Սառաճ | 16 | 8 | — | — | — | — |
| Թաղիքագործ | 4 | 1 | 2 | — | — | — |
| Անասնաբոյժ | 2 | — | — | 3 | — | — |
| Սափրիչ | 15 | — | 9 | 19 | — | 4 |
| Լուսանկարիչ | 2 | — | — | — | — | — |
| Տպարանատէր | 2 | — | 10 | — | — | — |
| Կառապան | — | — | — | 15 | — | — |
| Սայնագործ | 6 | 2 | 3 | — | — | — |
| Ընդամենը | 440 | 120 | 273 | 111 | 7 | 18 |

Հազար հոգու վրայ, քաղաքում գալիս է 22 արհեստաւոր, իսկ գաւառում 1,27։ Քաղաքում և գաւառում հազար հոգու վրայ գալիս է 8,6 արհեստաւոր։ Քաղաքում և գաւառում եղած արհեստաւորների թուի 17,75% կազմում են կօշկակարները, դերձակները 19,6%, սափրիչ 7,74%։ Յետոյ գալիս են գլխարկ կարողները, դարբինները, հիւսները, սառաճները, քարտաշները և այլն։

Այս աղիւսակն առանց թերութիւնների չէ։ Կան արհեստաւորներ, որոնց թիւը շատ պակաս է քան թէ այդ պիտի լինի, օր. քարտաշները, հիւսները և այլն։

---

## Գ) ԳՈՐԾԱՐԱՆԱԿԱՆ ԱՐԴԻՒՆԱԲԵՐՈՒԹԻՒՆ

Արդիւնաբերութեան այս տեսակը մեր գաւառում օրըստօրէ աճում, զարգանում է։ 1893 թուի տեղեկութիւնների համաձայն, Նահանգի գինու և օղու գործարանների $^{2}/_{3}$-ը զետեղուած է Շուշու գաւառում։ 1895 թուի պաշտօնական տեղեկութիւնների համաձայն, գաւառում այդ տարի եղել են հետևեալ գործարանները։

| Գործարանների տեսակը | Շուշի քաղաք | | | Շուշու գաւառ | | |
|---|---|---|---|---|---|---|
| | Գործարան-ների թիւը | Արդիւնա-բերութեան արժէքը Րուբլ | Բանւորնե-րի թիւը | Գործարան-ների թիւը | Արդիւնա-բերութեան արժէքը Րուբլ | Բանւորնե-րի թիւը |
| Մետաքս մանող | 1 | 14,000 | 80 | 12 | 210,000 | 720 |
| Մետաքս ոլորող | 1 | 13,000 | 90 | 4 | 87,500 | 310 |
| Գինու և օղու . | — | — | — | 7 | 360,000 | 500 |
| Կաշու. . . . . | 6 | 2,500 | 9 | — | — | — |
| Օճառի . . . . | 4 | 2,300 | 6 | — | — | — |
| Պոյաճու. . . . | 10 | 3,200 | 17 | — | — | — |
| Աղիւսի . . . . | 2 | 1,200 | 6 | — | — | — |
| Բոլորը. . | 24 | 36,200 | 209 | 23 | 657,500 | 1530 |

Ինչպէս տեսնում ենք, ըստ արդիւնաբերած արժողութեան գործարանների մէջ առաջին տեղը բռնում են մետաքսի, օղու և գինու գործարանները։ Ինչ վերաբերում է գինու և օղու գործարաններին, սրանցից եօթը կատարելագործուած են, իսկ մօտ 1000 տեղական ձեւի են։

Ըստ պաշտօնական տեղեկութիւնների՝ 95 թուին գաւառում եղել են 18 մետաքսի գործարաններ, իսկ այս տարի, մի ֆաբրիկանտի ասելով, ամբողջ գաւառում կայ 26 գործարան, որոնցից 16 մանարան և 10 մետաքս ոլորող։ Անկարելի է ենթադրել, որ մի տարուայ ընթացքում գործարաններն աւելացել են 8-ով։ Հաւանականաբար պաշտօնական տեղեկութիւնը անսխալ չէ...

1895 թուին պատրաստուած է 1100 փութ մետաքս և 280 փութ ֆրիզոն։

Մինչև 1883 թուականը գաւառում պատրաստուած թելն ուղարկւում էր Մարսէյլ, բայց այդ թուից յետոյ և մինչև այժմ մետաքսի թելն ուղարկւում է Մոսկուա, իսկ ֆրիզոնը Ֆրանսիա։

---

Բանուորները մետաքսի գործարաններում երկու սեռի են։ Դրանց մէջ փոքրահասակ երեխաները աւելի շատ են, որովհետև ֆաբրիկանտներին ձեռնտու է ունենալ շուտ սովորող և աննչան վարձ ստացող բանուորներ։ Մի քանի տարի առաջ՝ այժմեան աղջիկ բանուորների տեղը բռնում էին տղաներ, բայց ֆաբրիկանտները վերջիններին այլ ևս չեն պահում, որովհետև աղջիկները թէ մաքուր աշխատող են և թէ կարգերին անպայման հնազանդուող,—իրենց խօսքով—«լսող» են։

Բանուորների օրավարձը 7—40 կոպէկ է. մինիմալ վարձն ստանում են այն բանուոր երեխաները, որոնք հաւաքում են գործարանում թափուած որդերը և դուրս են հանում։

Բանուորական վարձերի աղիւսակ (գաւառի համար):

| Արհեստներ | Ամսավարձ բանուորներ | | | | | Օրավարձ բանուորներ | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Երկրագործ մշակ | Հօտաղ | Դարբինջի | Թութ թափող | Շալ բանող կին | Հնձող | Քաղհանող կին | Խաղող քաղող կին | Խաղող կրող տղամարդ | Խաղող կոխող | Մշակ, այգիներում աշխատող | Գործարանակ. բանուոր *) | Բուրդ գզող կին | Թել մանող կին | Կապերտ գործող կին |
| | Ռուբլի | | | | | Կոպէկ | | | | | | | | | |
| Minimum . | 7 | 1 | 5 | 6 | — | 45 | 15 | 10 | 30 | 40 | 30 | 7 | — | — | 10 |
| Maximum . | 10 | 4 | 8 | 7 | 6 | 90 | 20 | 20 | 40 | 60 | 50 | 40 | 10 | 10 | 20 |

*) Մետաքսի գործարաններում աշխատող բանուորները միայն։

Աշխատանքը մետաքսի գործարաններում սկսւում է առաւօտեան ժամը 6-ից և տեւում է մինչև 8-ը—ամառը, իսկ ձմեռը 6-ից մինչև 6-ը մանարան գործարաններում։ Ոլորող գործարաններում բանուորները թէ ձմեռ և թէ ամառ աշխատում են 6-ից մինչև երեկոյեան 8-ը։ Դադարը լինում է կէս օրին, որը տեւում է մօտ մի ժամ։ Ուրեմն աշխատանքը տեւում է 11—13 ժամ։ Չպէտք է մոռանալ, որ գործարաններում աշխատող բանուորների, մանաւանդ կին բանուորների, մեծ մասը կազմում են 8—12 տարեկան երեխաներ!

Բոլոր գործարաններում գաւառում և քաղաքում աշխատել են 1895 թուին 1739 բանուոր, որոնցից մեծ մասն ընկնում է մետաքսի, գինու և օղու գործարաններին, ուրեմն բանուորների մեծ մասը—գաւառումն են։

Պէտք է ասել, որ գործարանի շուրջը գտնուած գիւղերից էլ (մօտիկ, ի հարկէ) բանուորներ են գալիս։

Հազար հոգու վրայ քաղաքում և գաւառում գալիս են 11,9 գործարանական բանուոր, գաւառում միայն հազարի վրայ գալիս են 13.3, քաղաքում միայն—6.2։ Հազար հայ բնակչի վրայ միայն գաւառում գալիս են 23.4 գործարանական բանուոր։

---

## ԱՌԵՒՏՈՒՐԸ ԳԱՒԱՌՈՒՄ

Ժողովրդի աննշան մասը միայն պարապւում է առեւտրով։ Վերջինս ոչնչով չէ տարբերւում հասարակ մանրավաճառութիւնից։ Գիւղերում պատահում են խանութպաններ, որոնք՝ գիւղական ժողովրդի պահանջների համեմատ՝ պահում են զանազան տեսակի ապրանքներ։ Գիւղացիք իրենց հարկաւոր առարկաները գնում են նոյն-պէս քաղաքում և աւելի յաճախ՝ շուկաներից, որոնք երկու են ամբողջ գաւառում։ Այդ շուկաներում շաբթուայ որոշ օրերին վաճառ են հանում հացահատիկներ, կերպասներ, մրգեր և այլն, և անշուշտ մեծ փող է շրջում այդտեղ։

Գաւառը ներբերում են ցորեն և այլ հացահատիկներ, աղ, նաւթ, պտուղներ և այլն։ Հացահատիկները, բացի բրինձից, աղը, նաւթը և պտուղները վաճառւում են փողով, իսկ մնացած իրերը փոխանակւում են ցորենով, գարիով և կորեկով։ Օր. գիւղացին տալիս է երկու քաշ ցորեն և ստանում է մի քաշ բրինձ, կամ մի քաշ խաղողի համար տալիս է 2 քաշ գարի կամ 3 քաշ կորեկ։

Գաւառից քաղաք արտահանում են ցորեն, ալիւր, գարի, գինի, պտուղներ և այլն, իսկ տնայնագործական հիւսուածներից՝ գորգ և

*կապերտ։ Գորգերը գիւղերումն էլ վաճառում են գորգ հաւաքողները։ Հայ ժողովուրդը իւղի, պանրի և բրդի հարկաւոր քանակութիւնը ձեռք է բերում Թուրքերից։ Աւետարանոցում և նրա շրջակայ գիւղերում բնակիչները տալիս են սար չւող Թուրքերին ցորեն, գարի, որոշելով դրանց գինը և պայմանաւորւում նրանց հետ—ստանալ տուածի փոխարէն բուրդ, իւղ և պանիր, որոնք նոյնպէս կանխօրէն գնահատւում են։*

---

## ՔԱՂԱՔԻ ԲԻՒԴԺԷՆ

1895 *թուին քաղաքն ունեցել է եկամուտ* 39,296 *րուբլ* 82 *կոպէկ, ծախք՝* 33,956 *ր.* 90 *կ., դրամագլուխ՝* 33,887 *ր.* 44 *կոպ.։*

*Եկամուտը կազմում են* 14% *տուրքը քաղաքի անշարժ կայքերից և ռէալական դպրոցի պաշտպանութեան համար ստացուած* 7,500 *րուբլը։*

1885 *թուին քաղաքն ունեցել է մուտք* . . . . . 29,512 *ր.*
*Ծախք* . . . . . 25,316 »
*Դրամագլուխ* . . . . . 19,002 »
*Չվճարուած տուրքի փող* . . . . . 26,639 »

Ղ. Տէր-Ղազարեան



# ԼՈՒՍԱՒՈՐՈՒԹԻՒՆ

## Ա. ԴՊՐՈՑՆԵՐ

*Շուշի քաղաքում եւ Վարանդայում կան հետեւեալ դպրոցները.*

| | Հիմնարկութեան տարին | Դասարաններ | Ուսուցիչ | | ՍՈՎՈՐՈՂ | | | | | | | | | | Մուտք | Ելք |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | | Հոգեւորական | Աշխարհական | Հայ | Ռուս | Վրացի | Թուրք | Ազնուական | Հոգեւորական | Քաղաքացի | Գիւղացի | Ընդամենը | Ուսման վարձից ազատ | | |
| Հայոց Թեմական | 1843 | VI | 4 | 12 | 550 | — | — | — | 39 | 45 | 322 | 183 | 550 | 547 | 14843 | 14843 |
| Ռէալական. . . . | 1881 | VII | 7 | 16 | 252 | 12 | 5 | 47 | 121 | 8 | 136 | 51 | 316 | 161 | 35413 | 35413 |
| Քաղաքային . . . | 1875 | III | — | 9 | 131 | 4 | — | 36 | 44 | 7 | 21 | 29 | 171 | 354 | 10399 | 8326 |
| Թուրքերի դպրոց. | 1896 | I | — | 4 | — | — | — | 209 | 53 | 6 | 246 | 4 | 309 | — | 2510 | 2510 |
| Հինգ միդասեան տղայոց մասնաւոր ուսումնարան. | — | — | — | 5 | 276 | 2 | — | 13 | 7 | 9 | 275 | — | 291 | — | 10000 | 10000 |
| Բոլորը. . . | — | — | 11 | 46 | 1209 | 18 | 5 | 305 | 264 | 75 | 1070 | 267 | 1437 | 1062 | 73165 | 71092 |
| Օրիորդաց Մարիամեան արքունական ուսումնար. . | 1894 | IV | — | 10 | 137 | 12 | 1 | — | 30 | 8 | 212 | — | 250 | — | 4610 | 4610 |
| Ընդամենը . | — | — | 11 | 56 | 1346 | 30 | 6 | 405 | 294 | 83 | 1282 | 267 | 1687 | 1062 | 77775 | 75602 |
| Նոր-Թաղլար, Սարուշէն եւ Վարազաբուն գիւղերում եկ. ծխ. ուսումն. | 1890 | I | — | 3 | 267 | — | — | — | — | 5 | — | 262 | 267 | — | 1800 | 1800 |

*Այս աղիւսակից հետեւում է.*

*ա. Այժմեան դպրոցների մէջ ամենահինը Հայոց Հոգեւոր Թեմական դպրոցն է։*

*բ. Ամենից շատ աշակերտներ ուսանում են Հոգեւոր դպրանոցում։*

*գ. Արհեստաւոր, հոգեւորական և գիւղական դասակարգերի որդիները առաւելապէս սովորում են Հայոց Թեմական դպրանոցում, իսկ ազնուական դասակարգինը՝ ռէալականում։*

*դ. Ռէալական դպրոցը իւր ամէն մի աշակերտի համար ծախսում է* 112 *ր., քաղաքականը՝* 49 *ր., Հայոց Թեմականը՝* 27 *ր., ռուսաց օրիորդաց դպրոցը՝* 18 *ր., Թուրքերինը՝* 12 *րուբլի։*

*ե. Որովհետև սովորելու շրջանում գտնուողների թիւը յայտնի չէ, ուստի չի կարելի հաշուել, թէ սրանց ո՛ր տոկոսն է սովորում. միայն ընդունելով, որ մօտաւորապէս բնակչութեան* 20% *գտնւում է այդ հասակում, կարելի է ասել, որ հայերից* 52, *իսկ Թուրքերից* 22% *է սովորում։*

---

## Բ. ԳՐԱԴԱՐԱՆՆԵՐ

*Շուշում Հայոց Բարեգործական Ընկերութեան տեղական ճիւղը ունի գրադարան-ընթերցարան, որ հիմնուել է* 1889 *թուի մարտի* 10-*ին։ Ունի կանոնադրութիւն* 14 §§-*ից բաղկացած, որը օրինաւոր հաստատութեան է ենթարկուած Հ. Բ. Ընկ. Թիֆլիսի Խորհրդի կողմից։*

*Գրադարան-ընթերցարանից օգտուելու համար վճարում են. ունեւորները՝ տարեկան* 4 *րուբլի, ամսական* 50 *կոպ., օրական* 5 *կ., չունեւորները՝ տարեկան* 1 *ր.* 50 *կոպ., ամսական* 20 *կ., օրական* 2 *կոպէկ։ Գրքեր կամ ամսագրեր տուն տանելու համար գրաւական է պահանջւում։*

*Գրադարան-ընթերցարանը առաջին տարին ունեցել է ընդամէնը* 587 *կտոր գիրք։ Հետզհետէ աւելացնելով՝ այսօր գրադարանն ունի մօտ* 4000 *կտոր գիրք՝* 6000 *ռուբ. արժողութեամբ։ Ընթերցարանն էլ շարունակ ստանում է պարբերական հրատարակութիւններ՝ հայերէն և ռուսերէն լեզուներով։ Առաջին տարում ստացել է* 17 *պարբ. հրատարակութիւն, իսկ այժմ ստանում է* 30*։ Ունի կահկարասիք մօտ* 350 *ռուբ. արժողութեամբ։*

*Գրադարանը չունի ձեռագիրների բաժին։ Գրքերն էլ միայն հայերէն և ռուսերէն լեզուներով են։*

1889 թուի մարտի 10-ից մինչև 1896 թ. յունուարի 1-ը գրադարանից օգտուել են.

| | I տարի 1889 | II տարի 1890 | III տարի 1891 | IV տարի 1892 | V տարի 1893 | VI տարի 1894 | VII տարի 1895 | Ընդհանուր գումար |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Տարեկան անդամներ. | 9 | 1 | 4 | 3 | 5 | 6 | 9 | 37 |
| Ամսական » | 161 | 216 | 228 | 230 | 233 | 359 | 395 | 1822 |
| Օրական » | 270 | 423 | 323 | 306 | 246 | 327 | 344 | 2239 |
| Եօթ տարուայ ընթացքում օգտուել են . | — | — | — | — | — | — | — | *) 4098 |
| Գրքեր և ամսագրեր են տարուել կարդալու. . . . . . | 1834 | 2631 | 3353 | 4202 | 3506 | 5371 | 6723 | **) 27620 |

Եօթ տարուայ ընթացքում ունեցած անդամների թուի՝ 4098-ի վրայ եթէ աւելացնելու լինինք և ընկերութեան յաճախորդ անդամների թիւը, հաշուած միջին թուով տարեկան 50 հոգի, կ'ստանանք 4448 թուանշանը. հետևապէս և գրադարան-ընթերցարանից օգտուողների թիւը տարեկան եղել է, միջին թուով, մօտաւորապէս 635.

Գրադարան-ընթերցարանից օգտուողները բաժանւում են. ըստ ազգութեան՝ հայեր—85%, ռուսներ—8%, թուրքեր—4% և այլազգիներ 3%. ըստ դասակարգի՝ ուսումնաւորներ (ուսանողներ, աշակերտներ և աշակերտուհիներ)—55%, առևտրականներ—25%, աստիճանաւորներ—10%, ուսուցիչներ և վարժուհիներ 7%, արհեստաւորներ 3%.

Կանանց բացակայութիւնը նկատելի է. դրանց յաճախորդների թիւը մի չափ աննշան տոկոս է կազմում՝ այն է 2%...

Աւելի շատ կարդացուել են հետևեալ հեղինակների աշխատութիւնները, որոնց դնում ենք այստեղ ըստ առաւելութեան.

---

*) Այդ գումարի մէջ չեն մտնում ընկերութեան անդամները, որոնցից յաճախորդների թիւը տարեկան մօտաւորապէս 40—60 է հասնում.

**) Այդ գումարի մէջ չեն մտնում ընթերցարանում կարդացուած գրքերը և ամսագրերը.

*Հայերէն՝ Րաֆֆի, Պռօշեան, Աբովեան, Շիրվանզադէ, Ծերենց, Աղայեան, Շէքսպիր, Լօմէն-Սիր, Դիւմա, Ժիւլ-Վերն, Շիլլեր, Պարոնեան, Սունդուկեան, Խրիմեան, Մօլիէր, Շահազիզեան, Գամառ-Քաթիպա և Լէօ. Ռուսերէն՝* Тургеневъ, Толстой, Жюль-Вернъ, Гоголь, Лермонтовъ, Пушкинъ, Диккенсъ, Достоевскій, Шпильгагенъ, Гончаровъ, Гаршинъ, Зола, Островскій, Гюго, Додэ, Бѣлинскій, Байронъ, Мольеръ, Шекспиръ, Шиллеръ, Гёте, Сенкевичъ *և* Чеховъ.

*Առաջ բերելով հեղինակների անունները, տեսնում ենք, որ ընթերցողների շրջանը մեծ մասով բելլետրիստ հեղինակների գրքեր է կարդացել՝ միանգամայն անուշադիր առնելով գրականութեան և այլ ճիւղերին պատկանող գրքերը։ Վերջիններոյս հետաքրքրուողները մի չատ աննշան կոնտինգենտ են կազմում։*

*Ի դէպ, գրադարանը, կարելի է ասել, բաւական հարուստ է գիտական գրքերով։*

*Պարբերական հրատարակութիւններից (ամսագիրներից) առաւելապէս կարդացուել են՝ հայերէն՝ «Մուրճ», «Փորձ», «Արաքս», «Տարազ», «Հանդ. գրակ. և Պատմ.», ռուսերէն՝* „Вѣстникъ Европы“, „Артистъ“, „Сѣв. Вѣстникъ“, „Русская Мысль“, „Книжки Недѣли“, „Міръ Божій“, „Русское Богатство“.

*Եկամուտի կողմից գրադարան-ընթերցարանը այնքան էլ նախանձելի չէ։ Եօթ տարուայ ընթացքում մուտք է ունեցել ընդամէնը 1151 րուբլի 92 կոպ., մինչդեռ ծախք ունեցել է 6328 րուբ. 64 կոպէկ։ Դէֆիցիտը՝ այն է 5176 րուբ. 72 կոպ. ծածկուել է ընկերութեան վարչութեան ունեցած եկամուտի միւս աղբիւրներից,— անդամակցական վճարներից, նուէրներից, ներկայացումներից և այլն։*

*Բացի ընկերութեան գրադարան-ընթերցարանից, Շուշու կլուբը ևս ունի մի հարուստ գրադարան-ընթերցարան, որից նոյնպէս բաւական օգտւում են թէ հայերը, թէ ռուսները և թէ թուրքերը։*

*Ի նկատի պիտի առնենք նոյնպէս Հոգևոր թեմական և ռէալական դպրոցների գրադարանները, որոնցից օգտւում են նոյն դպրոցների աշակերտները, ուսուցիչները և մասամբ՝ կողմնակի անձինք։*

*Թումեան*

---

## Գ. ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

*Շուշի քաղաքում եւ գաւառում ստացւել են.*

| | Արձագանք | Մշակ | Մուրճ | Նոր-Դար | Տարազ | Բոլորը | Ռուսերէն | Ընդամէնը |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1894 Թուին. . | 25 | 58 | 7 | 82 | 16 | 188 | 412 | 600 |
| 1895 „ . . | 38 | 63 | 5 | 92 | 21 | 219 | 475 | 694 |
| 1896 „ . . | 33 | 59 | 6 | 66 | 18 | 149 | 523 | 672 |
| Ընդամէնը . | 96 | 180 | 18 | 240 | 55 | 536 | 1410 | 1966 |
| Միջին թուով . | 32 | 60 | 6 | 80 | 18 | 179 | 470 | 655 |

Այս աղիւսակից հետեւում է.

ա. Շուշում ամենից աւելի տարածուած է «Նոր-Դար»-ը, սակայն հետզհետէ պակասել է։

բ. «Նոր-Դար»-ից յետոյ աւելի տարածուած է «Մշակը», որ հետզհետէ աւելացել է։

գ. Ռուսաց թերթերը աւելի և աւելի տարածւում են, և մինչև անգամ աւելի քան հայկականը։

դ. Հազար հոգուց միայն 19 հոգի են թերթ ստանում։

## Դ. ԹԱՏՐՈՆ

Շուշում առաջին ներկայացումը տեղի է ունեցել դեռ վաթսունական թուականներին, երբ հայրենիք վերադարձած ուսանողները ոչ միայն տղամարդու, այլ և կանանց դեր են կատարել։ Այնուհետև թեմական դպրանոցի ուսուցչական խումբը և շրջիկ դերասանները ներկայացումներ են տուել թեմական դպրանոցի դահլիճում, որ բաւական ընդարձակ է։ Սակայն թատրոնը այստեղ կանոնաւորուել և իւր կրթիչ ազդեցութիւնը օր աւուր աւելացրել է, երբ 1891 թուին շինուել է պ. Ն. Խանդամիրեանցի թատրոնական շէնքը։

Սա թէև արտաքուստ և կամ ներքուստ ճարտարապետական և կամ գեղարուեստական մի առանձին նշանակութիւն չունի, սակայն իւր ընդարձակ դահլիճով, բաւական յարմարաւոր բեմով ու երկար ֆուայէնով, միանգամայն բաւականացուցիչ է Շուշուայ պէս մի գաւառական քաղաքի համար։ Ունի նաև բաւական դեկորացիաներ, մի բաւական ճաշակով նկարուած վարագոյր և այլն։

*Թատրոնի բացման օրից մինչեւ այժմ եղել են.*

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1891 թուին | 13 | ներկայացում, | 4030 | ր. մուտք |
| 92 » | 19 | » | 5100 | » » |
| 93 » | 20 | » | 5694 | » » |
| 94 » | 19 | » | 4824 | » » |
| 95 » | 24 | » | 7014 | » » |
| 96 » | 24 | » | 6700 | » » |
| Ընդամէնը . . | 119 | » | 33362 | ր. մուտք |
| Միջին թուով . | 20 | » | 5560 | » » |

Այսպէս ուրեմն՝ տարեկան միջին թուով տրւում են 20 ներկայացում, իւրաքանչիւր ներկայացման տոմսակ է վաճառւում 278 ր., որից դուրս գալով ծախսը, մօտաւորապէս 128 ր., զուտ արդիւնք մնում է 150 րուբլի։ Բոլոր տոմսակները ծախուած դէպքում մուտք է լինում 325—350 րուբլի։

## Ե. ՏՊԱՐԱՆՆԵՐ

Քաղաքումս կայ երկու տպարան. մինը Հայոց հոգեւոր տեսչութեան, որ բացուած է Բաղդասար միտրոպօլիտի ջանքով 1830-ական թուականներին։ Մամուլը բաւական փոքր է եւ բազմատեսակ տառեր չունի։ Այնքան անկանոն են պահւում գործերը, որ հակառակ մեր բոլոր ջանքին, չկարողացանք իմանալ թէ մինչեւ այժմ այդտեղ քանի գիրք են տպուած։

Միւսը Ա. Մահտեսի-Յակոբեանինն է։ Սա բացուած է 1877 թուի Նոյեմբերին. ունի բաւական լաւ մամուլ եւ նոր ձեւի տառեր։ Մինչեւ ներկայ թուականը տպուած է 83 գիրք, հետեւապէս և՛ տարեկան միջին թուով 4 գիրք, որ շատ քիչ է։

## Զ. ՈՃՐԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Հետեւեալ աղիւսակը ցոյց է տալիս թէ վեց տարուայ ընթացքում որքան ոճրագործութիւններ են կատարուել Շուշում.

| Թուին | Սպանութիւն | | Ինքնասպանութ. | | Պատահակ. մահ | |
|---|---|---|---|---|---|---|
| | Հայ | Թուրք | Հայ | Թուրք | Հայ | Թուրք |
| 1890 | 1 | 2 | 1 | — | — | 1 |
| 1891 | 1 | 3 | 1 | — | 2 | 2 |
| 1892 | 1 | 7 | 1 | — | 1 | 1 |
| 1893 | 1 | 3 | 1 | — | 2 | 2 |
| 1894 | 2 | 5 | 2 | — | — | 2 |
| 1895 | 1 | 4 | 1 | — | 2 | 4 |
| Ընդամէնը | 7 | 24 | 7 | — | 7 | 12 |

*Այս աղիւսակից հետեւում է.*

*Հայերի և Թուրքերի սպանութեան Թուերը յարաբերում են միմեանց, ինչպէս 1:3,5, մինչդեռ այդ երկու խմբերի Թուական յարաբերութիւնը համարեա հաւասար է 2:1.*

*Անձնասպանութիւնը բացառապէս հայերին է յատուկ, որ կուլտուրական աւելի բարձր կեանքի մի յատկանիշ է։*

*Միւս ոճրագործութիւնները, ինչպէս վիրաւորել, ծեծել և այլն նոյնպէս Թուրքերի մէջ են աւելի պատահում։*

*Հետեւեալ աղիւսակում բերուած է Շուշու և Ջիբրայիլի *) գաւառների այդ երկու ժողովուրդներից բանտարկուածների Թիւը։*

| Թիւ | Հայեր | | Թուրքեր | |
|---|---|---|---|---|
| | Ար. | Իգ. | Ար. | Իգ. |
| 1890 | 92 | 1 | 524 | 2 |
| 1891 | 68 | 3 | 651 | 12 |
| 1892 | 52 | 2 | 459 | — |
| 1893 | 98 | — | 696 | 5 |
| 1894 | 62 | 1 | 369 | 2 |
| 1895 | 56 | 3 | 423 | 3 |
| Ընդամէնը | 428 | 10 | 3122 | 24 |

„Кавказскій календарь"-*ի* 1896 *Թուի համաձայն այս երկու գաւառների հայերի ընդհանուր Թիւն է* 94,750, *Թուրքերինը՝* 91,916. *Այսպէս՝ մինչդեռ երկու ազգաբնակութիւններն էլ համարեա հաւասար են միմեանց, Թուրք ոճրագործների Թիւը համարեա* 7 *անգամ աւելի է հայ ոճրագործների Թուից **)։*



*) *Այդ գաւառում առանձին բանտ չկայ։*

**) *Այս տեղեկութիւնները ուրիշ մի քանի տեղեկութիւնների հետ միասին տուել է մեզ բժիշկ պ. Բահաթրեանը, որին խորին շնորհակալութիւն ենք յայտնում։*

## Է. ՓՈՍՏ

*Պէտք է ասել, որ արդէն քաղաքացիները մեծ կարիք են զգում փոխանակ շաբաթական երեք անգամի, ամենայն օր փոստ ունենալու և կանոնաւորուած ստանալու նամակների ցրումը, որ շատ անկանոն կերպով է կատարւում.—Ցրիչը մարդկանց, երեխաների, ծառաների մի ահագին խմբի հետեւողութեամբ հանդիսաւոր կերպով իջնում է փոստատնից դէպի Թոփխանան և մտնելով քաղաքային ժողովարանի բակը, բարձրանում է պատշգամբը, իսկ հետեւողները մնում են ներքևում։ Յետոյ բարձր ձայնով կարդում է բոլոր լրագիրների և հասարակ նամակների հասցէները և շպրտում որ կողմից որ «իմն» է հնչւում։ Այսպիսով՝ բացի այն որ շատ նամակներ կորչում են, այլ և բոլորը իմանում են, թէ ովքեր նամակներ ունին։*

*Հետեւեալ աղիւսակը ցոյց է տալիս փոստի գործունէութիւնը, որից հետեւողութիւններ հանելը թողնում ենք իրեն ընթերցողին։*

# Փ Ո Ս Տ

| | Փոստ | | Հասարակ նամակներ | | | Հասարակ կապոցներ (բանդերոլ) | Փաթ. լրագր. հրատար. (հատ) | Ապահովագրուած թղթակ. | Դրամական և արժէքաւոր ծրարներ | | Ծանրոցներ (ПОСЫЛКИ) | | | Վերադիր վճարով | | | Անցնող թղթակցութ. ընդհանուր արժէքը | Հեռագրեր | | | | | Մուտք | Ընդամենը | Ծախք |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | | Փակ | | | | | | | | Արժէքաւոր | | | Ուղարկուած ծանրոցների մէջ կային վերադիր վճարով | | | | | | | | | 1) Փոստից 2) Ներքին հաղորդակ. հեռագր. 3) Միջազգային հաղորդակ. հեռագր. | | |
| | Ուղարկուած | Ստացուած | Վճարուած | Անվճար (զինուոր.) | Բաց | | | | Քանակը | Արժէքը | Քանակը | Արժէքը | Անարժէք | Ծանրոց | Ուրիշ իրեր | Վերադիր վճարների ընդհ. գում. | | Ստացուած (ТАРИФНЫЯ) | Արքունական | Անվճար | Ընդամենը | Ստացուած հեռագրերի թիւը | | | |
| Տեղական 1890. . . | — | — | 53 | 36 | 2 | — | — | 5 | 8 | 856 | — | — | — | — | — | — | — | — | — | — | — | — | 1) 18399 | | |
| Տեղական 1895. . . | — | — | 65 | — | — | — | — | 16 | 102 | 6275 | — | — | — | *) | — | — | — | — | — | — | — | — | 20527 | | |
| **Կայսրութեան մէջ** | | | | | | | | | | | | | | | | | | | | | | | | | |
| Ուղարկուած 1890. . . | — | — | 59882 | 21318 | 1773 | 27 | — | 11861 | 5737 | 4114557 | 2148 | 89866 | 38 | — | — | — | — | 7926 | 565 | — | — | 99804 | 2) 7340 | | |
| Ուղարկուած 1895. . . | — | — | 125927 | 2476 | 3412 | 276 | — | 13361 | 7476 | 4420971 | 1700 | 35844 | — | 91 | 5 | 927 | 1,232,115 | 10204 | 986 | — | — | 112240 | 8162 | | |
| Ստացուած 1890. . . | 269 | 264 | 59586 | 21438 | 1791 | 4292 | 59893 | 11652 | 10430 | 1345058 | 3929 | 12652 | 696 | — | — | — | | 8863 | 256 | 2,871 | 21,208 | — | 3) — | 25,739 | 10,316 |
| Ստացուած 1895. . . | | | 70265 | 22076 | 6014 | 8227 | 68399 | 11335 | 12652 | 1377104 | 2868 | 91437 | 908 | 624 | 412 | 15162 | | 11482 | 331 | 13,544 | 37,640 | — | 927 | 29,616 | 11,060 |
| **Միջազգային** | | | | | | | | | | | | | | | | | | | | | | | | | |
| Ուղարկուած 1890. . . | — | — | 1216 | — | 29 | — | — | 367 | 21 | 1354 | 2 | 35 | — | — | — | — | — | 355 | 1 | — | — | 3293 | | | |
| Ուղարկուած 1895. . . | — | — | 2072 | — | 42 | 7 | — | 411 | 212 | 8225 | 3 | 14 | — | — | — | — | — | 522 | 4 | — | — | 5052 | | | |
| Ստացուած 1890. . . | — | — | 1861 | — | 63 | 317 | 12 | 335 | 4 | 311 | 3 | 63 | 1 | — | — | — | — | 369 | 6 | — | — | 3822 | | | |
| Ստացուած 1895. . . | — | — | 2682 | — | 116 | 1730 | — | 346 | 5 | 33753 | 4 | 2140 | — | — | — | — | — | 547 | 20 | — | — | 6162 | | | |

*) Չէր ընդունւում.

## Ը. ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹԻՒՆ

*Շուշին փոստային ճանապարհներով կապուած է Գորիսի և Անդրկովկասեան երկաթուղու Բագու-Թիֆլիսեան գծի Եւլախ կայարանի հետ։ Շաբաթական երեք անգամ օմնիբուս է գնում և գալիս Շուշից Եւլախ, անցնելով ճանապարհը մօտ 11 ժամուայ ընթացքում։*



ՎԱՐԱՆԴԵՑԻ ՀԱՅ ԳԵՂՋԿՈՒՀԻ

*Քաղաքում կան «Նադէժդա» և «Ռոսսիյսկոյէ» հաղորդակցութեան ընկերութիւնների գրասենեակները, որոնք կատարում են ապրանքների տեղափոխութիւնը։*

*Քաղաքի և գիւղերի, ինչպէս և միմեանց գիւղերի միջև չկան կանոնաւոր ճանապարհներ, և քիչ տեղեր են սայլեր բանում։ Սովորական գործածական կենդանիներն են՝ էշեր, ջորին և ձին։*



# ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲԱՐՔ

## Ա. ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ ԵՒ ՀԱՐՍԱՆԵԱՑ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ

### ՕՐՕՐՈՑԻ ՆՇԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ

Առաջները շատ յաճախ, իսկ այժմ շատ սակաւ է պատահում օրօրոցի նշանադրութիւն, որ տեղական բարբառով «օրօրոցախազ» է կոչւում։ Միմեանց համակրող գերդաստաններ և կամ մի ընտանիք ցանկանալով միմեանց և կամ մի հալալ-ծիծ ունեցող օջախի հետ կարելւոյն չափ շուտ բարեկամանալ, ուխտում են միմեանց տալ իրենց սպասելիք որդիները, եթէ նրանք տարբեր սեռի լինին և կամ, եթէ մինը արդէն արու զաւակ ունի, խոստանում է նշանադրել նրան միւսի սպասած աղջկայ հետ։ Շատ անգամ պատահում է, որ այս ցանկութիւնը ծագում է ծնողների մէջ, երբ տղան արդէն միքանի տարեկան, իսկ աղջիկը միքանի օրական է լինում։ Այս ժամանակ տղայի հայրը խազում է աղջկայ օրօրոցը և կամ եռագոյն մի թել կապում օրօրոցի լըծից և այսպիսով արդէն նշանադրում այդ երկու փոքրիկներին։

Երբեմն էլ պատահում է, որ փոքրիկ տղաները համակրանք են ցոյց տալիս դէպի փոքրիկ աղջիկները և սրանց հայրերը խոստանում են պսակել նրանց, երբ մեծանան։

Այս խոստումից յետոյ այդ փոքրիկները նշանուած են համարւում և տղան պարտաւորւում է իւր մրգից միշտ բաժին հանել իւր փոքրիկ նշանածին։

Անցեալներում և մասամբ այժմս էլ շատ հազիւ էր պատահում, որ փոքրիկ նշանածները հրաժարուէին իրենց ծնողների խոստումը կատարելուց։ Եւ մինչև անգամ եթէ ծնողներից մինը կամենար յետ կենալ իւր խոստումից, միւսը կարողացածին չափ կ'ստիպէր և կը նախատէր նրանց։

Երբ այդ փոքրիկ նշանած աղջիկը մեռնում էր, յաճախ պատահում էր, որ տղան նրա քրոջ հետ էր ամուսնանում, իսկ եթէ տղան էր մեռնում, սրա եղբայրն էր ամուսնանում աղջկայ հետ։

Շատ անգամ պատահել է, որ հիւանդութեան, ընտանիքի դժբախտութեան և այլ պատճառներով՝ այսպիսի նշանադրութիւնները լուծուել են։ Շատ անգամ էլ նշանուածները միմեանց անհամապատասխան լինելով՝ փոխադարձաբար թշուառացրել են միմեանց։

## ՇԱԼԱԿԻ ՆՇԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ

Երբ երիտասարդը սիրահարուած է և ուզում է խնդրել աղջկայ ձեռքը, բայց ամաչում է, լուռ ու մունջ և գաղթագողի «շալակ» է տանում։ Վերցնում է մի քթոց թարմ պտուղներ, խաղող, տանձ, խնձոր, խիար և կամ մի կապոց չոր միրգ և գիշերը տանում նշանածի դռանը կամ դրսում քնած տղամարդու գլխի վերևը դնում։ Միքանի անգամ այս կրկնելուց յետ՝ աղջկայ ազգականների մինի միջոցով յայտնում է, թէ շալակ տանողը ինքն է։ Եթէ աղջկայ ծնողները համաձայնում են իրենց աղջիկը տալու, շալակի քթոցի մէջ դնում են «խոնչա»—մի եփած հաւ, միքանի ձու, միքանի գաթայ և մի զոյգ գուլպայ— և ուղարկում տղին՝ հանդը, ուր նա բանելիս է լինում։ Այս լուռ ծիսակատարութիւնից յետոյ աղջիկն ու տղան նշանուած են համարւում։

## ԲԱՐԳԵՒԱՀ ԿԱՄ ԾԱՂԿԱՁԱՐԴԻՆ ՆՇԱՆԴՐՈՒԹԻՒՆ

Ծաղկազարդին եկեղեցում, նախապէս առնելով աղջկայ ծնողների համաձայնութիւնը, տղայի մայրը կամ մի մօտիկ

ազգական կին Ծաղկազարդի ծառի վրայ վառուող մոմերից վառելով մի խաչաձև մոմ, որի վրայ երբեմն մի արծաթէ մատանի է անցկացրած լինում, տանում և լռելեայն տալիս է իւր ուզած աղջկայ ձեռքը, և կամ նրան մօտեցնելով ծառին, ձգում է գլխին մի կարմիր չարղաթ։ Այնուհետև այդ աղջիկը նշանուած է համարւում։

## «ՕՃԱԽԻ ՊՍԱԿ»

Գրեթէ ամէն մի գիւղում կայ մի կամ երկու օճախ, որ սրբատեղի է համարւում. եկեղեցի չեղած գիւղում պըսակի խորհուրդը թոնրի և կամ այսպիսի օճախների վրայ է կատարւում։ Այսպէս մինչև 1882 թուականը Խերխան գիւղում պսակը Փարամազենց օճախի վրայ է կատարուել, որովհետև գիւղում եկեղեցի չի եղել։ Սխտորաշէնում, մինչև այժմս էլ պսակը Սահակ քեօխանց (տանուտէր) և Նըվերդունց օճախների վրայ են կատարում, որովհետև այժմս միայն սկսել են եկեղեցի շինել։ Բացի սրանից միշտ և բոլոր գիւղերում նորապսակները եկեղեցուց դուրս գալուց յետոյ անպատճառ բոլոր հանդիսականների ընկերակցութեամբ և դաւուլ զուռնի առաջնորդութեամբ գնում են այդ օճախները համբուրում և ապա գնում իրենց տուն։

Կիւրակի և տօն օրերն էլ շատ կանայք գնում ուխտ են անում այդ օճախների վրայ։ Սրանք սովորական «ղարադամի» օճախներից ոչնչով չեն տարբերւում, տնեցիները սովորական ձևով գործածում են այն և յետոյ մօտը մի մոմակալ և մի խնկաման դնում, որ ուխտաւորը կարողանայ իւր բերած մոմը վառել և խունկը ծխել։

Հաւաքածս տեղեկութիւններից երևաց, որ այս օճախները պատկանում են գիւղի հիմնադիրներին, և կամ գիւղի մէջ ահագին ազդեցութիւն ունեցող մարդկանց։

Յիշենք այս օճախներից մի քանիսը.

Ջանախչի գիւղում.—Մելիք Շահնազարենց օճախը. յայտնի է, որ Մելիք Շահնազարը գիւղի տէրն է եղել։

Գ. Ծարտար գիւղում, Խոճանց և Միրզաբէկանց և Տողցունց (Տող գիւղից գաղթածների) օճախները։

Հիրհերում Զալունց օճախը։ Ասում էին թէ Զալին է հիմնել այս գիւղը և նրա տոհմից են միքանի սերունդ շարունակ տանուտէրներ եղել։

Ծովատեղ գիւղում—Բղերանց օճախը։ Սա գիւղի մելիք՝ Մելիք Փարսադանեաններից է։

Սարուշէնում—Քեօխանց օճախը (Միրզաբէկեան Ղահրամանի)։

## «ԹՈՆՐԻ ՊՍԱԿ»

Սրանից մի 10—20 տարի առաջ դեռ ևս գործադրւում էր թոնրի պսակը. սա գլխաւորապէս տեղի էր ունենում 1) երբ գիւղում եկեղեցի չէր լինում, 2) երբ եկեղեցում ննջեցեալ էր լինում, *) 3) երբ ամուսնացողները այրիներ էին **) 4) երբ չհասութիւն կար և 5) երբ հարսնացուն բարոյական կեանք չէր ունեցել։

Ժողովուրդը սուրբ է համարում թոնիրը։ Գրեթէ բոլոր գիւղերում թոնիր շինելիս կանչում են քահանային, որ օրհնում է թոնիրը և միքանի տեղ մեռոն քսում։

Թոնրի պսակին թոնրի վրայ շուրջանակի մոմեր են վառում։ Հարս ու թագուոր գալիս երեք անգամ պտտում են թոնրի շուրջը և կանգնում նրա արևմտեան կողմը, երեսները դէպի արևելք դարձրած։ Ապա չոքում և երեք անգամ համբուրում են թոնիրը։ Այնուհետև քահանան կատարում է

*) Նօշի գիւղում մէկին պսակել են թոնրի վրայ, որովհետև եկեղեցում ննջեցեալ է եղել, յետոյ ծնողները դժգոհ լինելով՝ կրկին նոյն օրը եկեղեցի են տարել և նորից պսակի ծէսը կատարել տուել։ Երեք տարուց յետոյ այդ երիտասարդը մեռել է։ Նրա վաղահաս մահի պատճառը պսակի միջոցին եկեղեցում եղած ննջեցեալը համարելով, յուսահատութեան մէջ են ընկել և թաղել երիտասարդին իւր հարսանեաց շորերով։ Միքանի օրից էլ նրա կինն է անձնասպանութիւն գործել և հարսանեկան շորերով թաղուել։

**) Դունավարզ գիւղում Մարտիրոս անունով մի այրի կոյր մարդ թոնրի վրայ պսակուելիս ընկել է թոնիրը։

պսակադրութիւնը և նորապսակները կրկին համբուրելով թոնիրը վերադառնում են, շատ անգամ մինչև թոնրատնից դուրս գալը յետ յետ գնալով՝ որպէս զի մէջքերը չդարձնեն դէպի թոնիրը, մեղք համարելով այդ։ *)

## ԱՌԵՒԱՆԳՄԱՄԲ ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

Դեռ մինչև այսօր էլ յաճախ պատահում է, երբ մի երիտասարդի մերժում են տալ իւր սիրած աղջիկը, որի պատճառը սովորաբար երիտասարդի ստոր դերդաստանից, կամ աղքատ լինելն է լինում, վերջինս հաւաքելով իւր միքանի մտերիմ ընկերները՝ փախցնում է աղջկան։ Շատ անգամ առնելով աղջկայ համաձայնութիւնը և ժամադիր լինելով նրա հետ, երիտասարդը ձիու գաւակն է առնում աղջկան, որը իւր հետ առած է լինում իւր բոլոր զարդերը, և փախչում։ Եթէ աղջկայ ծնողները շուտ են իմանում այս, իսկոյն միքանի ձիաւորներ հետևում են նրանց և եթէ հասնում են, տեղի է ունենում մի կատաղի կռիւ, որի ընթացքում երբեմըն մարդիկ էլ են սպանւում։ Եթէ չեն կարողանում աղջիկը յետ խլել, տղան տանում է նրան մի ուրիշ գիւղ իւր մի բարեկամի տուն։ Անմիջապէս աղջկայ հայրը յայտնում է մարմնաւոր և հոգևոր իշխանութիւններին, որոնք աղջկան կանչում հարցաքննում են։ Եթէ աղջիկը խոստովանում է, որ իւր ազատ կամքով է փախել երիտասարդի հետ, նրանց թոյլ են տալիս պսակուելու, իսկ եթէ ոչ, բաժանում են նրանց, աղջկան վերադարձնում հօրը, իսկ տղին պատժում պետական օրէնքներով։

Երբեմն պատահում է, որ երիտասարդը փախցնում է աղջկան, առանց նրա համաձայնութիւնը առնելու. այսպիսի դէպքերում հազիւ է պատահում, որ աղջիկը չը զիջէր երիտասարդի և նրա բարեկամների աղաչանքներին՝ յայտնելու թէ իւր կամքովն է փախել։ Փախցրած և վերադարձուած աղջիկը հասարակութեան մէջ յարգանք․ վայելելով՝ թշուառ

*) Թոնրի վրայ կնունք ևս կատարում են, տես Տղաբերք։

աղջիկները նոյն իսկ ակամայից համաձայնում են ամուսնանալու փախցնողի հետ։

## ԳՆՄԱՄԲ ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

Գնմամբ ամուսնութիւնը դեռ ևս գոյութիւն ունի Վարանդայում, որ երևում է «Հրղէ կտրել» ձևսի մէջ։ Այստեղ աղջկայ և տղի հայրերն ու բարեկամները երկար սակարկելուց յետոյ որոշում են, թէ տղի հայրը որքան փող պիտի տայ աղջկայ հօրը՝ աղջիկը տանելու համար։ Այս գումարը տատանւում է 20—100 ր. միջև։ Եւ մինչև որ այդ փողը չյանձնուի աղջկայ հօրը, որ սովորաբար այդ օրն է տեղի ունենում, պսակը չի կարող կայանալ։

## ԼԵՎԻՐԱ

Այս սովորութիւնը մասամբ կայ Վարանդայում, միայն փոքր ինչ ձևափոխուած։ Եթէ մինը նշանուած ժամանակ մեռնում է, նրա եղբայրն է շատ անգամ ամուսնանում նրա հարսնացուի հետ։ Եւ եթէ հարսնացուն է մեռնում, փեսացուն է ամուսնանում սրա կրտսեր քրոջ հետ։ Դէպքերը բազմաթիւ են. օր. Գիշի գիւղի քահանան ամուսնացրել է իւր կրտսեր որդուն իւր մեռած որդու հարսնացուի հետ։

## ԾԱԽՍԸ

Սովորաբար աղջկայ կողմից շատ քիչ ծախս է լինում, իսկ տղի կողմից մօտաւորապէս լինում են հետևեալ անհրաժեշտ ծախսերը.

*Նշանդրէքին*

| | |
|---|---|
| Մի ոչխար . . . . . . . | 3— 5 ր. |
| Մի մատանի . . . . . . | 3— 5 ր. |
| Օղի և գինի . . . . . . | 3— 8 ր. |
| Մանր ծախսերը . . . | 10—15 ր. |

Ընդամէնը՝ 19—33.

«Խոնչա»-ի և այլ մանր ծախսեր մինչև հարսանիքը . 10 — 15 ր.

Հարսանիքին

| | |
|---|---|
| Մի ոչխար կամ մի եզ . . | 3 — 15 ր. |
| Գինի և օղի . . . . . . . | 15 — 40 ր. |
| Հարսի զգեստը . . . . . . | 30 — 60 ր. |
| Հարսի գլխի արծաթ կամ ոսկի փողը . . . . . . . . | 8 — 72 ր. |
| Քահանային . . . . . . . | 3 — 5 ր. |
| Աթոռահաս . . . . . . . . | 5 — 7 ր. |
| Եկեղեցուն . . . . . . . . | 1 — 2 ր. |
| Հարսնեղբօրը . . . . . . . | 1 — 3 ր. |
| Բրինձ, շաքար, թէյ . . . | 5 — 10 ր. |
| Դաւուլ-զուռնին և մանր ծախսեր . . . . . . . . . | 15 — 20 ր. |
| Ընդամէնը՝ | 86 — 214 ր. |

## ԱՂՋԻԿ ՈՒԶԵԼ

Հարսնացուի ընտրութեան խնդրում երիտասարդը շատ փոքր ձայն ունի. այդ առաւելապէս պատկանում է մօրը և հօրը։ Շատ հազիւ է պատահում, որ մի երիտասարդ ամուսնանայ իւր ծնողների չուզած աղջկայ հետ, մինչդեռ աղջիկները աւելի յաճախ փախչում են իրենց սիրելիների հետ, եթէ իրենց ծնողները հակառակ են լինում իրենց միութեան։ Սրա պատճառն այն է, որ երիտասարդները առանձին, ինքնուրոյն կեանք չունենալով և տնտեսապէս կախուած լինելով հօրից, չեն վստահանում նրա կամքին հակառակ գնալու։ Աղջիկը առնել փախցնելուց յետոյ, նրանք հազիւ կարողանում են մի ամիս անցկացնել այս կամ այն բարեկամի տանը, այնուհետև կամայ ակամայ ստիպուած են վերադառնալ իրենց տուն, որովհետև սեպհական հող, դրամագլուխ չունեն և բանուորական կեանքն էլ, մանաւանդ ձմեռը, գոյութիւն չունի Վարանդայում։

Այսպէս ուրեմն՝ երբ ծնողներն ընտրում են մի աղջիկ, առաւելապէս նրա ընտանիքի և մանաւանդ մօր բարոյական յատկութիւնները նկատի առնելով, մի կնոջ ուղարկում են աղջկայ մօր մօտ խնամախօսութեան։ Այս կինը գովելով երիտասարդի ընտանիքը, օճախը, և երիտասարդի աշխատութիւնն ու կտրիչութիւնը—«կտրիել (կատարեալ), ռաշիտ (քաջ) տղայ ա»—առաջարկում է տալ իւր աղջիկը նրան։

Աղջկայ մայրը ժամանակ է խնդրում ամուսնու և մանաւանդ իւր եղբօր հետ խորհրդակցելու, միանգամայն խոստանալով աշխատել յաջողացնելու։

Միքանի օրից աղջկայ մայրը յայտնում է իւր համաձայնութիւնը և կամ մերժում։ Համաձայնած դէպքում ամուսնացող երիտասարդը իւր եղբօր կնոջ հետ, առնելով մի հասարակ, 20—60 կոպէկանոց մատանի, գնում է աղջկայ տունը։ Փոքր ինչ խօսակցութիւնից յետոյ աղջիկը, իւր երեսը քողով ծածկած, թէյ է բերում։ Երիտասարդի հետ եկած կինը աշխատում է բանալ աղջկայ երեսը և տեսնել նրա գեղեցկութիւնը. ապա համբուրում է ճակատից և բերած մատանին դնում մատը։ Այս ծէսը տեղական բարբառով «բէհ (առհաւատչեայ) տանել» է կոչւում։ Ցետոյ ընթրիք են տալիս ու մի մի զոյգ գուլպայ նուիրում փեսացուին ու կնոջը, որոնք որոշելով նշանադրութեան օրը՝ վերադառնում են տուն։

Նշանադրութիւնը գլխաւորապէս տեղի է ունենում մեծ պասին, իսկ հարսանիքը Նաւասարդից մինչև մեծ պաս և առաւելապէս Բարեկենդանին։ Հարսանիքի պատրաստութիւնը սկսւում է չորեքշաբթի տղայի, իսկ հինգշաբթի՝ աղջկայ տանը։ Հարսանիքը իսկապէս տևում է եօթը օր, չորեքշաբթի օրից մինչև երեքշաբթի, միայն բուն հարսանիքը կատարւում է երեք օրուայ ընթացքում, ուրբաթ, շաբաթ և կիրակի։ Այս օրերն անելու գլխաւոր պատճառն այն է, որ նախ ուրբաթ օրը պասուայ կերակրներ մատուցանելով, աւելի քիչ կը ծախսեն և երկրորդ՝ «կանչը» կ՚ընկնի կիրակի օրը, երբ գիւղացիները բոլորովին ազատ լինելով՝ աւելի մեծ թւով կը հաւաքուին։

## ՆՇԱՆԴՐԷՔ

Որոշուած օրը առաւօտեան փեսացուի տնից ուղարկում են աղջկայ տունը մի ոչխար (եթէ միայն հարուստ են), ճակատը սպիտակ և կարմիր ներկած, պոզերից և վզից խնձորներ և ընկոյզի շարուկ ձգած. մի շիշ օղի, մի թունգի գինի, մրգեղէն և շաքարեղէններ։ Սրանք տանողը ստանում է 40—80 կոպէկ նուէր և հիւրասիրւում։

Երեկոյեան թէ տղի և թէ աղջկայ ծնողները հրաւիրում են իրենց տղամարդ բարեկամները։ Տղի տանը հրաւիրւում է նախ քահանան, քաւորը և տանուտէրը։ Մի մի բաժակ օղի խմելուց յետոյ, առաջ են բերում մի խնձոր, մէջը արծաթեայ կամ ոսկէ մատանի և տան կանանց կողմից միքանի աբասի խրած։ Քահանան առնում է խնձորը, շնորհաւորում, մի աբասի էլ ինքը մէջը խրում և տալիս իւր մօտ նստողին։ Սա ևս մի աբասի է խրում, նոյն կերպ շնորհաւորելով։ Երբ խնձորը պտոյտ գործելով աբասիներով լցւում է, դնում են մի չարղաթի մէջ, երկու զոյգ կանաչ կարմիր քօշերի հետ, որոնցից մի զոյգը հարսնացուի, իսկ միւսը նրա մօր համար է լինում, և կապւում։

Այս ժամանակ աղջկայ տանից մի տղայ է գալիս և հրաւիրում սրանց բոլորին աղջկայ տունը։ Անմիջապէս բոլորը վեր են կենում, ծերունիները վերադառնում են իրենց տուն, իսկ միւսները գնում են աղջկայ տունը։ Փեսացուն չի գնում հարսնացուի տունը, սակայն այժմ միքանի գիւղերում սկսել են նրան ևս տանել։ Երբ հասնում են հարսնացուի տանը, տնեցիները ընդառաջ են գալիս և սիրով ընդունում։

«Ձեր վոննը գալուքը բարի ինի», ասում է հարսնացուի մայրը փեսացուի մօրը, «ուրախ բարեկամ ընինք»։

—Դէհ մըտալ էնք էս օճախէն մին հափուռ վէղ եօր օնինք, պատասխանում է փեսացուի մայրը, Աստուած տայ անփոշմնելի *սովտա* (առևտուր) ինի։ Մեր ջհալների կապն էլ էրկան ինի։

Յետոյ մտնում են ղարադամը և նստում օճախի շուրջը։ Անմիջապէս թէյ են մատուցանում և յետոյ հաց փռում։ Այս ժամանակ տղայի հայրը դառնում է քահանային և ասում. «Աղէր, կարգի, պատրաստի ըլլիս, բէ մեր հարսնացուն մի ուրախանանք, գիտումըմ որ մեր խնամին կարմիր գինի շատ օնէ, կ'օտինք, կը խմինք քէֆ կ'անինք»։

Իսկոյն մի կնոջ առաջնորդութեամբ հարսնացուն, երեսը մինչև գօտին չարղաթով ծածկած, գալիս է և կանգնում քահանայի մօտ։ Այս ժամանակ մի սկուտեղի մէջ մրգեղէն, միքանի մոմ, միքանի խնձոր, և նշնի մատանին դրած մօտեցնում են քահանային։ Քահանան օրհնում է այս և վերցնում մատանին տալիս փեսացուին։ Սա էլ անցկացնում է այն հարսնացուի մատանեմատը։ Այս միջոցին ման են ածում սկուտեղը և հիւրերը շնորհաւորելով ու բարեմաղթութիւններ անելով մի մի բաժակ գինի կամ օղի են խմում, շաքարեղէնից ուտում և մի մի արծաթեայ քսան կամ տասն-ևհինգ կոպէկանոց խրում խնձորի մէջ։ Այս փողերը, որ տեղական բարբառով «հարսնացուին տուած թաս»-են կոչւում, պատկանում են հարսնացուին, և մօտաւորապէս 3—8 ռուբլու է հասնում, որից տալիս են քահանային 50 կոպ. մի ռուբլի, և 30—50 կ. հարսը առաջ բերող կնոջը։

Սրանից յետոյ սկսում են հաց ուտել։ Մատուցանում են խորոված, խաշու (մսով եփած ջրալի կերակուր) և ճէաշ (փլաւ), եփած հաւը վերան։

Մինչև առաւօտ քէֆ են անում, ուտում, խմում, պարում, շատ անգամ էլ կռւում և լուսաբացին ցրւում տըները։

Միւս օրը աղջկայ տնից ուղարկում են տղի տունը՝ մի շիշ օղի, մի թունգի գինի, մի եփած հաւ, 3—5 զոյգ էլ լաւ գուլպայ։

Այն դէպքերում, երբ փեսացուն նշանդրէքի երեկոյին աղջկայ տունը չի գնում, աղջկան էլ առաջ չեն բերում, այլ աղջկայ մայրը տանում ձգում է նրա գլխին օրհնած չարղաթը և մատանին անցկացնում մատը։

Պատահում էլ է, որ երիտասարդը գիւղից անգամ բացակայ է լինում, և ծնողները մինչև անգամ առանց նրան հարցնելու՝ նշանում են նրան իրենց ընտրած աղջկայ հետ։ Երբեմն էլ երիտասարդի բացակայութեան ժամանակ նրա գըտակը—փափախն—են տանում և նրա հետ նշանդրում։

Աւելորդ է ասել, որ քահանաներն անգամ մի առանձին նշանակութիւն չտալով նշանուողների փոխադարձ համաձայնութեան, չեն էլ հարցնում, թէ նրանք համաձա՞յն են։

Նշանադրութեան երկրորդ օրը փեսացուն հօր կարգադրութեամբ պատրաստութիւն է տեսնում գնալ հարսնացուին տեսնելու· Առնում է մի փոքրիկ հայելի, մի փոքրիկ դանակ, մի մատնոց, մի ասղաման և մի քանի ֆունտ մըրգեղէն (չամիչ և տկողին)։ Մայրը կապում է այս բոլորը մի թաշկինակում։ Գիշերը ուշ, երբ բոլորը քնած են լինում, երիտասարդը վերցնում է այդ թաշկինակը և զգուշութեամբ գնում աներանց տուն։ Եթէ փողոցում նրան տեսնեն, կը բռնեն և կը թակեն, մինչև որ նրանից մի ընծայ չստանան։ Այսպէս գաղտնագողի նա հասնում է իւր հարսնացուի տունը և կամացուկ մի փոքրիկ քար ձգում հերթիկից — այս նրա այցետոմսն է, որ ուղարկում է զոնքանչին։ Երբ այս միջոցը չէ օգնում, նա մի հարևան կին է ուղարկում իմացնելու։ Վերջապէս զոնքանչը կամացուկ բաց է անում դուռը և ընդունում փեսացուին։ Այս ժամանակ բոլորը, եթէ ոչ քնած, գոնէ այդպէս են ձևացնում։ Անմիջապէս մի հաւ են մորթում և փլաւ պատրաստում։ Փեսան նստում է միայնակ ընթրելու. զոնքանչն էլ մի քիչ յետոյ նստում է մօտը և սկսում գովել իւր աղջկան։ Տղան աչքերը գետին ձգած պատասխանում է այս գովասանքներին. «Դէ վէր իմ ապէր հաւան ա կացալ, ես հի՞նչ ըմ ըսըլական, ես լ՚ա հաւան էմ հաւան»։

Յետոյ մայրը գնում բերում է աղջիկը։ Տղան կամ մի մատանի է դնում մատը և կամ մի ըուբլի փող նուիրում։ Մի քիչ յետոյ մի զոյգ գուլպայ նուէր է ստանում և վերադառնում տուն։ Միւս օրը տղի մայրը հարցնում է տղին,

թէ հաւանե՞ց աղջկան, սա էլ կարմրելով պատասխանում է. «Դէ ես տեսէ ոչ իրան, ամա մարը շատ թարիփ ըրաւ, դէ որ դու, ապէրը հաւանըք կացալ, օգալ ըք՝ հե՞նչ բիգի ասիմ»։

Նշանադրութիւնից յետոյ տղի բարեկամները գնում շնորհաւորում են աղջկայ ծնողներին և մի մի ընծայ տալիս հարսնացուին, որ բաղկացած է լինում մատանիներից, ապամանից, հայելուց, սապոնից և այլն։ Տնեցիները նրանց լաւ հիւրասիրում և մի մի զոյգ գուլպայ նուէր են տալիս։

Պատահում է, որ միքանի հոգի միասին են գնում։ Այս դէպքերում մի բաժակի մէջ գինի են ածում և «Աստուած շնհաւոր անէ» ասելով միմեանց տալիս ու մի մի քսան կոպէկանոց ձգում մէջը։ Յետոյ այս բաժակը ուղարկում են հարսնացուին, որ թափում է գինին, վերցնում դրամները, նորից գինի ածում և բաժակի վրայ մի խնձոր դրած վերադարձնում։ Այսպիսով նա յայտնում է իւր շնորհակալութիւնը։

## ԽՈՆՉԱ ՏԱՆԵԼ

Նշանադրութիւնից մինչև պսակը տևում է 3 ամսից մինչև մի տարի։ Լինում են դէպքեր, որ մինչև 7 տարի էլ է տևում, երբ փեսացուն բացակայ է լինում։ Այս երկար միջոցում աղջկայ և տղի տնեցիները շարունակում են միմեանց հետ երթ ու գալ ունենալ՝ և նշանաւոր տօներին (ազիզ օրերին) միմեանց ընծաներ ուղարկել, որ տեղական բարբառով «խոնչա» է կոչւում։ Երիտասարդը թէև մի մի անգամ տեսնում է հարսնացուին, սակայն երբէք միմեանց հետ չեն համարձակւում խօսելու։

«Խոնչա» ուղարկւում է տղի տնից աղջկայ տունը առաւելապէս՝ Զատկին, Ջրօրհնէքին, Բարեկենդանին, Վարդավառին և Նաւասարդին։ Սրանցից ամենանշանաւորը զատկինն է, որ «ախար» էլ է կոչւում։ «Խոնչան» տանում է տղի տնից մի աղջիկ կամ հարս, լաւ հիւրասիրւում, և ստանալով մի զոյգ գուլպայ նոյն օրը վերադառնում է։

Աղջկայ տնից ևս «խոնչան» ստանալուց յետոյ նրա փոխարէն նուէրներ է ուղարկում։ Եւ ամէն անգամ ստացուած գաթաներից մէկը մի լաւաշի մէջ փաթաթած վերադարձնում է։

Ահա նշանաւոր խոնչաները և նրանց պարձուածքները.

Ա. Ծաղկազարդին փեսացուի տնից ուղարկում է հարսնացուին հինա, որպէսզի նա իւր ընկերուհիների հետ այդ գիշերը ձեռքերը հինա դնի։ Ծամասացութեան ժամանակ էլ փեսացուի մայրը և կամ մի ազգական կին բերում եկեղեցում մի չարղաթ (քող) է ձգում հարսնացուի գլխին։

Բ. Զատկին փեսացուի մայրը անձամբ է տանում «խոնչան», որ բաղկանում է հետևեալից. 20—100 հատ ներկած հաւկիթ, որոնցից միքանիսը գեղեցիկ կերպով նշխուած են լինում, մի շալ ալլուխ, մի թունգի գինի, մի շիշ օղի և մրգեղէն (ընդամէնը 4 ր. արժողութեամբ)։ Նաև հինգ զոյգ գաթայ և մի խաշած անդէմնը (ոչխարի բուդ)։

Փեսացուի մօրը մեծ պատուով ընդունում, 3—5 պահում, շարունակ ուրիշ բարեկամներ էլ հրաւիրում, որպէսզի նա ուրախ ժամանակ անցկացնի, և երբ վերադառնում է, նուիրում են նրան մի շալ արխալուղացու (մօտ 5—8 ր. արժողութեամբ) կամ մետաքսէ մի շապկացու, (4—8 ր. արժողութեամբ)։ Բացի սրանից տալիս են նաև միքանի զոյգ գուլպայ, մի ներկած հաւկիթ, գինի, օղի և այլն։

Գ. Վարդավառին տղի տնից մի աղջկայ կամ մի հարսի ձեռքով ուղարկում է աղջկայ տունը մի չարղաթ, կամ մի զոյգ չմոշկ (1—3 ր. արժ.) և մրգեր։ Սրան իբրև դարձուածք նոյն և կամ հետևեալ օրը դարձեալ մի աղջկայ կամ հարսի ձեռքով աղջկայ տնից ուղարկում է տղի տունը 5—8 զոյգ գուլպայ, միքանի գաթայ, մի աման սեր, մի աման ձուաձեղ և մրգեղէն։

Դ). Նաւասարդին տղի տնից ուղարկում են աղջկայ տունը. մի շալ ալլուխ (1 ր.). մի թունգի գինի, մի շիշ օղի, մեխակ և մրգեղէն (ընդամէնը՝ 2 ր. 50 կ. արժ.), միքանի զոյգ էլ գաթայ։ Մեխակը ուղարկում է, որ հարսնացուն և

իւր ընկերուհիները իրենց համար «վզնոցներ»—մանեակներ—շինեն։

Փեսացուն ևս ամէն անգամ իւր նշանածի տունը գընալիս, նրա համար ընծաներ—շալակ—է տանում, որ գըլխաւորապէս մրգեղէններից ու պտուղներից է բաղկանում։ Բացի սրանից նա պարտաւոր է ամէն կերպ ծառայել աներոջը, օրինակ օգնել նրան տուն շինելիս, փայտ կրել անտառից, աշխատել նրա այգում, օգնել դաշտային պարապմունքների մէջ և այլն։

## ՀԸՂՆ ԿՏՐԵԼ

Հարսանիքից մի ամիս կամ միքանի շաբաթ առաջ տըղի հայրը, կնքահօր և միքանի ուրիշ բարեկամների հետ գնում է աղջկայ տունը, տանելով իւր հետ մի թունգի գինի, մի շիշ օղի, միքանի զոյգ գաթայ։ Աղջկայ հայրը անմիջապէս կանչում է իւր եղբօրը, մեծ փեսին և մի ուրիշ մարդու։ Լինում են և՛ քահանան ու տանուտէրը։ Մի կարճ խօսակցութիւնից յետոյ քահանան, և կամ, ինչպէս շատ անգամ, տղի բարեկամներից մին ասում է.

«Դէ խնամէ, մունք եկալ ընք հըղէ կտրելի, ըսէցէք տեսնանք հինչ էք օզում մըզանայ»։

Խնամին պատասխանում է.

«Ես ոչինչ օզմ չըմ ծըզանայ. եկալ ըք շատ լաւ ըք ըրալ, կերէք, խմեցէք, քէփ ըրէք. հիբը էլ ուզիս ըք, եկէք ձեր հարթնը եր կալիք տարիք»։

Այս ժամանակ մեծ փեսան յանդիմանում է նրան՝ ասելով. «Ապէր, էրկու իրեսանէ մէ կենալ, հինչ որ ինձանայ իք կալալ՝ էն էլ ընտրանայ պիտի ինք օնիս, ես 40 մանէթ նաղդ փուլ ըմ տըվալ, մին մսացուկ ըմ տվալ, 7 խալաթ ըմ տըվալ, դըրանք էլ պիտի տայ»։

Աղջկայ հայրը իբր ստիպուած՝ դառնում է տղի հօրը. «Խնամէ, տեսնումըս, ես զատ չըմ օզում, համա փեսաս ինջիմիշա ընում, դէ, դու ըս գիւտիւմ, հինչ օզըմ ըս, տօ ըլի։

Տղի հայրը պատասխանում է.

«Քէ մատաղ, իմ անըմըս ու գեօրայ հունց վէր սըգական ա, հունց վէր խալխէն մհար ատալթ ա, ես էլ տըլական ըմ»։

Այսպէս շարունակւում է խօսակցութիւնը մինչև որ երկար շողոքորթութիւնից ու սակարկութիւնից յետոյ, որ երբեմն միքանի օր էլ է տևում, որոշւում է, որ տղի հայրը տայ աղջկայ հօրը 5—50 ր. փող, մի եզ, 7—5—3 խալաթ, որից մի ձեռք ալըշի շապկացուն հարսնացուի, երկրորդը՝ սրա մօր, իսկ միւսները սրա բարեկամների համար է։ Սրանից յետոյ էլ փեսացուի կողմն է ձայն բարձրացնում և պահանջում, որ հարսնացուի հայրը որոշէ, թէ ինչ է տալու որպէս օժիտ։ Պէտք է ասել, որ հետզհետէ տղի տուածը փոքրանում և հարսի օժիտը մեծանում է. և մինչև անգամ պատահում են դէպքեր, երբ տղի հայրը ասում է թէ այսքան օժիտ կը տաս, կառնեմ, չես տայ նշանը յետ կը տամ։ Սակայն այսպիսի դէպքերը դեռ ևս հազուագիւտ են։

Նոյն միջոցին որոշւում են և՝ պսակի օրը։ Այնուհետև փեսացուի հայրը սկսում է պատրաստուիլ պսակը կատարելու։ Մի օր հրաւիրում է քահանային իւր մօտ, լաւ հիւրասիրում և նրանից ստանալով մի վկայական, դիմում գործակալին։ Այստեղ իրեն աղքատ ձևացնելով և երկար սակարկելուց յետոյ վճարում է 5—7 ր. և ստանում պսակի հրաման։

Սակայն շատ անգամ գործը այստեղ բաւական քաշքաշւում է։ Երբեմն չհասութիւնը, երբեմն գործակալի ընչաքաղցութիւնը ուշացնում են հրամանը։ Տարեկան առնուազն 50 չհասութեան խնդիրներ են պատահում, որոնք եթէ փողի միջոցով չեն լուծւում, ապօրինի կնապահութեամբ են վերջանում։

Բայց հոգևոր իշխանութեան հրամանը դեռ բաւական չէ, որ քահանան կատարէ պսակադրութեան խորհուրդը. հարկաւոր է նաև տանուտիրոջ «տէր-ողորմեան», ուստի և՝ փեսացուի հայրը գնում է նրա մօտ, մի շիշ օղի, 30—40 կ. դրամ տալիս և ստանում այն։

## ՏՇՏԸՄԱՂ

Պսակի պատրաստուելով՝ աղջկայ և տղի տնեցիները լաւ մաքրում են տները և սիւների ճակատները ալիւրով խաչաձև նախշում։ Ապա տղատէրը չորեքշաբթի, իսկ աղջկայ տէրը հինգշաբթի պատրաստում է հարսանեաց հացը։ Մի կին շրջելով բոլոր բարեկամների մօտ, հրաւիրում է գալ տըշտամաղը շնորհաւոր անելու։ Ամէն մինը վերցնում է կամ մի կտոր պանիր, կամ իւղ, կամ թել կամ միքանի ձու, և կամ միքանի կոպէկ և գալիս հրաւիրողի տունը, շնորհաւորում, օրհնում և բերածը տալիս ալիւր մաղողին։

Երբ մեծամասնութիւնը հաւաքուած է լինում, միքանի գիւղերում մի պառաւ կին սկսում է մաղել այսպէս. մի մի բուռ ալիւր վերցնելով՝ ածում է մաղի մէջ և ասում. «Էս հօրս փայը, էս մօրս փայը, և այլն, էս մեռելների օրհնութիւնը ընի էս խէր պընատեղիս վերայ»։ Նրանից յետոյ արդէն մաղում է հացարարը։ Իսկ միքանի ուրիշ գիւղերում, օր. Սզնէքում, սկզբում եօթը աղջիկ են մի մի մաղ մաղում և ապա հացարարը՝ այն էլ մինչև մի բուբլի նուէր ստանալուց յետոյ։ Նոյն գերդաստան ամենից պառաւին էլ բերում են, որ նա առաջինը ջուր ածէ։ Ալիւրը մաղելուց յետոյ բոլոր հիւրերին ընթրիք են տալիս, որից յետոյ հեռաւոր բարեկամները գնում, իսկ մօտիկ բարեկամներից միքանիսը մնում են օգնելու։ Այդ գիշեր թխում են բաւական թուով գաթայ և հաց։ Թխելուց յետոյ մի մի զոյգ հաց են բաժանում բոլոր բարեկամներին։

Առաջները համարեա միշտ, իսկ այժմ միայն միքանի հարուստ գիւղերում նոյն օրը, կամ ուրբաթ, տղի տնից տանում են աղջկայ տունը մի կենդանի եզ, մսացուք, վզովը մի շարք խնձոր կապած։ Առաջից գնում են դաւուլ-զուռնան, իսկ յետևից եզ մորթողը, դանակը ձեռին պատրաստ։ Աղջկայ տան առաջ բաւական ածելուց յետոյ, եզ մորթողը վայր է ձգում եզը և դանակը դնելով վզին սպասում, մինչև որ մի բուբլի նուէր է ստանում, և ապա մորթում։

Այս եղի կէսը տալիս են աղջկայ տնեցիներին, իսկ միւս կէսը տանում տղի տունը։

Մորթելու ժամանակ փեսացուն և քաւորը դնում են իրենց աջ ոտերը եղի վրայ, իսկ փեսացուի քոյրը կամ մի ուրիշ մօտիկ ազգական բերում է մի կողպէք և արեան տակ բռնելով՝ կողպում, որպէս զի քաջքերը ևս կողպուած մընան և չկարողանան վնասել։ Այդ կողպէքը այդպէս կողպած պահում են մինչև թագի վերացումը, երբ նորից հանդիսաւոր կերպով բաց են անում։

Նոյն օրը կանայք պատրաստում են մի կամ երկու հաւ փեսի առաջ տանելու։ Հաւը մորթելուց և փետրելուց յետոյ գլուխը նորից կարում են վզին. ապա թելի վրայ քիշմիշ անցկացնելով՝ փաթաթում հաւին, այնպէս որ ամբողջ հաւը պատած է լինում քիշմիշով, ապա մէջքին էլ նոյն քիշմիշով մի թամք շինում, փորոտիքն էլ լցնում են թթուեղէնով։

Աղջկայ տանն էլ պատրաստում են ծառը, յատկապէս փեսացուի առաջ բերելու համար։

Ծառը պատրաստում են աղջիկները. վերցնում են մի փայտ և ամրացնում գոյնզգոյն թելերով զարդարուած մի կտոր տախտակի վրայ։ Յետոյ ուրիշ փայտեր են կապում այդ փայտից և սրանց վրայ կապում խնձոր, տանձ, նուռը և այլն։ Ծառի ճիւղերը միացնում են միմեանց հետ վերան քիշմիշ և սիսեռ անցկացրած թելերով։ Ծառի ծայրին էլ ամրացնում են վերոյիշեալ կերպով պատրաստուած մի հաւ։ Ծառի վրայ սովորաբար լինում է մի ֆունտ քիշմիշ և 5—8 ֆ. միրգ։ Ծառը տանելիս տախտակի վրայ վառում են 2 կամ 4 մոմ։

## ՔԱՒՈՐ

Գիւղերում քաւորներն մեծ նշանակութիւն ունին։ Նրանք ոչ միայն հարսանեաց, այլ և ուրիշ հանդէսների ժամանակ միշտ հրաւիրւում և լաւ հիւասիրւում են։ Իւրաքանչիւր գերդաստանի քաւոր է լինում մի ուրիշ գերդաս-

տան և մեծ անպատուութիւն է, որ մինի պսակի ժամանակ ցեղական քաւորենց թողնեն և մի ուրիշ գերդաստանից քաւոր հրաւիրեն։ Չի պահանջւում, որ միշտ միևնոյն անձը լինի քաւոր, այլ որ միշտ միևնոյն գերդաստանի անդամներից մինը կատարէ այդ պաշտօնը։

Հարսները երբէք չեն խօսում իրենց քաւորների հետ և մինչև անգամ նրանց դռնով անցնելը մեղք են համարում, այնքան ակնածում են նրանից։ Հարսանիքից մի քանի օր առաջ տղայի հայրը պատրաստել է տալիս մի «սեղան», որ բաղկանում է հետևեալ իրերից. մի լաւտիկ արխալուղացու, մի թունգի գինի, մի շիշ օղի, 10 հատ գաթայ, հինգ գրուանքայ միրգ։ Յետոյ կամ ինքը, տղայի հայրը, և կամ իւր եղբայրը, տանում է քաւորին ընծայ, և խնդրում նրան գալ որդու խաչը բռնելու։ Քաւորը սիրով ընդունում է խնդիրը և նրան լաւ հիւրասիրում։ Յետոյ պատրաստում է մի թունգի գինի, մի շիշ օղի, մետաքսի եռագոյն թելերով ասղնեգործած մի զոյգ քօշ և մի ուրիշ, մօտ 5 ր. արժողութեան մի ընծայ հարսանիքի օրը հարսին նուէր տանելու։

## ՀԱՆԴԵՐՁՕՐՀՆԷՔ

Հարսանիքի օրը մօտենալիս, հարսնացուի մօտիկ ազգականները հրաւիրում են իրենց մօտ հարսնացուին, երբեմն միայնակ, երբեմն էլ ընկերուհիների հետ. լաւ հիւրասիրում և վերադառնալիս էլ մի մի ընծայ տալիս։ Այս օրերում հարսնացուին, ինչպէս և փեսացուին հանդիսաւոր կերպով լողացնելը այս կողմերում վերացել է։ Նրանք իրենք, իրենց սովորական եղանակով լողանում, մաքրւում են։

Ուրբաթ օրը դաւուլ զուռնան՝ գնում թէ փեսացուի և թէ հարսնացուի տների առաջ ածում է «սահարի» յատուկ հարսանեկան եղանակը, որով իմացնում է գիւղին, որ այդ օրուանից սկսւում է հարսանիքը։ Նոյն օրը փեսացուն գնում է և պատուաւոր հիւրերին իւր հօր կողմից հրաւիրում։

Երեկոյեան մօտ հիւրերը հաւաքւում են և ծալապատիկ նստում օջախի շուրջը, փափուկ գորգերի վրայ։ Փոքր ինչ յետոյ մի մարդ մի ձեռին կոնք, միւսին մի սափոր, ուսին էլ մի անձեռոցիկ շրջում է հիւրերի մէջ և ջուր ածում՝ լուանալու ձեռքերը։ Այս նահապետական սովորութիւնից յետոյ անմիջապէս սփռում են գետնին սփռոցներ։ Գերդաստան ամենածերատ անդամներից մին, որ մառանապետ է ընտրուած լինում և տեղական բարբառով «մարանապետ» է կոչւում, բարձրանում է ալիւրի շտեմարանի վրայ և այնտեղից սոխ շպրտում սփռոցների վրայ։ Ոչինչ, եթէ սոխը փոխանակ սփռոցի վրայ, մինի գլխին կամ երեսին ընկնի, մի բարձր քրքիջ կը յաջորդէ սրան և սոխը կը դրուի իւր տեղը։ Մի ուրիշն էլ միևնոյն մառանապետի կարգադրութեամբ լօբի է շաղ տալիս սփռոցների վրայ և յետոյ բերում ամէն մի մարդու առաջ երկու հաց դնում։ Յետոյ մատուցանում են լոբախաշու՝ մեծ մեծ քարղաններով, որոնց միջից խումբ խումբ ուտում են։ Ընթրիքի ժամանակ կառավարում է «թոլպաշին», որ սովորաբար թագուորի փեսան, հօրեղբօր որդին և կամ մօտիկ ազգականն է լինում։ Սա օգտւում է ընդարձակ իրաւունքներով, սրանից է կախուած հարսնևորների ուրախութիւնը։ Սա է մի կողմից խմեցնում հարսնևորներին և միւս կողմից հրամայում հարսնետիրոջ կրկին լցնելու շիշերը։ Սա է որոշում, թէ ո՛ւմ պիտի հրաւիրել, ի՞նչ պիտի տալ քահանային, եկեղեցուն, սա է հսկում, որ հարսի օժիտը խոստացածի համեմատ լինի։

Ընթրիքից յետոյ թագուորը և քաւորը մի մի վառած մոմ ձեռքերին կանգնում են քահանայի առաջ։ Բերում են թագուորի հանդերձը—չուխէն և գդակը—և քահանան օրհնում է այն։ Հանդերձի հետ լինում է և՛ երկու թաշկինակ, որոնցից մինը կապում են թագուորի, միւսը քաւորի կողքից։

## ՍԱՓՐԵԼՈՒ ԾԷՍԸ

Հանդերձօրհնէքից յետոյ քաւորը ընտրում է մի «մակարբաշի», որ կազմում է «մակար»-ների խումբը երիտա-

տասարդներից և ամէն մինին մի մի մոմ տալիս։ Մակարները, թւով 20—30, թագւորի անձնապահներն են համարւում և միշտ նրան շրջապատած պահպանում են։

Սրանից յետոյ կանչում են սափրիչին։ Թագւորը նըստում է մի աթոռի վրայ, կողքին կանգնում է քաւորը, ձեռին մի վառած մոմ, իսկ մակարները, ձեռներին վառած մոմեր, շրջապատում են սրանց։ Սափրիչը սափրում է թագւորի մօրուքը, և երբ վերջացնում է, տալիս է իւր փոքրիկ հայելին թագւորի ձեռքը։ Նախ քաւորը և ապա բոլոր մակարները համբուրում են թագւորի ճակատը և 5—20 կ. դնում հայելու վրայ։ Սափրիչը վերցնելով դրամը՝ սկսում է քաւորին սափրել։ Այս ժամանակն էլ թագւորն է մոմը ձեռին նրա կողքին կանգնում։ Մի քանի գիւղերում առաջ քաւորին են սափրում և ապա թագւորին։

Մինչև այդ ժամանակ թագւորի տանից մի կնոջ ձեռքով ուղարկւում է հարսնացուի մօրը հարսի զգեստը, որ բաղկացած է լինում մի թաւշէ մուշտակից, (25—50 ր. արժողութեամբ), մի շալէ կամ մետաքսէ արխալուղից (5—10 ր.), մի չարղաթից (7 ր.), մի գիլանի գոտիից (5 ր.), գլխին կապելու արծաթ կամ ոսկի դրամներից (8—72 ր.), մի զոյգ չմշկներից (1 ր. 20 կ.) և մի դըրայի (մետաքսի) շապկից (5—8 ր.). ընդամէնը 54—172 ր. արժողութեան։ Բացի սրանից ուղարկւում են նաև մի թունգի գինի և մի շիշ օղի։ Իսկ արխալուղի գրպանները և չմշկները լցուած են լինում տեսակ տեսակ մրգեղէններով։ Այս հանդերձը տանողը չի յանձնում, մինչև որ մի ընծայ չի ստանում։

## ՀԱՐՍՆԱՌ ԳՆԱԼ

Մինչդեռ տղի տանը հանդերձներ են օրհնում, հարսի տնից մի երիտասարդ, ձեռին մի կարմիր խնձոր բռնած, գալիս և բոլորին հրաւիրում է։ Անմիջապէս մակարբաշու կարգադրութեամբ մակարները գնում զինւում և գալիս են։ Իսկոյն ձեռներին մի մի մոմ առած՝ շրջապատում են թագւորին ու քաւորին և դաւուլ-զուռնի առաջնորդութեամբ

ուղևորւում դէպի Հարսնացուի տունը։ Ճանապարհին մակարները պարում, երգում, բղաւում և հրացաններ ու ատրճանակներ են արձակում։

Երբ հասնում են աղջկայ տունը, Հարսնացուի հայրը իւր հիւրերով դիմաւորում է սրանց։ Մինն էլ մի երկար մաշալլա—(ձողի ծայրին կուպրի մէջ թաթախած շոր կապած և վառած) ձեռին առաջնորդում է նրանց։ Այս տեսնելով՝ մակարները արձակում են իրենց հրացանները այդ մաշալլայի վրայ և «ուռա» բղաւում։

Հարսնացուի մայրը մօտենում է Թագուորին և համբուրում նրա և քաւորի ճակատները ու հրաւիրում ներս։ Սակայն Թմբկահարը կտրած է լինում դուռը և թոյլ չի տալիս ներս մտնելու, մինչև որ քաւորից մի քանի կոպէկ նուէր չի ըստանում։ Մի քանի րոպէում բոլորը խուժում են ներս։ Ղարադամի մի անկիւնում մի վարագոյրով (գեարդակ) կտրած է լինում, որ կոչւում է «պուճախ»։ Այստեղ է լինում Հարսնացուն իւր մի քանի ընկերուհիների հետ։ Վարագոյրի մօտ պատից կախուած է լինում Հարսի օժիտի գորգը կամ կապերտը։

Մակարները գնում նստում են վարագոյրի մօտ, իսկ քաւորը, Թագուորը և փեսեղբայրը կանգնում են կախուած գորգի առաջ, վառ մոմերը ձեռքերին։ Տան ծերունին մօտենում է Թագուորին և նուիրելով նրան մի գօտի, կամ մի ուրիշ բան՝ խնդրում է նստել։ Թագուորը եթէ գոհ է մընում, նստում է, իսկ եթէ ոչ՝ կանգնած մնում է։ Այս ժամանակ Թագուորի մօտիկ ազգականները մօտենում և համոզում են նրան, որ բաւականանայ տուածով և նստի։ Վերջապէս Թագուորը քաւորի հետ միասին նստում են։

Այս ժամանակ աղջկայ ազգականները «լոյս» են բերում.—մի սկուտեղի շուրջ շարում են խնձորներ, որոնց վըրայ ամրացնում են վառած մոմեր։ Սրանց մէջ տեղը ածում են մրգեր, գաթայ, հաւ, ձու և այլն։ Իսկ ամենամօտիկ ազգականները «ծառ» են բերում։ Ամէն մի «լոյս» կամ «ծառ» բերելիս, մակարները «ուռա» են կոչում, ածում, պա-

րում, գինի և օղի խմում և յետոյ մակարբաշին առնում է այն և տալիս տնեցիներից մինին պահելու։ Այդ բոլորը մակարներին է պատկանում։

Քիչ յետոյ ընթրիք են տալիս, և մատուցանում են պասուայ կերակրներ։ Օղին և գինին առատութեամբ մատուցանում են։ Պարն ու «ճալլին», ծաղրն ու հանաքը երկար շարունակւում են, մինչև օր հարբած ու յոգնած, կէս գիշերին ամէնքը ցրւում են տները. մնում են միայն քաւորը, փեսան և միքանի մակարներ։ Այս ժամանակ տան հարսերըն ու աղջիկները գալիս շրջապատում են թագուորին և սկսում խօսացնել նրան։ Զոնքանչն էլ բերում նրան և նրա հետ մնացողներին նորից հաց է տալիս, որ կոչւում է «շընթըւկաճաշ» կամ «թաքուն պատառ»։ Առաջինը նշանակում է, որ թագաւորը կարող է այդ ժամանակ ազատ նըստել և ճաշել, առանց հիւրերից նեղուելու, երկրորդը, որ զոնքանչը իւր պահած լաւ պատառը թաքուն տալիս է իւր փեսին։

---

Երբ հարսը ուրիշ գիւղից է լինում, հարսնառ գնալը տեղի է ունենում շաբաթ առաւօտեան։ Թէ մակարները և թէ թագուորը ձիով են լինում, թէև պատահում է, որ բոլորն էլ հետի են գնում։ Այս գնացքի ժամանակ երիտասարդ մակարները, գլխները օղուց տաքացած, ահագին աղմուկ բարձրացնելով, իրենց բոլոր շնորհքները թափում են։ Արշաւելով առաջ ու յետ, նրանք կանգնում են ձիու վրայ, քշած միջոցին ոտը խփում գետնին և կրկին թռչում ձիու մէջքին, մտնում ձիու փորի տակ և ատրճանակ արձակում և այլն։

## ՓԸԹՆԹՕՐՀՆԷՔ

Շաբաթ առաւօտեան վաղ մակարները նորից հաւաքւում են աղջկայ տունը։ Այստեղ նրանց նախ մի մի բաժակ օղի և ապա մի մի թերխաշ (թընը խարաւ) ձու են տալիս։

Ժամը 10-ին մօտ դաւուլ զուռնան մի որոշ եղանակ ածելով հրաւիրում է բոլորին պատրաստուել պսակ գնալու։ Գալիս է քահանան և օրհնում հարսի հանդերձը։ Այս ծէսը տեղական բարբառով կոչւում է «փըլթեթօրհնէք» (փաթեթ օրհնէք)։ Մի սկուտեղի մէջ դնում են թագուորի տունից բերուած հարսի հանդերձը և հարսի ծնողների կողմից թագուորին տալու ընծան,—մի գօտի և կամ մի չորեղէն։ Թագուորը մօմը ձեռին կանգնում է հանդերձի մօտ, իսկ հարսնացուն պուճախումն է լինում։

Հանդերձը օրհնելուց յետոյ թագուորը վերցնում կապում է գօտին։ Հարսի հանդերձներն էլ տանում են պուճախը, ուր մի հարս հագցնում է նրան և գլուխը կապում, զարդարում։ Այս միջոցին հրաւիրում են քաւորին հարսի գօտին կապելու։ Սա ուրախութիւնով գալիս կապում է և թեթեւութեամբ խփելով մէջքին ասում. «Աստուած քեզ մին ղոչ որդի տայ։»

Այս ժամանակ Թոյպաշին շտապեցնում է. «Հրթնամար, պա հինչ տեռաւ, ախէր չէնըմը օրէշ հըսանէք կայ, կը գան մեր ըռըչկնէն կտրին. առաջ մունք պիտի քընինք»։

Գիւղացիները հաւատացած են, որ եթէ պսակի գնալիս մի ուրիշ հարսանիք պատահի, թագուորը կը դժբախտանայ։

## ՊՍԱԿ ԳՆԱԼ

Վերջապէս հարսը՝ կողքերին մի մի հարսնաքոյր (հըրսնաքուր), հանդերձ հագցնող կնոջ առաջնորդութեամբ դուրս է գալիս պուճախից և ծանր քայլերով գալիս թագուորի աջ կողմում կանգնում։ Սրա ձախ կողմումն էլ քաւորն է լինում։ Իսկոյն Թոյպաշին մի մետաքսէ թաշկինակ կապած մի երկար ձողի ծայրին, առաջ է ընկնում։ Դաւուլ-զուռնան աւելի ուժգնութեամբ ածելով՝ առաջնորդում է դէպի եկեղեցի։ Մակարները շրջապատած հարս ու թագուորին, սուռաւ են բղաւում, պարում, գինի, օղի խմում և ատրճանակ արձակում։ Միքանի մակարներ էլ «ծառեր» ձեռքերին բըռ-

նած պարելով առաջ են գնում։ Երբ հասնում են եկեղեցուն, մի քանի մակարներ պահապան են կանգնում եկեղեցու շուրջը, որպէս զի թոյլ չտան թշնամի մարդկանց եկեղեցու կտուրը քար ձգելու և այսպիսով ամուլ դարձնելու հարսին։ Միւսները մտնում են եկեղեցի։ Իսկոյն Թոյպաշին յանձնում է քահանային տանուտիրոջ համրիչը և խնդրում պսակել։ Այստեղ էլ Թագուորաքոյրերն են հսկում, որ չարամիտ կանայք թել չհանգուստեն և այդպիսով ամուլ դարձնեն հարսին։ Քահանան նախ խոստովանեցնում է հարս ու Թագուորին և ապա երկուսին միասին չոքեցնելով սեղանի առաջ, իւր շուրջառը ձգում գլխին։ Այս ժամանակ Թագուորը հանում է իւր գրպանից մի խնձոր, որի մէջ արծաթ դրամներ են խրուած լինում, և ծածկաբար տալիս հարսին։ Երբեմն էլ շատանում է միայն մրգեղէն տալով։

Երբ քահանան գինու բաժակը օրհնելով տալիս է Թագուորին, առաջ է գալիս հարսնեքոյրը, առնում բաժակը և մնացած գինին խմեցնում հարսին։

Պսակի խորհուրդը կատարելուց յետոյ քահանան ասում է. «Դէհ, Թաքաւէրին, Թագուհուն սիրողը կէտայ տեսնամ»։ Ամէնքը մի առ մի մօտենում, համբուրում են Թագուորի բռնած Աւետարանը և խաչհամբոյր ձգում։ Եւ եթէ մինը չի ձգում, քահանան բարկանում է վերան, գնում սիւների յետևից քաշ տալիս բերում, որ մի քանի կոպէկ էլ է ձգի։

Երբ տեսնում են, որ այլ ևս ոչ ոք չի մօտենում, շարժւում են դէպի տուն։ Սակայն այս անգամ Թագուորն ու հարսը միևնոյն կերպ չեն գնում։ Դեռ մինչև ամուսնանալը հարսը Թագուորին հաւասար էր համարւում, ուստի և՛ նրա կողքից էր գնում, բայց այժմ, արդէն ամուսնացած լինելով, ժողովուրդի կարծիքով, նրանից ստոր է, ստիպուած է ամէն բռնում նրան հետևելու, ուստի և՛ Թագուորը գընում է առջևից, աջ կողմում քաւորը, ձախում՝ փեսեղբայրը, իսկ հարսը Թագուորի յետևից, նրա գօտուց ամրացրած Թաշկինակը բռնած։ Նրա կողքերից էլ գնում են հարսնքոյրերը։

Եկեղեցուց դուրս գալիս քաւորը հանում է իւր կողքից կապած թուրը և խրում դռնագլխին, որ փեսան ու հարսը տակովն անցնեն և սատանաները չը կարողանան նրանց խփել։

Այժմ արդէն մակարների ուրախութիւնն իւր գագաթնակէտին է հասնում, պարը, ուռան, հրացանաձգութիւնը քանի գնում սաստկանում են։

Ամէնից առաջ գնացքը ուղղւում է դէպի «օճախ»-ները, ուր հարս և փեսայ երեքական անգամ չոքում և համբուրում են օճախից, խունկ ծխում, խաչհամբոյր ձգում։ Ծանապարհին հարսը կամ փեսի բարեկամները և քաւորանք հրաւիրում են հարս ու թագուորին իրենց դուռը, ուր սրանք կանգնում են, իսկ մակարները սրանց առջև պարում։ Հրաւիրողը օղի կամ գինի է բաշխում մակարներին և մի նուէր տալիս թագուորին կամ հարսին. օրինակ, մի չարղաթ, մի լաչակ ձըգում հարսի գլխին. մի թաշկինակ, կամ մի օսկապ կապում *) թագուորի վիզը։ Հեռու բարեկամներն էլ մի մի աման ձուաձեղ, հալուալ, կարմիր ձու, փլաւ, ընկոյզ, գինի, օղի, և այլն, են բերում, նախ մի մի բաժակ տալիս թագուորին ու քաւորին և մի մի էլ պատրաստած պատառ ներկայացնում նրանց և ապա մնացածը տալիս մակարներին։

Միքանի բարեկամ կանայք էլ հարս ու թագուորը իրենց դռնով անցկենալիս՝ կտրից ընկոյզ են շաղ տալիս վերաները։ Պիտի երևակայել, թէ ինչպիսի իրարանցում է տիրում մակարների մէջ, որ աշխատում են միմեանց ձեռքից խլխլել ընկոյզները։

Վերջապէս գնացքը մի երկու ժամից հասնում է «հարսնքատունը»—հարսի տունը։ Միքանի գիւղերում այս միջոցում մի հաւ են բերում քաւորի տանից։ Մի մակար այդ հաւը, իսկ մի ուրիշը մի դաշոյն ձեռներին բռնած պարում են։ Եւ երբ պարը վերջանում է, քաւորը առնում է դաշոյնը և հորիզոնական կերպով բռնում և հրաւիրում թագուորին։ Սա էլ վերցնում է հաւը, գլխից և ոտներից բռնում

*) Օսկապը (ուս-կապ) մի ծակ քսան կոպէկանոց է, որ կանանչ կարմիր թելով կապում են ուսովը։

և խփում դաշոյնին, վիզը կտրում։ Բոլոր մակարները «ուռա» են բղաւում և գովում Թագւորի քաջութիւնը։ Յետոյ բոլորը խառնիխուռն խուժում են ներս և նստում գորգերի և ներքնակների վրայ։ Հարսին կրկին տանում են պուճախը, իսկ Թագւորին կանգնեցնում են վարագոյրի մօտ, նրանից ներքև քաւորը և փեսեղբայրը։

Դրսում զուռնան շարունակում է ածել «նուախք» եղանակը։ Թոյպաշին գնում մի ընծայ է տալիս և հրաւիրում ներս։

Կէս օրին հաց են ձգում և մատուցանում են բոզբաշ, դոլմա և կորկոտ։ Նախ ճաշում են տղամարդիկ։ Սակայն այս ժամանակ էլ Թագւորը ոչ նստում և ոչ էլ հաց է ուտում։ Աներանք մի երկու զոյգ գուլպայ և մի գդակ են բերում նուիրում, որ նստի, հաց ուտի։ Այս նուէրը կոչւում է «բերանբացուկ»։ Երբ ճաշը աւարտւում է, Թագւորն ու քաւորը 20—40 կոպէկ են ձգում ափսէի մէջ, խոհարարին նուէր։ Հացի ժամանակ գիւղի գզիրը գալիս պահանջում է մի փոքրիկ աման հալուան, որ յատկապէս պատրաստուած է լինում, և բաժանում բոլոր հրաւիրեալներին։ Եթէ մինին չհասնի, նա աղմուկ կը բարձրացնի և կը պահանջէ։

Տղամարդկանցից յետոյ կանայք են նստում հաց ուտում և վերջն էլ «կանչ» անում։ Այս «կանչից», որին միայն կանայքն են մասնակցում, գոյանում է մօտ 30 ր., որ յանձնւում է հարսի մօրը։

Սրանից յետոյ հեռու բարեկամները ցրւում են, մնում են միայն մօտիկ ազգականները և մակարները։ Իսկոյն Թոյպաշին խնդրում է բերել և ցոյց տալ հարսի օժիտը։ Անմիջապէս բերում են և բաց անում։ Թմբկահարը վերցնում մի մի բարձրացնում է իրերը և բոլորին ցոյց տալով՝ բղաւում. «Թագաւերին մկըռնէ»։

Մակարները ձայն են տալիս. «Հրամմա»։

Թմբկահարը՝ «Հրամանքդ Աստծու. խնամին տվաւ իւրան ըղջկանը մին սիրուն կապերտ, որ եժի պակասը պակասը՝ 20 մանէթ. (մինչդեռ արժէ 10 ր.)։

Բոլորը միասին բղաւում են. «Շէն կենայ, շէն»։ Այսպէս ցոյց են տալիս ամբողջ օժիտը, որ բաղկացած է լինում հետևեալ իրերից.

## ՀԱՐՍԻ ՕԺԻՏԸ

Մի ձեռք չոր, արխալուխի վրայ մօտ տասը ռուբլու արծաթ դրամ սարմակոճակ կարած։

Երկու ձեռք սպիտակեղէն։

Մի ձեռք անկողին, բաղկացած մի ներքնակից, մի վերմակից, երկու բարձ և մի մութաքայից։

Մի կարպետ։

Մի փոքրիկ կապերտ (գեաբա)։

Մի գորգ։

Երկու մաֆրաշ։

Մի բակեղաթ։

Մի հատ աղա-քսակ, չորից կարած։

Մի կաթսայ բռնելու չոր (թութաճախ)։

Մի կուժ։

Մի կոնք։

Մի սափոր (այթաւա)։

Մի սկուտեղ (մաժմահի)։

Մի ասմալըղ—թելերից գործուած գդալակալ։

Պղնձեայ ափսէներ։

Մի «սնդուկ»։

## ՀԱՐՍԸ ՏԱՆԵԼ

Երեկոյեն պատրաստւում են գնալու թագուորի տունը։

Օժիտը բարձում են մի ձիու, հարսնեղբօրն էլ նստեցնում վերան։ Դաւուլ զուռնան ուժգնութեամբ ածում է։ Հարսի հայրը բռնում է հարսի ձեռքից, առաջ բերում և ձեռը տալով թագուորի հօրը՝ ասում. «Առ ամանաթդ, տար խէրը տես»։ Հարսը խոնարհում և համբուրում է կեսարի ձեռքը։ Սա էլ շնորհակալ է լինում խնամուց, օրհնում հարսին և մօտեցնում նրան թագուորին։ Ապա թագուորն ու հարսը ծունր դնում համբուրում են օճախը։ Այս ժամանակ թագուորը մի քիչ մոխիր է վերցնում և լցնում գըլպա-

նը։ Յետոյ թագուորը առաջ է անցնում և քաւորի ու փեսեղբօր հետ գնում. իսկ հարսը հետևում է նրան, նրա գօտուց կապած թաշկինակից բռնած։ Մակարները սրանց շրջապատած են լինում և պարելով՝ «ուռա» բղաւելով առաջ գնում։ Երբ մօտենում են տանը՝ թագուորի մայրը մի սկուտեղի մէջ երկու լաւաշ հաց և մի փոքրիկ ափսէի մէջ կրակ, վերան խունկ դրած, պըտըտեցնում է տան չորս անկիւնը, ապա դուրս գալիս և երեք անգամ պտտում թագուորի ու թագուհու շուրջը։ Յետոյ բարձրանում է մի բարձր տեղ և ընկոյզ կամ կաղին շաղ տալիս հարսի գլխին *)։ Ապա մօտենում և համբուրում է հարսի ճակատը։ Սա էլ խոնարհում և համբուրում է նրա ձեռքը։ Այս միջոցին տանեցիներից մին իւղի կարասը բերում, ներկայացնում է թագուհուն, և սա միքանի կոպէկ ձգելով իւղի մէջ՝ մատը իւղոտում, քսում է դռնագլխին և սկեսուրի մազին։ Իսկ սկեսուրը ասում է. «Ձեռնդ ընի եղի մաջին, քը մատաղ»։ Յետոյ հրաւիրում է ներս, բայց սա չի գնում, մինչև որ կերսարը գալիս և մի ընծայ է խոստանում։ Հարս ու թագուոր մըտնում են ներս և չոքում համբուրում օճախը։ Այս ժամանակ հարսը գրպանից խունկ է հանում և ձգում օճախը։ Իսկոյն տան ծերունին մօտենում և հէնց այդ օճախի մօտ օրհնում է նրանց **)։ Յետոյ հարսին տանում կրկին փակում են նոյն կերպ պատրաստուած պուճախում։ Անմիջապէս սկեսուրը մի տղայ գրկում, տանում հարսի գիրկն է դնում, ասելով. «Բարով դու էլ մին տղայ բիրես, քը մատաղ»։ Հարսը, որ մինչև այդ ժամանակ կանգնած է լինում, գրկում է երեխային և նստում։ Յետոյ գրպանից հանում է մի զոյգ փոքրիկ գուլպայ և տալիս երեխային։

Միքանի գիւղերում էլ (օր. Շօշում) պուճախում մի համետ են դնում և դիտում. եթէ հարսը վերան նստի, դա-

*) Շօշու գիւղում կոպէկլանոցներ էլ են շաղ տալիս։

**) Ո՛րքան նմանութիւն Ետրուսքների սովորութիւններին։

նշանակում է, որ նա յիմար է, իսկ եթե մոտը կանգնի՝ դա ապացույց է, որ խելացի է։

Երեկոյին տեղի է ունենում հարսի տան նման ընթրիք, որի ընթացքում «ծառեր» են բերում։ Գիշերը ուշ հիւրերը ցրւում են և մնում է միայն փոքրիկ հարսնեղբայրը, որ քնում է հարսի մոտ և հսկում նրա վրայ։ Սա չի թոյլ տալիս, որ հարսի քնած ժամանակ բանան երեսը, տեսնելու թէ նա ո՛րքան գեղեցիկ է։

## ՄԱԾԱՐՔ

Կիրակի օրը գնում ամբողջ գիւղի տղամարդ մեծերին հրաւիրում են, և այն օրուայ հրաւէրը մածարք է կոչւում։

Կէսօրին մոտ ճաշ են տալիս, որի ընթացքում առատութեամբ բաշխում են գինի և օղի, որ հրաւիրեալների գլխները տաքանան և գրպանները փոքր ինչ լայնանան։

Երբ հացկերոյթը վերջանում է, թմբկահարը երեք անգամ խփում է թմբուկին և կանչում. «Ա՜ջամհատ, մեր խընամին գինի շատ օնի. հալա քէփը եռնան ա ըննական. մինչի խոզը ծառը եր ընելը քէփ ինք ըննական. հըմէկ մին պատառ տազ ըրէք մին թազա խաբար ա եկալ, ասիմ»։ Մեծամասնութիւնը լռում է։ Սա իսկոյն թմբուկը տանում դընում է տանուտիրոջ առաջ։ Այս ժամանակ առաջ է գալիս թագուորի հայրը կամ մայրը և բերում մի կարմիր մետաքսէ մեծ չարսաւ է ձգում թմբուկի վրայ։

Հիւրերը մէկ մէկ, ազգակցութեան և կամ հարստութեան կարգով դրամ են նուիրաբերում յօգուտ թագուորի։ Թմբկահարը առնում է դրամը, ցոյց տալիս բոլորին և բըղաւում. «Ա՜ թագաւորէն ջամհատ»։ Ջուռնաչին պատասխանում է.—Հրամմա. Թմբկահարը՝ «Աստուծէն հրամանքը քեզ, (այս ինչը) մեր թագաւորէն սէրին բերալ ա մին հինգ մանէթ, շէ՛ն կենայ, շէ՛ն»։

— Շէն կենայ, կրկնում են բոլորը։ Սովորաբար ամէն մինը 20 կոպէկից մինչև 20 ռուբլի նուէր է տալիս։ Եւ երբ

մինը աւելի պակաս է տալիս, քան որ Թագուորի տնեցիները նրա տնեցիների կանչին տուել են, կռիւ է ծագում։ Թագուորի հայրը և կամ բարեկամները նախատում են նրան և ստիպում եթէ ոչ աւելի, գոնէ այնքան տալ։ Այս կանչից գոյանում է. 50—100 ր.։

Կանչից յետոյ մի սկուտեղի վերայ դրուած երեք բաժակ են բերում և գինի ածելով առաջարկում հիւրերին, որոնք երեք բաժակն էլ միմեանց յետևից խմում են մինը Թագուորի, միւսը հարսի և երրորդը քաւորի կենացը։ Ով դժուարանում և կամ հրաժարւում է խմելուց, նրան որպէս պատիժ չորրորդ բաժակն էլ են խմեցնում։

## ՄԿՐԿՈՋԷՔ

Կիրակի երեկոյեան, բայց առաւելապէս երկուշաբթի առաւօտ, միայն մակարները հաւաքւում են Թագուորի մօտ և քէփ անում, «ծառի», «լոյս»-երի վրայ եղած մրգեղէնները ուտում, մնացածը իրենց մէջ բաժանում և ապա Թագուորի և նրա ծնողաց հետ գնում այդ գերդաստանի ննջեցեալները օրհնել տալիս և վերադառնում։ Այս ժամանակ քահանան կատարում է Թագի վերացման ծիսակատարութիւնը, որի ընթացքում քաւորը իւր սուրը բռնում է Թագուորի ու հարսի գլխին, որպէսզի արգելէ չարերին նրանց խփելու։

*
* *

Այդ օրը, գիշերը Թագուորն ու հարսը առագաստ են մտնում։ Հարսնաքուրը պատրաստում է անկողինը, մօտը դնում գինի, մեղր և գինու բաժակով փոքր ինչ մեղր։ Քաւորը կտրան և մի կին դռան յետևը Թաք կացած են լինում։ Խստութեամբ պահանջւում է կուսութեան ապացոյց սաւանը, որ հարսնաքոյրը տանում հարսի մօրը և սկեսուրին ցոյց է տալիս։ Եթէ հարսը կոյս չի լինում, որ սակաւ է պատահում, շատ անախորժ դէպքեր են տեղի ունենում։

Միքանիսը շատանում են միայն մի լաւ թակելով և բաւական երկար ժամանակ արհամարհելով, ուրիշները ուղղակի վերադարձնում են հօրը, և երկար խօսակցութիւններից յետոյ, զիջանելով հօր տուած նուէրներից, կրկին ընդունում։

Առաւօտեան վաղ տղան վեր է կենում փախչում մի բարեկամի տուն, ամաչելով մինին երևալ։ Մի քիչ յետոյ գալիս են մօտ ազգական կանայք «աչքի լոյս», այսինքն շնորհաւորելու, որ հարսը կոյս է եղել։ Ճաշին մատուցանում են «քեալլա-փաչա» (ոտ ու գլուխ)։ Այս ժամանակ մի խոնձոր են ման ածում, որի վրայ ամէն մինը մի արծաթ դրամ է ցցում և ուղարկում հարսին։ Սա սիրով ընդունում և մինի առաջնորդութեամբ գալիս բոլորի ձեռքերը համբուրում է։ Սրանք էլ համբուրում են նրա ճակատը և գովասանքներ թափում գլխին։ Երեկոյեան մօտիկ ազգական տղամարդիկ դաւուլ-զուռնի առաջնորդութեամբ թագուորին բերում են տուն, որ ամաչելով մօտենում է ծնողներին և համբուրում ձեռքերը։

Երբ հիւրերն արդէն վերադարձած են լինում, հարսը ջուր է տաքացնում և բերում բոլորի ոտներն աւագութեան կարգով լուանում և փոքր ինչ խոնարհելով՝ համբուրում է, թէև շատերը թոյլ չեն տալիս և մի մի քսան կոպէկանոց ձգում կոնքի մէջ, իբրև հարսին նուէր։ Ոտ լուանալիս հարսը զգուշանում է, որ ձախ ոտը առաջ չլուայ, որպէս զի անյաջողութիւնը չպատի։

Միւս օրն առաւօտեան շատ վաղ հարսը վեր է կենում և ամբողջ տունը մաքրում աւլում, աղբը դռան մօտ հաւաքում և իւր քօշերն էլ վրան է դնում։ Երբ սկեսուրը վեր է կենում, գովում է հարսի ջանասիրութիւնը և միքանի կոպէկ դնում քօշերի մէջ։ Հարսը վերցնում է կոպէկները և նոր դէն ածում աղբը։

Մի շաբթից յետոյ հարսի մայրը կամ հօրեղբօր կինը վերցնում է միքանի գաթայ, մի հաւ, միքանի փունտ սապոն, մի սանր, թել, ճաղեր, մի ձեռք հանդերձ և գնում թագուորի տունը «գլխըլըվայ»։ Սա լողացնում է հարսին,

լուանում շորերը, այդ գիշեր էլ մօտը մնում և առաւօտեան վերադառնում։

Երբ առաջին անգամ հարսը գնում է աղբիւր ջուր բերելու, իւր հետ ցորեն է տանում և լցնում աղբիւրի ակը։ *)

Ե. Լ.

---

## ՏՂԱԲԵՐՔ ԵՒ ԿՆՈՒՆՔ

Մինչ դեռ կնոջ արգասաւորութիւնը մեծ ուրախութիւն է պատճառում ինչպէս ամուսնուն, այնպէս և՛ ամբողջ գերդաստանին, նրա ամլութիւնը դժգոհութիւնների և երբեմըն ապօրինի կնապահութեան տեղիք է տալիս։ Սակայն դեռ այդ աստիճանին չհասած, ամուլ կինը դիմում է «փալճինների» միջնորդութեան և նրանց «գիր անել տալով» յոյս է տածում երեխայ ունենալու։ Երբ մարդկային միջոցները անզօր են գտնւում և յաճախ տեսնուող երազները տրամադրում են նրան սրբերի օգնութիւնը հայցելու, վերցնում է մի սպիտակ խոյ և ոտաբոբիկ դիմում սրբի դուռը։ Այս տեսակի սրբերից Վարանդայում նշանաւոր են Սարիբէկը, Ամարասի Ս. Գրիգորիսը, Սարուշէնի Աւետարանը, Սղնէքի Ս. Յովհաննէսը և այլն։

Մօտենալով սրբի դռանը, ամուլ կինը երեք անգամ չոքէչոք պտտում է նրա շուրջը և ապա համբուրելով սրբութիւնը, չոքած և ձեռքերը գետնին յենած՝ անշարժ մնում է։ Այս ժամանակ մի անմեղ մանուկ վերցնում է մի կտոր

---

*) Այս յօդուածը պատրաստելիս, բացի այն որ ես անձամբ ներկայ եմ գտնուել միքանի հարսանիքների, այլ և իմ տուած ծրագրով ինձ համար նիւթեր են հաւաքել տարբեր գիւղերից Պ. Պ. Տէր-Սարգսեան, Բալայեան, Իշխանեան, Մելիք Ալլահվերդեան, Ապրեսեան, Տէրտէրեան և ուրիշներ, որոնց շնորհակալութիւնս եմ յայտնում։

լուանում շորերը, այդ գիշեր էլ մօտը մնում և առաւօտեան վերադառնում։

Երբ առաջին անգամ հարսը գնում է աղբիւր ջուր բերելու, իւր հետ ցորեն է տանում և լցնում աղբիւրի ակը։ *)

Ե. Լ.

---

# ՏՂԱԲԵՐՔ ԵՒ ԿՆՈՒՆՔ

Մինչ դեռ կնոջ արգասաւորութիւնը մեծ ուրախութիւն է պատճառում ինչպէս ամուսնուն, այնպէս և՛ ամբողջ գերդաստանին, նրա ամլութիւնը դժգոհութիւնների և երբեմըն ապօրինի կնապահութեան տեղիք է տալիս։ Սակայն դեռ այդ աստիճանին չհասած, ամուլ կինը դիմում է «փալճիներին» միջնորդութեան և նրանց «գիր անել տալով» յոյս է տածում երեխայ ունենալու։ Երբ մարդկային միջոցները անզօր են գտնւում և յաճախ տեսնուող երազները տրամադրում են նրան սրբերի օգնութիւնը հայցելու, վերցնում է մի սպիտակ խոյ և ոտաբոբիկ դիմում սրբի դուռը։ Այս տեսակի սրբերից Վարանդայում նշանաւոր են Սարիբէկը, Ամարասի Ս. Գրիգորիսը, Սարուշէնի Աւետարանը, Սղնէքի Ս. Յովհաննէսը և այլն։

Մօտենալով սրբի դռանը, ամուլ կինը երեք անգամ չոքէչոք պտտում է նրա շուրջը և ապա համբուրելով սրբութիւնը, չոքած և ձեռքերը գետնին յենած՝ անշարժ մնում է։ Այս ժամանակ մի անմեղ մանուկ վերցնում է մի կտոր

---

*) Այս յօդուածը պատրաստելիս, բացի այն որ ես անձամբ ներկայ եմ գտնուել միքանի հարսանիքների, այլ և իմ տուած ծրագրով ինձ համար նիւթեր են հաւաքել տարբեր գիւղերից Գ. Գ. Տէր-Սարգսեան, Բալայեան, Իշխանեան, Մելիք Ալլահվերդեան, Ապրեսեան, Տէրտէրեան և ուրիշներ, որոնց շնորհակալութիւնս եմ յայտնում։

քար և գնում նրա վզին։ Քահանան անմիջապէս ձգում է նրա վրայ իւր շուրջառը, և աղօթքներ կարդում։ Մի կին էլ նրա մօտ հսկում է, որ ոչ ոք չդիպչի նրան և խանգարէ նրա խնդրուածքը։

Կինը ջերմեռանդութեամբ աղօթելուց յետոյ խոստանում է եօթը գիւղ ման գալ, «մատաղ հաւաքել», ոչխար առնել և բերել «նրա ոտքի տակը», եթէ իւր խնդիրը կատարէ ու մի որդի տայ։

Եթէ այս միջոցը ևս չի օգնում, գնում երեք անգամ անցնում է տղայ տուող Ծակ քարերից՝ նոյն խնդիրը կրկնելով։

Միևնոյն ժամանակ լսելով կախարդ կանանց, ամուլ կինը փոխում է իր ննջարանը, կարծելով թէ այդտեղ քաջքեր կան, որ թոյլ չեն տալիս որդի ունենալու։ Մութ ժամանակ տաք ջուր դուրս չի անում, մութ տեղը ջուր չի խմում, որովհետև չար սատանան այդպիսի տեղերից պակաս չի լինում։ Երբեմն էլ չբերքութիւնը «կոխից» յառաջացած են համարում։ Այս պատահում է, երբ նոր պսակուած ժամանակ հարսի մօտ չար և անմաքուր մարդիկ են գալիս։ Կոխուած կինը եօթը տարի ամուլ է մնում, և եթէ սրանից յետոյ էլ որդի չի ունենում, այն ժամանակ նրան տանում, սպանուած մարդու գերեզմանի վրայ ջուր են խմացնում, ննջեցեալի սակով անցկացնում, կամ նոր պսակուածների տան կտրով ման ածում և այլն։

Մինչդեռ քաղաքում յղի կնոջ դրութիւնը փոքր ինչ լաւ է, գիւղում սաստիկ աննախանձելի է։ Գիւղացի կինը յղութեան նոյն իսկ վերջին օրերում չի ազատւում տնային ծանր աշխատանքներից. պատահել են դէպքեր, երբ կինը տղայ է ծնել ծանր կուժը ուսին, աղբիւրի ճանապարհին, և կամ այգում, միայնակ աշխատելիս։ Տատմօր օգնութիւնը բոլորին չի հասնում։

Երկունքը սկսուած միջոցին հրաւիրում են տատմօրը և կնոջը առանձնացնում մի սենեակում։ Եթէ երկունքը երկար է տևում, սկեսուրը փեշը ջուր ածած՝ առաջարկում է

ծննդկանին խմելու, որով և՛ ներւում են նրա՝ սկեսուրը և կամ տան միւս անդամների դէմ գործած յանցանքները։

Մօտիկ ազգական կանայք գալիս են օգնութեան և խրփելով ծննդկանի մէջքին բղաւում. «Ղօշուն էկաւ. Թալանեցէ՜ն, տարան»։ Մինն էլ հերթիկից մի ձու է վայր ձգում, ասելով. «Բերում ըս բեր, բերում չես՝ ես բերում ըմ»։

Երբեմն պատահում է, որ ծննդկանը ուշաթափւում է։ Իսկոյն նրա մօտի կանայք, հաւատալով, որ արդէն քաջքերը տիրապետել են ծննդկանին, սարսափած փախչում են. մնում են միայն արխասիրտները, որոնք քանդում են նրա գլխի փաթեթները և դնում գլխին կնքահօր գլխարկը, որպէս զի քաջքերը կարծեն, թէ նա տղամարդ է։ Անմիջապէս գալիս է կնքահայրը և սկսում ապտակել, խփել ծննդկանին, ամբողջ մարմինը հարել։ Միւսներն էլ հրացաններ են արձակում, վառօդ վառում, քաջքերին հալածելու և ծննդկանին ուշքի բերելու նպատակով։ Եթէ երեխան արդէն աշխարհ է եկած լինում, նրան վերցնում տանում դնում են երդիկը, որով նուիրում են նրան քաջքերին, խնդրելով խնայել մօրը։ Այս բոլոր ժամանակ սաստիկ զգուշանում են ծննդկանի անունը տալու, որպէս զի քաջքերը նրան էլ իրենց «դասը չդասեն»։ Բացի սրանից, ծննդկանի երեսին լեղակ են քսում և բարձի տակն էլ շամփուրներ, սանդերք, պողպատի կտորներ և համայիլներ դնում։ Երբ ծննդկանը ուշքի է գալիս, նրան տալիս են մի կծիկ կծկելու և կամ մի ուրիշ գործ, որպէս զի նրանով զբաղուի և քաջքերին ուշք չդարձնի։

Երբ երեխան աշխարհ է գալիս, տատմայրը երեսը երեք անգամ խաչակնքելով և «հայր մեր» շշնջալով կտրում է պորտը և բամբակի թելով կապում։ Եթէ երեխան տղայ է լինում, պորտից ընկած կտորը տանում ձգում են մի ընդարձակ տեղ, որպէսզի տղան մեծանալիս հասարակութեան մէջ մտնող ելնող լինի, չամաչի, իսկ եթէ աղջիկ է, ձգում են մի յետ ընկած անկիւն, որպէսզի համեստ և ամօթխած տանտիկին դառնայ։ Դանակն էլ պահում են, որ մկրտու-

թեան ջրով սրբեն։ Օրանից յետոյ տատմայրը ծնընդկանին կանգնեցնում է տաշտի մէջ, Ս. Մարիամ Աստուածածնայ աղօթքն ասելով կիսից վայր լողացնում և պարկեցնում։ Ապա երեխային է լողացնում, վերան աղ ցանում, փաթաթում շորերի մէջ և երեք անգամ խաչակնքելով՝ դնում ծննդկանի աջ կողմը։

Այդ ժամանակ տան «մշտուլուղչին» վազում ամենից առաջ ծննդկանի ծնողների և ապա կնքահօր տնեցիներին «աչքի լոյս է» ասում, աւետելով նորածնի աշխարհ գալը, որի փոխարէն և՛ մի բան նուէր է ստանում։

Մի քանի րոպէից յետոյ ազգականներն ու հարևանները տեսութեան են գալիս, իրենց հետ բերելով ձուաձեղ, խաւիծ, եփած ձու և այլն։ Տատմայրը ծածկում է նորածնի երեսը և չի թոյլ տալիս նորեկներին տեսնելու, մինչև որ նրանցից մի քանի կոպէկ և կամ մի «խալաթ» չի ստանում։ Գալիս է նաև սանամայրը՝ բերելով իւր հետ մի սպիտակ և մի կարմիր կտոր, *աղնաբաթ*։ Տնեցիները հիւրերին հիւրասիրում են թէյով և կամ ղայնարով.—սա պատրաստում են այսպէս՝ մի ջրով լի կաթսայի մէջ գցում են զանճափիլ, կինամոն և հիլ ու երկար եփ տալիս։

Մի քիչ յետոյ հրաւիրում են քահանային տունը «փարատելու», որովհետև պիղծ և քաջքերով լի են համարում։ Քահանան օրհնում է մի գաւաթ ջուր, որը սրսկում են ծնընդկանի սենեակում և ողողում տան ամանները։ Թէև այսպիսով տունն ու ամանները սրբւում են, սակայն ծննդկանը դարձեալ մնում է անսուրբ, նրան ոչ ոք ձեռք չի տալիս, նրան կերակրում են առանձին ամաններով, որ միմիայն տատմայրը կարող է մատուցանել և յետոյ էլ լուանալ։ Ինքը ծննդկանը նոյնպէս ինքն իրեն անսուրբ զգալով՝ զգուշանում է մի որ և է բանի դիպչելու։ Պատահել է, որ տատմայրը ամբողջ օրը բացակայել է և խեղճ ծննդկանը քաղցած մնացել է, չհամարձակուելով հացատեղից իւր ձեռքով մի կտոր հաց վերցնելու։ Սակայն այս տևում է մինչև մըկրտութիւնը, որ սրբում է նրան։ Մինչև այս ժամանակ,

որ սովորաբար ութ օր է տեւում, ծննդկանին ջրի փոխարէն գինի, պղպեղով պատրաստուած տաք կերակրներ և քաղցրեղէններ են տալիս։ Տատմայրն էլ օրը մի անգամ ղողացնում է նորածնին և լուանում շորերը։



Մկրտութեան նախընթաց երեկոյին ծննդկանի տնից «սեղան» են ուղարկում կնքահօրը, որ բաղկացած է լինում զոյգ թուով գաթայից, երկու զոյգ հացից, մի եփած հաւից, մի գաւ գինուց, մի շիշ օղուց և մի զոյգ գուլբայից։ Տանողը միեւնոյն ժամանակ հրաւիրում է կնքահօրը գալ միւս օրը երեխան կնքելու։ Նոյն երեկոյին ուղարկում են նաև քահանային մի զոյգ հաց, մի զոյգ մոմ, մի գաւ գինի կամ մի շիշ օղի և հրաւիրում գալ երեխան մկրտելու։ Միւս օրը տատմայրը վաղ առաւօտեան գալիս է և պատրաստում երեխային եկեղեցի տանելու։ Գալիս է և՛ կնքահայրը, իւր հետ բերելով մի զոյգ մոմ, նարօտը և մի գունաւոր թաշկինակ։ Գիւղերում սովորաբար եկեղեցումն են մկրտութեան խորհուրդը կատարում և միայն եկեղեցի չեղած դէպքում տանն են մկրտում և համարեա միշտ՝ թոնրի վրայ։

Մինչդեռ եկեղեցում կատարում են մկրտութեան խորհուրդը, տատմայրը մի փոքրիկ շիշի մէջ մեռոնաջուր առած շտապով վերադառնում է տուն և լուանում ծննդկանի ձեռները, որպէս զի նրանք սրբուած լինեն և կարողանան գրկել մեռոնուած մանկան։ Լուացուած ջուրն էլ ածում է օճախը, իսկ շիշի միջի աւելացած ջուրը տալիս տնեցիներին պահելու, որպէս զի ապագային կարողանան «հարամոտած» ամաններն ու իրերը սրբել։ Նոյն միջոցին գալիս են և՛ սանամայրն ու ծննդկանի մայրը։ Առաջինը բերում է «ծնընդգեւաթ»—մեղրով ու շաքարով պատրաստուած ձուաձեղ—ծընընդկանի համար, իսկ երկրորդը մի ձեռք հագուստ նորածնի համար։

Վերջապէս քահանան «Լոյս 'ի լուսոյ» շարականը երգե-

լով առաջնորդում է կնքահօրը, որ երեխան բազուկների վրայ առած բերում է տուն և տալիս ծննդկանին։ Սա համբուրում է կնքահօր ձեռքը և ապա առնում երեխան։ Քահանան իւր «Պահպանիչը» աւարտելուց յետոյ շնորհաւորում է հետևեալ կերպով. «Շնորհաւոր մկրտութիւն, Աստուած տըւել է, ամուր ձեռօք պահէ, հօրով, մօրով ու բախտաւոր զաւակ լինի. այն հացիցն ուտէ, որ ոչ հատնէ, ոչ պակասէ»։ Յետոյ դառնալով ներկայ եղողներին՝ ասում է. «Ես ձեզ համար մի մեռոնաթաթախ երեխայ բերի, որով ամենքդ էլ ուրախ էք. դէհ, եկէք տեսնեմ դուք ինձ ինչ էք տալու, որ ես էլ ուրախանամ»։ Նախ ծննդկանը, և ապա կնքահայրն ու հանդիսականները համբուրում են խաչը և խաչհամբոյր ձգում։ Սրանից յետոյ բոլորը նստում են ճաշելու, օրուայ որ ժամանակն էլ լինի, միևնոյն է, որից յետոյ արդէն՝ ցըրւում են։

Երեք օրից յետոյ տատմայրը նորից է գալիս և «երեխայի մեռոնը վեր անում»։ Քթի տակը աղօթքներ շշնջալով՝ լուանում է երեխայի մեռոն քսած տեղերը մի մաքուր ամանի մէջ, յետոյ լողացնում է նրան մաքուր ջրով, առանց սապոնի, և ջուրը ածում թոնիրը։ Սրանից յետոյ արդէն՝ նա իւր վարձն ստանում և գնում է։ Այնուհետև տնեցիներն են մինչև քառասունքը լրանալը երեխային օրը մի անգամ լողցնում։

Մի քանի օրից էլ ծննդկանն է վեր կենում։ Առաջին անգամ ոտը գետնին դնելիս նա երեք անգամ խաչակնքում է երեսը և աղօթքներ շշնջում։ Սակայն մինչև քառասունքը լրանալը նա տանից դուրս չի գալիս, արեգակի երես չի տեսնում, ո՛չ լողանում է և ո՛չ էլ գլուխը լուանում, այլ ամբողջ ժամանակը զբաղուած է նորածնի հոգսով, այսպէս՝ երբ տան մօտով ննջեցեալ են անցկացնում, իսկոյն ինքը կանգնում և երեխային էլ բարձրացնում է. երբ մի ուրիշ ծննդկան և կամ մի կասկածելի տնձնաւորութիւն է գալիս ծննդկանի ննջարանը, նա չի թողլ տալիս նրանց ներս մըտնելու, մինչև որ նորածնին դուրս չի հանել տալիս և ա-

պա ներս բերում։ Եւ եթէ նա այդպէս չի վարւում, երեխան «կոխւում» է, այսինքն սաստիկ լղարում է և միշտ լալիս է։ Այսպիսի հիւանդութիւնից բժշկելու համար նրան լողացնում են կատուի ձագի և կամ հօր գուլպաների վերայ, և եթէ սրանք չեն օգնում, տանում մի սպանուած մարդու գերեզմանի վրայ երեխայի ոտները լուանում են, յետոյ գերեզմանի քարերից մինը վերցնում և երեխայի վրայով երեք անգամ պտտեցնում են և վերջը մի ձու և մի մեխ թաղում գերեզմանի մօտ, որպէս զի հիւանդութիւնը այնտեղ մնայ։

Քառասունքը լրանալիս ծննդկանը լողանում և գլուխը լուանում է ծղօտի վրայ։ Յետոյ այս ծղօտը վառում են, որպէս զի քաշքերի հետքերը կտրեն։ Ապա նախ օրօրոցը, յետոյ երեխային և վերջը ծննդկանին դուրս են հանում տնից և «արևի երեսն դուրս բերում»։ Երեկոյին հաւաքւում են բարեկամներն ու հարևանները և նրան ու երեխային եկեղեցի տանում, ուր քահանան կատարում է քառասունքի ծէսը։ Այնուհետև արդէն ծննդկանը ազատօրէն կարող է դուրս գալ տնից։

Երեխայի եղունգները առաջին անգամ ոսկու կամ արծաթի վրայ են կտրում, որպէսզի նրա մատները միշտ ոսկու և արծաթի մէջ լինին։

Եւ երբ երեխայի առաջին ատամները երևում են, մայրը «կճեխաշ» է անում.—եփում է ցորեն, լոբի, նոխուդ (սիսեռ), բակլայ և հետը խառնում կաղին, քիշմիշ, լոբլաբու։ Յետոյ նստեցնում է երեխային մի սփռոցի վրայ և առաջը մի դանակ և մի հայելի դնում։ Ուրիշ փոքրիկ երեխաներ էլ կանչում նստեցնում է այդ երեխայի շուրջը և պատրաստուած կճեխաշը ածում ատամ հանող երեխայի գըլխին։ Մինչդեռ երեխաները խլխլելով կճեխաշը ուտում են, մայրը դիտում է, թէ իւր ուդին նախ դանակը, թէ հայելին է վերցնում, որովհետև եթէ առաջինը վերցնի, ապագայում մի եղբայր է ունենալու, իսկ եթէ երկրորդը՝ մի քոյր։

Յ. Վ.

---

# ԸՆՏԱՆԵԿԱՆ ԿԵԱՆՔ

Ընտանիքի մէջ ամենից յարգուածը մայրն է։ Մօր անմիջական իրաւասութեան տակ է գտնւում ընտանիքի ներքին կառավարութիւնը, ընտանիքի ղեկը։ Նա վերին աստիճանի աշխատասէր է և գործունեայ, իւր անձնական օրինակով նա ազդում է ընտանիքի միւս անդամների վրայ։ Մայրը միաժամանակ հրամայում է հարսներին, աղջիկներին, թոռներին և թէ հասակն առած, ամուսնացած որդիներին։ Ընտանիքի մէջ ոչինչ ծածուկ չէ նրանից. նրա սուր աչքը տեսնում է ամէն ինչ. նա գիտէ ամէն մի գաղտնիք, բայց և վերին աստիճանի գաղտնապահ է։ Նա դէպի իւր ամուսինը շատ զգոյշ է և միմիայն ամենակարևոր տեղեկութիւններն է հաղորդում կամ նրա հետ խորհրդակցում։ Այդ պատճառով ընտանիքի անդամները իրենց կարիքները կամ սրտի դարդերը համարձակ յայտնում են մօրը, հաստատ հաւատացած լինելով, որ տան միւս անդամները չեն իմանալ այդ։

Հայրը այստեղ համարւում է մի հիւր, կամ աւելի լաւ է ասել, մի մշակ, որ աշխատում է դրսում, լցնում է տունը ամէն տեսակ բարիքներով, այդ բոլորը յանձնում է կնոջը և հաշիւ չէ պահանջում ընտանիքում տեղի ունեցող ծախսերի մասին, հաստատ հաւատացած լինելով, որ կինը աւելի ժլատ է քան ինքը։ Սակայն հայրը տան մէջ մի խորհրդաւոր անձնաւորութիւն է, նրա տան եղած ժամանակ ընտանիքում տիրում է սրբազան լռութիւն, հարսները ծածկում են երեսները, աղջկերքը քաշւում են մի անկիւն և իրենց բանին կենում, ամուսնացած տղամարդիկ իսկոյն հեռացնում են իրենցից զաւակներին, որպէս զի հայրը չտեսնէ և նախատէ *)։

---

*) Որդին կամ հարսը մեծ ամօթ են համարում հօր ներկայութեամբ երեխային գրկել և գգուել, ուստի նրա ներս գալուն պէս երեխային յանձնում են տան պառաւին կամ աղջկան։

Հօր ու մօր այս յարգանքը տևում է մինչև նրանց ծերութիւնը։ Հետզհետէ ծերանալով նրանք կորցնում են և իրենց դերքը։ Որդիներն այլ ևս չեն լսում ծնողներին։ Հարսները ջողաբ (խօսքին-խօսք բերել) են տալիս, շատ անգամ ծաղրում, ծիծաղում։ Նոյն իսկ ամենաբռնակալ հայրը ծերանալով և ուժից ընկնելով, խոնարհւում, մեղմանում է և ակնածում որդիներից ու հարսներից։



Վարանդեցի հայ կին

Հօրն ու մօրը քիչ ու շատ յարգում են այն ժամանակ, երբ երկուսն էլ կենդանի են։ Նրանց կենդանութեան ժամանակ որդիները կամ հարսները ոչ մի դժգոհութեան նշան չեն ցոյց տալիս։ Իսկ մէկը կամ միւսը դրանցից պակասելով, կարծես պակասում է և կենդանի մնացածի յարգանքն ու իրաւունքը։ Այս է պատճառը, որ ծերունիները

յաճախ կրկնում են «Աստուած, էնքան մեր խեղանը պահիս, հը քորանը ես մեռնիմ, հարսին նան տղի ումուդ չընդնիմ»։

Կինն էլ ասում է ամուսնուն. «Քու շոքը ոչ պըկասի իմ գլխան. թա չէ տղերքդ նան հարսներդ ինձ սաղ սաղ կուլ կտան»։

Աշխատանքի անընդունակ մարդուն տան անդամները հաւասարապէս ատում են, նրա գոյութիւնը ձանձրոյթ է պատճառում ամեն մի անդամին։ Մանաւանդ վերջինիս գոյութիւնն անտանելի է, երբ իրենց կենդանութեան ժամանակ ընտանիքի անդամներից մի ջահիլը մեռնում է։ Ամէնքը կշտամբում են ծերունուն, ամէնքն էլ վրան գոռում են. «Քաւթառ գըլխակեր, էնքան կըննական ըս, որ լոխչիս գըլխըներն օտիս ետաւ գիօրըագիօռ ընիս»։ Խեղճ ծերունին ակամայից լռում է և ոչինչ չի պատասխանում, կարծես ինքն էլ խոստովանում է, որ շատ է ապրել։

Սովորութիւն կայ, երբ այդ տեսակ երկարակեաց ծերունին մեռնում է և եթէ նրա մահից յետոյ ընտանիքի անդամներից մէկն ու մէկը հիւանդանում է, գնում են մեռած ծերունու գերեզմանը փորում, գլուխը մարմնից բաժանում և աչքի մէջ մի փայտ տնկում, որպէս զի հիւանդն էլ չմեռնի։ Ասում են իբրև թէ աչքը տան վրայ է գնացել և մինչև ընտանիքի անդամներից մէկին չտանի, չի հանգըստանալ։ Գլուխը մարմնից բաժանելով իբրև թէ ազատւում են այդ փորձանքից։

Հօր մահից յետոյ ընտանիքի կառավարութեան ղեկը անմիջապէս անցնում է մեծ որդուն. եթէ վերջինս չունի ոչ մի պակասութիւն և շատ փորձուած է, իսկ եթէ անընդունակ է և գիրք չունի թէ տանը և թէ հասարակութեան մէջ, այս դէպքում կառավարութիւնն անցնում է միւս եղբայրներից ամենից ընդունակի ձեռքը։

Ընտանիքի գլուխը հօր մահից յետոյ համարւում է մեծ որդին, թէև չունի այն լայնածաւալ իրաւունքները, ինչ որ հայրն ունէր։ Մեծ եղբայրը յարգուած է ընտանիքի անդամներից հաւասարապէս։ Նա միմիայն կատարում է թեթև աշ-

*խատանքներ և տարուայ մեծ մասը տանն է լինում։*

*Այնուհետև նա համարւում է հասարակութեան մի պատուաւոր անդամ (աղսախկալ) և միջամտում է հասարակական գործերում։ Նա հագնում է պատշաճաւոր և մաքուր և որ գլխաւորն է՝ չինամէջ (չնամաչ) դուրս գալիս հագած պիտի լինի կօշիկներ (չմշկներ), որից զրկուած են միւս եղբայրները։*

---

## ԱԶԳԱԿՑՈՒԹԵԱՆ ԱՍՏԻՃԱՆՆԵՐ

| | | |
|---|---|---|
| *Տատի մօրը* | *ասում են—* | *Պապունց ալան։* |
| *Տատին* | » | *Տատի, ալան, մեծաղի, նանի։* |
| *Մօրը* | » | *ազի, աքա, սիրուն նան, կամ ուղղակի տալիս են անունը։* |
| *Հօրեղբօրը* | » | *Ամի, պիծ ամի, ղիզ ամի։* |
| *Հօր եղբօր կնոջը* | » | *Հարս, աքեր, հասի* |
| *Մօր եղբօր կնոջը* | » | *Քուակին։* |
| *Մօր եղբօրը* | » | *Դայի, քեռի։* |
| *Հօրաքրոջը* | » | *Հաքուր, աքեր կամ տալիս են անունը։* |
| *Մօրաքրոջը* | » | *Մաքուր, աքեր և անունը։* |
| *Քրոջը* | » | *Բաջի, աքուր կամ անունը։* |
| *Եղբայրը եղբօրը* | » | *Բաբա, ապա, ապեր, օր. Մակիչ բաբա, պիծ ապա, մեծ ապա։* |
| *Կնքահօրը* | » | *Պելի, խըչաղբեր։* |
| *Կնքամօրը* | » | *Պլակին, սընամար։* |

## Խ Ն Ա Մ Ո Ւ Ն Ք

| | | |
|---|---|---|
| *Կնոջ հայրը* | *կոչւում է—* | *Աներ, հաներ։* |
| *Կնոջ մայրը* | » | *Զոքանչ, զընքուջ։* |
| *Ամուսնու հայրը* | » | *Պատրոն։* |
| *Ամուսնու մայրը* | » | *Սկեսուր։* |
| *Ամուսնու եղբայրը* | » | *Տեգր, Տագըր։* |
| *Ամուսնու քոյրը* | » | *Տալ։* |

Ամուսնու եղբօր կինը կոչւում է—Տըգրակին.
Կնոջ քոյրը » Քենի.
Կնոջ եղբայրը » Հընըր տղայ.
Կնոջ քրոջ մարդը » Բաջանաղ.

Հարսի համար ամուսնու ազգականները կոչւում են պատրոնենք, իսկ փեսայի համար հարսի բարեկամները աներանք.

Կինը ամուսնու մասին խօսելիս, սկեսրոջ առաջ կոչւում է՝ տղադ. տալին՝ քու ախպէր, տեգրկնոջ՝ քու տագրը, իր ծնողների առաջ՝ փեսադ, ուրիշների առաջ՝ ինքը, մեր մարդը, մեր հայը, մեր տղամարդը, Առաքելին հարը (որդու անունով), Սընամանց տղան (ազգանունով), իմ տէրը և այլն, իրեն կոչւում է աղա.

Ամուսինը կնոջը կոչւում է, իր ծնողների առաջ՝ հարսը, կամ ծագումով, օր. Բըղդըսարէն Թոռնը, Գեւուն աղջիկը. Աներոջ մօտ՝ աղջիկդ, օտարների առաջ՝ մեր խիզանը. մեր տանըցին, կողակիցս այս ինչի Թոռը կամ աղջիկը, կնոջը՝ ախչի.

Ընդհանրապէս Վարանդայում գերդաստանները բազմանդամ չեն։ Շատ հազիւ է պատահում, որ մի քանի եղբայրներ երկար ժամանակ միևնոյն յարկի տակ միասին ապրեն։ Եղբայրները ամուսնանալուց կարճ ժամանակ յետոյ բաժանւում, նոր գերդաստան են կազմում։ Ծնողները ապրում են կամ ամուրի կամ նոր ամուսնացած որդու մօտ։ Բազմանդամ են լինում միմիայն երկրագործութեամբ պարապող ընտանիքները և սա էլ ունի իւր յարգելի պատճառը։ Երկրագործութեամբ պարապելու համար հարկաւոր են շատ աշխատաւոր ձեռքեր, ուստի եղբայրները ստիպուած ապրում են անբաժան։

Բաժանուելու գլխաւոր պատճառը տեգրկնիկներն են լինում։ Վերջիններս ապրում են միմեանց հետ շատ անհաշտ. օր չի լինիլ, որ մի որև է պատճառով երկու տեգրկնիկ միմեանց հետ չկռուեն, մանաւանդ վերջիններիս մէջ շատ զարգացած է նախանձը, այսպէս օրինակ ասում են. «տեգրակինը տեգրակընկան օձին ծակին կօզի», այսինքն չի ուզենալ, որ նա բաղդաւոր և ուրախ ապրի, այլ միշտ նեղութեան և թշուառութեան մէջ։ Բազմաթիւ օրինակներից առաջ բերենք ժողովրդական մի ասացուածք, որը շատ պարզ

բնորոշում է ընտանիքի անդամները միմեանց հետ ունեցած յարաբերութեան չափը։

Պատմում են, իբրև թէ մի հարս հիւանդ ժամանակ աղերսական ձայնով դիմում է ընտանիքի անդամներին և մի գդալ ջուր ուզում՝ ասելով.

Սկեսուր, սկեսուր, սկսրհան
Սերտս էրեց մի գդոլ ջուր.

—

Պատրոն, պատրոն, պտրհան (պահարան),
Սերտս էրեց մի գդոլ ջուր.

—

Տալիկ, տալիկ, սեւ սալիկ
Սերտս էրեց մի գդոլ ջուր.

—

Տեգրակին, տեգրակին, օձին ծակին
Սերտս էրեց մի գդոլ ջուր.

—

Նշանած, նշանած, Ըստըծու խըզըհանած
Սերտս էրեց մի գդոլ ջուր։

Սակայն այնքան քարեսիրտ են լինում, որ ոչ մէկը դրանցից ջուր չի տալիս իրեն մինչև ամուսինը գալիս է և հիւանդը դիմում է նրան ու ջուր խնդրում։ Ամուսինը տալիս է ջուրը և նա խմելուն պէս մեռնում է։ Այստեղից երևում է, որ ընտանիքի մէջ ամենից սիրելին իր ամուսինն է։

Յաճախ սկեսրոջ և հարսերի մէջ կռիւներ են պատահում, որ շատ անգամ տուր ու դմբոցով է վերջանում։

Կռուի պատճառները լինում են.

Ա. Երբ սկեսուրը մի հարսին աւելի է սիրում, յարգում և պաշտպանում քան միւսին։

Բ. Երբ մի թոռան սիրում է աւելի քան միւսին, մայրական խնամք է տանում, լաւ հագցնում է և իւր «ազիզ բալա», այսինքն միակ սիրելի որդի է կոչում։ Միւս մայրերը նախանձում և սկեսրոջ հետ կռւում են։

Դ. Երբ մի հարս շատ աղջիկ է բերում։ Այս դէպքում ոչ թէ միայն սկեսուրն է հարսի հետ կռւում և նրան սկսում ատել, այլև ընտանիքի միւս անդամները, մինչև անգամ իւր ամուսինը սկսում են վատ աչքով նայել նրան և կծու խօսքերով սիրտը խոցոտել։ Սկեսուրն անտանելի հայհոյանքներ, անէծք է թափում հարսի գլխին. «Քու հօր տօնը պրիշակ մնայ, խօխէս տօնը քընդըլական ը՞սս»։ Աչքալոյս, կերուխում, կնունքի խնջոյք տեղի չեն ունենում այս դէպքում։ Բարեկամները, աչքալոյսի փոխարէն, մխիթարում են ծնողներին. «Աստուծ ձեզ պահի, վնաս չօնի, եկող տարի էլ մի ղոչ տղայ կը բերիս»։ Խեղճ կինը կարծես մահուան ոճիր գործած, լսում է իւր դատավճիռը և լռութեամբ տանում ընդհանուրի այդ նախատինքը։

Վարանդայում աղջիկ բերելը մի դժբաղդութիւն է համարւում։ Շատ դէպքեր են պատահել, որ մի քանի աղջիկ բերող կնոջ դուրս են արել տանից։

Աղջիկը ծնուած օրից մինչև իր մահը ծնողների համար մի ծանր բեռ, մի մեծ հոգս է մանաւանդ աղքատ ընտանիքների համար. պատահում է, որ աղջկերքը սնանկացնում և վերջին չքաւորութեան մէջ են ձգում իրենց ծնողներին։

Ծնողները ստիպուած են աղջիկներին լաւ հագցնել և հագուստի վրայից կախել արծաթէ կամ ոսկէ դրամներ ամենաքիչը 20—30 ր. արժողութեամբ, այդ դրամները աղջիկը պսակուելիս տանում է իւր հետ։ Վարանդայում աղջիկը շատ վաղ է նշանւում, համարեա 5—6 տարեկան հասակում շատերին նոյն իսկ օրօրոցում են նշան դնում (օրօրոցը խազում)։ Նշանած մնում են 6—7 երբեմն աւել տարիներ։ Այսքան երկար ժամանակամիջոցում երկու կողմի խնամիները միմեանց հետ բարեկամութիւն են անում, փոխադարձաբար միմեանց հիւրասիրելով և օգնելով։ Բայց ծանրութիւնը ընկած է աւելի աղջկայ ծնողների վրայ։

Աղջկայ ծնողները յաճախ հրաւիրում և հիւրասիրում են փեսայի ծնողներին կամ բարեկամներին։

Ամէն նշանաւոր տօն օր ստիպուած «խօնչա» են ուղարկում խնամոնց տուն, որը բաղկացած է լինում գլխաւորապէս գաթալից, հալուալից, հաւերից, մեղրից, գինուց, արաղից և այլն, արժողութեամբ 1—3 ռուբլի։ Խնամոնց կողմի բարեկամներից եթէ մէկը պսակուելու լինի, աղջկայ տէրը պէտք է «խօնչա» տանի, «խալաթ» տայ և հարսանիքի ժամանակ «կանչ» (դրամական նպաստ) անի։ Այս բոլորը մօտաւորապէս արժենում է 10—15 ր.։ Բացի դրանից աղջկայ տէրը օգնում է իւր խնամուն վարելու, ցանելու, հնձելու, կալսելու և այլ ժամանակ. իսկ կանայք բուրդ գզելու, մանելու, գործելու կամ թէ թուլթ թափելու, արտը քաղհանելու ժամանակ առանց վարձատրութեան հաւասար աշխատում են խնամոնց հետ։ Այսքանը մինչև հարսանիքն է։ Հարսանիքի ժամանակ աղջկայ ծնողները բաւականին ծախք են անում, լաւ բաժինք և փեսային արծաթէ գօտի խալաթ են տալիս, իսկ փոխարէնը շատ չնչին կանչ են վերցնում։

Վերև յիշածներիցս պարզ երևում է, թէ որքան ահագին ծախք են անում ծնողները և այդ բոլորը դեռ մէկի համար. իսկ եթէ ենթադրենք թէ մէկի փոխարէն մի քանիսն են, այն ժամանակ երևակայելի է ծնողների դրութիւնը։ Պատահում է, որ միաժամանակ նշան են դնում մէկ, երկու և երբեմն երեք աղջկայ և ծնողները ստիպուած են լինում երեք տան հետ բարեկամութիւն անել։

Այս է պատճառը, որ Վարանդայում աղջիկ բերելը տնաքանդութիւն է համարւում և յաճախ կռիւների պատճառ դառնում։ Ընդհակառակը, երբ հարսը տղայ է բերում, ամբողջ ընտանիքում ցնծութիւն և ուրախութիւն է կատարւում, տեղի են ունենում աչքալուսանք, խնջոյք, կերուխում։ Տղաբեր հարսին զանազան խալաթներ են տալիս. «Մէջքդ կանանչ կենայ» կրկնում է ամէն մի եկող։ Սկեսուրը տղաբեր հարսին խնամում է և լաւ կերակրում։ Սկեսրոջ այդ վարմունքը միւս հարսերի նախանձը շարժում է և կռուի պատճառ է դառնում։

Դ. Չքաւորութեան պատճառով էլ կռիւներ են ծագում

հարսի և սկեսրոջ մէջ։ Երբ հարսը չբերք է, սկեսուրը այս դէպքում աւելի չարանում և շարունակ անիծում է։ «Ծոխդ կտրէ հունց վէր իմ խօխէն ծոխը կտրեցիր, ա՛լ չոր տառեխ»։ Անէծքը դեռ բաւական չէ, երբեմն էլ հարսին դուրս են անում տանից, փոխարէնը ուրիշ հարս կամ աղջիկ բերելով, կամ թէ խղճում են և չեն ուզում տանից դուրս անել, միայն երկրորդ կին են բերում, որպէս զի երեխայ բերի և որդին անժառանգ չմնայ *)։ Երկրորդ կնոջ երևան գալը պատճառ է դառնում կռիւների ու տուրուդմբոցի, որ տեղի է ունենում ապօրինի և հարազատ կնոջ միջև, կամ թէ սկեսրոջ հետ։ Վերջինս աւելի պատւում, մեծարում է ապօրինի հարսին և ընդհակառակը հարազատ հարսից միշտ գանգատւում է որդուն։ Այստեղից յառաջանում է անվերջ կռիւներ և երկպառակութիւններ։ Հարազատ կինը այլ ևս չկարողանալով տանել այդքան զրկանք ու նախատինք, թողնում ու հեռանում է։

Ե. Հարսի ծածուկ մի տեղ գնալը կամ մի բան ուտելը, իւր պարտականութեան մէջ ճշտապահ չլինելը կամ վերջապէս օտար մարդու հետ խօսելը կռիւների պատճառ են դառնում։

Սկեսուրը հարսի հետ կռուելիս անտանելի հայհոյանքներ է թափում, գլխաւորապէս ծնողների հասցէին, օր. «Քա մօր մազարը կտրէ, որ քեզ նմանը ինձանաւ քցից». «Քու հար շոն դառնայ». «Քա մօր մարդը մեռնի»։ Հարսը լսում է այդ բոլորը և համբերում, նա ոչ մի դժգոհութեան նշան ցոյց չէ տալիս, մանաւանդ երբ նորահարս է։ Մի քանի տարուայ հարսը այդ տեսակ դէպքում կամ քթի տակին

---

*) Պատահում է երբեմն մինչև չորս կին են պահում, միայն թէ երեխայ ունենան։

Թաղլար գիւղում մի դարբին, որ ունէր մեծ հարստութիւն, պահում էր չորս կին, բայց ոչ մէկից երեխայ չունէր. փորձում է բերել հինգերորդը։ Այս վերջինը յղանում է, բայց դարբնի բարեկամները կամենալով նրա հարստութեան տիրանալ, յղի կնոջը խեղդում են և խեղճ դարբնին թողնում անժառանգ։

փնթփնթում է և դրանով արտայայտում իւր դժգոհութիւնը կամ ուղղակի պատասխանը դարձնում է և սկեսրոջ հայհոյում։

Ընդհանրապէս հարսերը շատ ամօթխած և համբերատար են լինում։ Սկեսրոջ անտանելի վարմունքը, զրկանքը, անէծքն ու ծեծը հարսը լռելեայն տանում է և ոչնչով չի փոխարինում, միայն, ինչպէս ասում են, «դանակը ոսկրին» հասնելուց յետոյ, այլ ևս չի համբերում և «ջողաբ» է տալիս։ Պատճառ որ Վարանդայում աղջիկը շատ շուտ են մարդու տալիս։ 13 տարեկան հասակում ամուսնանալը սովորական երևոյթ է այստեղ։ Մատաղ հասակում աղջիկը զրկուելով ծնողների խնամակալութիւնից և ընկնելով իրեն բոլորովին անծանօթ մի ընտանիք, կորցնում է իւր ազատութիւնը և համարձակութիւնը։ Նա դատապարտւում է լռութեան և անվերջ համբերութեան։ Սկեսուրը հայհոյում է, մազերը քաշում, մինչև անգամ ծեծում, հարսը համբերում է և չի համարձակւում ամուսնուն գանգատուել, իսկ եթէ փորձում է գանգատուել, փոխարէնը կամ հայհոյանք և կամ ծեծ է ստանում։ Մինչև անգամ, երբ աղջիկը յուսահատուած դիմում է իւր ծնողներին և իւր վիճակի մասին գանգատւում, վերջիններս ոչ միայն չեն ուզում լսել նրա գանգատը, այլև նախատելով յետ են ուղարկում սկեսրանց տուն, առարկելով, թէ հարսը պէտք է համբերէ։

Հարսը բացի տեգրկնիկների և տալերի հետ խօսելուց, ուրիշների հետ երկար ժամանակ անխօս է մնում։

Սկեսուրի հետ չի խօսում մինչև երեխայ բերելը *)։ Կեսրարի հետ մինչև մահը, իսկ եթէ սա ցանկանում է, որ հարսը իւր հետ խօսի, մի ընծայ է տալիս և հետը

*) Պատմում են, թէ Նոյի կինը հարցրել է իւր հարսներին, թէ ինչո՞ւ թոնիրը չեն վառել. սրանցից մինն էլ պատասխանել է, թէ թոնրի միջից ջուր է դուրս գալիս։ Աստուծուն շատ անհաճոյ է եղել, որ հարսը համարձակուել է սկեսուրի հետ խօսել, ուստի և՛ հրամայել է, որ տակից ջուրը բարձրանայ և ջրհեղեղ լինի։ Պատմող կինը սաստիկ յարձակւում էր շուշեցի հարսների վրայ, որոնք խօսում են իրենց սկեսուրների հետ։

Ծան. Խմբ.

խոսեցնում, բայց դա լինում է այն ժամանակ, երբ հարսը տղային կամ աղջկանը պսակում է։

Տեգրի հետ մնում է անխոս մինչև 10 տարի և խոսում է միմիայն տեգրի հաճութեամբ. կնքահօր հետ մինչև մահը, կնքահօր կողմի բարեկամներից ամենափոքր երեխայի հետ նոյն իսկ անխոս է մնում։

Գերդաստանի մէջ ամենից շատ կռւում են տեգրկնիկները։

Կռիւը ծագում է հետևեալ պատճառներից.

Երբ մէկը իւր երեխայի համար նոր հագուստ է կարում, միւսը ոչ, մանաւանդ երբ հարսներից մէկը երեխայ չի ունենում և պահանջում է, որ նոր կտորից իրեն ևս բաժին տան։

Երբ լուացքի ժամանակ մէկը շատ լուացք է անում, միւսը քիչ։

Երբ մէկին շատ են բանեցնում միւսին քիչ։

Երբ մէկը ճակատին ոսկէ դրամներ է շարում, միւսը ոչ։

Երբ տեգրկնիկը ծածուկ մի բան է կատարում և միւսները յայտնում են իրենց ծնողներին։ Երբ մէկի օժիտը շատ են բանեցնում, միւսինը քիչ։

Երբ մէկն ունենում է մի կամ մի քանի փեսայ և նրանց ծածուկ ուտեցնում, խմեցնում է։

Երբ մէկի ամուսինը ծածուկ սիրում է տեգրկնիկներից մէկին և ինքն իմանում է։

Կռուելու ժամանակ միմեանց հայհոյում են. «Պոչերդ կտրիմ». «Ծամերդ տըխտակին սանրիմ». «Աչքդ հըրթըլուսին մնայ, եոքդ ճըլկուորին փոսին». «Ծծերաւդ չանգալ ընկնիս». «Քանց ջուրը շատ քըրըքար կեաս». «Մին ծըկիս, հըզեր փքիս». «Հանց օրի կեաս, օրին ծննդականը թըմաշա կեայ»։

Ամուսինների մէջ ևս կռիւներ են պատահում, բայց ոչ այնքան սաէպ, սակայն նոյն ծեծը, նոյն կռիւը, նոյն հայհոյանքը տեղի է ունենում և այստեղ։

Առաւելապէս կռւում են

Երբ կինը ծածուկ սիրած է ունենում և ամուսինն իմանում է։

Երբ սկեսրոջ հետ «եօլա» չի գնում և սա գանգատւում է որդուն։

Երբ աղջկայ ծնողները խոստացած օժիտը չեն տալիս կամ ձգձգում են։

Երբ ամուսինը օտարութիւնից դառնալով իմանում է, որ կինն իրեն դաւաճանել է։

Երբ մարդն ուզում է կնոջ բերած գորգը կամ կապերտը ծախել և պարտքը տալ, կինը հակառակում է և թոյլ չէ տալիս։

Երբ ընտանիքի միւս անդամները շատ են վիրաւորում և վշտացնում կնոջը և վերջինս մի քանի անգամ գանգատւում է ամուսնուն և բաւականութիւն չստանալով թողնում, գնում է հօրանց տուն։

Ամուսինը գնում է մի կերպ համոզելու և տուն բերելու, կինը դիմադարձութիւն է անում և չի համաձայնւում, այստեղ ամուսինը դիմում է ծեծի և բռնութեամբ տուն բերում։

Աշխատանքն ընդհանրապէս ընտանիքի անդամների մէջ չէ բաժանուած։ Բուրդ գզել, մանել, գորգ ու կապերտ գործել, այս և սոյնանման գործեր կատարում են միասին և ոչ ոքի մասը որոշուած չէ։ Որոշուած են միմիայն հետևեալ աշխատութիւնները.

Կերակուր եփելը և հաց թխելը սկեսրոջ պարտքն է. տուն աւլելն ու ջուր բերելը աղջիկն է կատարում, տղամարդկանց գլուխն ու ոտները լուանում է հարսներից փոքրագոյնը, իսկ կով կթել, խնոցի հարել, խմոր հունցել և այլ նման գործեր կատարում են միւս հարսները։

Բայց վարանդացի կնոջ գործունէութիւնը դրանով չի վերջանում։ Բացի տնային գործեր կատարելուց նա օգնում է նաև իւր տղամարդին դաշտումը։

Գիւղացի կինը աշխատանքի տեսակէտից ոչնչով յետ չէ մնացել իւր ամուսնուց։ Նա կատարեալ տնտես է տան և

ժրաջան մշակ դաշտումը։ Տան աշխատանքը վերջացնելուց յետոյ, նա շտապում է դաշտը։ Պէտք է տեսնել, թէ ինչպէս նա մանգաղը ձեռին հնձում է արտը և խուրձեր կապում, խուրձերը կրում կալը, աշտն անում, կալը կալսում, թեղում, ցորենը շուատում, ջրաղաց տանում, ալիւր պատրաստում։ Արտը քաղհանում, խոտը հարում, չորացնում և դիզում։ Այդ դեռ բաւական չէ, այգում եւ թութ թափելիս կամ խաղող քաղելիս հաւասար աշխատում է իւր ամուսնու հետ։ Մինչև անգամ անտառ է գնում փայտ բերում, պտուղներ ժողովում։ Ահագին դագանակը ուսին տաւարը կամ ոչխարը պահում։ Մի խօսքով կինը գիւղացու համար իւր անբաժան ընկերը, իւր աջ կուռն է։ Նա մինչև անգամ կռուի ժամանակ ահագին դագանակը ձեռին պաշտպանում է իւր ամուսնուն։ Դաշտային աշխատանքն երբէք չի խանգարում գիւղացի կնոջ իւր տնային գործերը կատարելու։ Նա այդ բոլոր գործերի համար ժամանակ է գտնում։ Ուշ գիշերը, մինչդեռ ամէնքն օրուայ աշխատանքից յոգնած հանգիստ են առնում, կինը նստած ճրագի աղօտ լոյսի տակ կամ տղամարդի պատռոտած շորերն է կարկատում, կամ երեխաների համար գուլպայ գործում, պատռածը կարում, կեղտոտ շորերը լուանում, մաքրում։

Եթէ ժամերով որոշելու լինենք նրա աշխատութեան չափը, կարելի է ասել, որ նա ամառը բանում է օրեկան 18 ժամ, և հանգստանում է միմիայն 6 ժամ։ Գիւղացի կինը մինչև անգամ չի հանգստանում կիւրակէ և տօն օրերը։

Սակայն այդ բոլոր աշխատանքը նա կատարում է առանց յոգնելու, առանց մի փոքր տրտունջ յայտնելու։ Նա գիտէ, որ իւր ամուսինն այդքան աշխատութիւնը միայնակ չի կարող կատարել, ուստի օգնութեան է հասնում և ո՞վ կարող է ասել, թէ դա մի թոյլ արարած, մի քնքոյշ կին է։

Ամառը մարդու չափ աշխատում է, ձմեռը գործ ու կապերտ (որ շատ տարածուած է գաւառիս բնակիչների մէջ) է գործում, վաճառում, հարկ ու բեգառը վճարում, տան

կարիքները հոգում։ Այսքան մեծ է վարանդացի կնոջ կոչումը և աշխատանքը, բայց և այնպէս ոչ մէկը չի գանգատւում, այլ կատարում են միասին և սիրով։

---

## ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Բարոյականութիւնը հետզհետէ ընկնում է այս գաւառում։ Այժմ շատ գիւղերում, համարեա առանց բացառութեան, բոյն է դրել այդ վարակիչ ախտը և հետզհետէ տարածւում է շրջակայ բնակիչների մէջ։

Վարանդան, որ սրանից տասնեակ տարի առաջ ներկայացնում էր մի կուսական երկիր, ուր թագաւորում էր բարոյականութիւնն ու անարատ սէրը, այժմ նահապետական այդ պարզ ժողովուրդը սկսել է արդէն անբարոյականանալ։ Վարանդացի կինը, որ գիտէր հաշտուիլ ամէն տեսակ դառն պայմանների հետ և բացի իւր ամուսնուց ուրիշին չէր ճանաչում, այժմ սիրում է պճնուիլ և ջահելներին դուր գալ։ Անբարոյականութիւնը տարածուած է գլխաւորապէս Թաղավարդ, Աւետարանոց (Ջանախչի), Թաղլար, Գիշի, Ծարտար, Քաթուկ և Նախիջևանիկ գիւղերում։ Անբարոյականութեան տարածման գլխաւոր պատճառները կարելի է համարել, նախ՝ պանդխտութիւնը, որ սաստիկ տարածուած է գաւառիս բնակիչների մէջ։ Գլխաւորապէս պանդխտում են Բագու, Ղազախ, Պետրովսկ և Անդրկասպեան երկիրները։ Վարանդացուն տակաւին նոր ծանօթ այդ երկիրները, մանաւանդ Բագուն իւր նաւթահորերով գրաւել և գերել է իրեն։ Օտար երկրների հարստութիւնից շլացած, վարանդացին ծախում է իւր եզն ու գոմէշը, այգին ու արտը և դիմում հարստութեան ու ախտերի այդ բոյները։ Տարիներով նա քաշքաշւում է այդտեղ, երեսի վրայ թողնելով ջահել կնոջն ու երեխաներին։ Նա գրաււում է օտար աշխարհի գեղխ կեանքով, ընկնում է այդ հոսանքի մէջ և վերջ ի

վերջոյ կամ կուլ է գնում, կամ թէ չոր կմախք դարձած ու զանազան ախտերով վարակուած տուն դառնում։ Խեղճ կինը տարիներով սպասում է իւր ամուսնու վերադարձին, համբերութեամբ տանում է ամէն տեսակ զրկանք, նա քամում է դառնութեան բաժակը մինչև վերջին կաթիլը, միայն թէ չի ուզում դաւաճանել իւր ամուսնուն, նրան, որի հետ կապել է իւր բաղդը, իւր պատիւն ու կեանքը։

Սակայն բնութեան այս թոյլ արարածը երկար չի կարողանում դիմանալ։ Շարունակ լուրեր է լսում, իբրև թէ իւր ամուսինը օտար կին է պահում և մտադիր չէ տուն դառնալու, կամ թէ թղթախաղով և արբեցողութեամբ վատնում է իւր վերջին կոպէկը։

Այդ տեսակ աննպաստ լուրերը, ամուսնու անտարբերութիւնը դէպի իւր ընտանիքը, քաղցը և վերջապէս կրքերը դուրս են հանում կնոջ իւր առագաստից և ձգում փողոց։ Անօգնական կինը որոնում է իւր բաղդը առաջի հանդիպած մարդու մէջ և ակամայից զոհւում....։

Բ. *Երկրի դիրքը:* Առհասարակ նկատուած է, որ այգեշատ տեղերում շատ է տարածուած անբարոյականութիւնը։

Գ. *Գործարանները:* Սա կարելի է համարել անբարոյականութեան բուն աղբիւրը։ Վարանդայի շատ գիւղերում կան մետաքսի գործարաններ, ուր տղայ և աղջիկ թուով մօտ 100 բանում են միասին։ Հսկողութիւնն այստեղ շատ թոյլ է, մանաւանդ, որ գործակատարները նոյնպէս ջահել և ամուրի երիտասարդներ են լինում։

Ազատ ծնողների հսկողութիւնից՝ աղջիկները պարում, խօսում և կատակներ են անում տղաների հետ և հետեւանքն այն է լինում, որ ճարպիկ տղաները շատ հեշտութեամբ կարողանում են մոլորեցնել աղջիկներին։ Գործարանն ունի մի առանձին բաժանմունք, որտեղ բանում են միմիայն պառաւ կանայք. այդ պառաւները նոյնպէս մեծ դեր են խաղում աղջիկների մոլորեցնելու գործում՝ միջնորդի դեր կատարելով։

Դ. Ներկարարները, որոնց խանութը կանայք ազատ մուտք են գործում։

Ե. Մանրավաճառները, որոնք շարունակ տնէ-տուն շըր-ջում են և առևտուր անում, գլխաւորապէս կանանց հետ։

Զ. Տատմայրները, որոնք միջնորդի դեր են խաղում և շատ անգամ մոլորեցնում կանանց։

Է. Տեղային երաժիշտները։

Ը. Զօրքը։

Կանայք ևս նպաստում են անբարոյականութեան տա-րածման։

Վարանդայում գլխաւորապէս ջահել աղջիկներին ամուս-նացնում են հասակն առած մարդու հետ և երբ կինը հաս-նում է իւր արբունքին, մարդն արդէն ծերացած է լինում և սա պատճառ է դառնում կնոջ շեղուելու ճանապարհից և սիրելու աւելի ջահելներին։

Գիւղի ջահելները զանազան միջոցներով աշխատում են գեղեցիկ հարսներին ձեռք ձգել, մանաւանդ երբ վերջիննե-րիս ամուսինները բացակայում են գիւղից։ Ջահելները մի տեսակ պարծանք և քաջութիւն են համարում, որ կարո-ղացան այս ինչ կնոջն որսալ, նոյն իսկ պարծանքով պատ-մում են իրենց շրջանում։

Եթէ տղամարդն ուզում է մի հարսի ձեռք ձգել, մի առանձին տեղ հանդիպելիս աչքով է անում *)։

Եթէ կինը նոյնպիսի նշանով պատասխանում է, նշա-նակում է համաձայն է, և այնուհետև որոշում են տեսակ-ցութեան տեղը և ժամանակը։

Պատահում է, որ կինն է մոլորեցնում տղամարդին, այս դէպքում կինը նրան ծաղրում, զանազան ակնարկներ է անում, հայհոյում է, կամ տեսնելիս ճմլկոտում է և կամ թուելով տղամարդի զանազան պակասութիւնները, նրան բար-կացնում է։ Այս տեսակ միջոցներով կինը յայտնում է իւր

*) Աչքով անել՝ նշանակում է ձախ աչքի կոպերը միմեանց մօտեցնել և ապա բանալ, որով արտայայտում են իրենց սէրը։

ցանկութիւնը, եթէ տղամարդին դուր է գալիս՝ առիթ է տալիս շարունակելու և խօսակցութիւնը հետզհետէ փոխւում է սիրային ակնարկների և ապա որոշւում են տեսակցութեան տեղը։ Իսկ եթէ տղամարդին դուր չէ գալիս կնոջ ակնարկները, մի սուր նկատողութեամբ վերջ է տալիս խօսակցութեանն և հեռանում։

Տեսակցութեան տեղերը լինում են գետերը, ուր կանայք գնում են լուացք անելու և երկու սիրահարներ նշանակած տեղը միմեանց հետ տեսակցում են։

Անտառները՝ ուր տղամարդիկ և կանայք գնում են պտուղներ ժողովելու։

Ուխտատեղիները, ուր մի քանի ընտանիք գիշերում են մի վրանի տակ։

Արտերը, ուր գնում են քաղհանելու։

Ջրաղացները։

Տները։ Այրի կամ ամուսինն օտարութիւն գնացած կանայք սիրածի հետ շատ անգամ տեսակցութիւն են ունենում հէնց իրենց տներում, երբ արգելք չկայ։

Սիրահարական դէպքեր Վարանդայում հազիւ են պատահում։ Գլխաւորապէս սիրահարութիւններ տեղի են ունենում քիչ ու շատ հոգսերից ազատ երիտասարդների և հասուն առած աղջիկների մէջ։

Երկու սիրահարներ իրենց սէրը թագցնում են ամէնքից, նոյն իսկ իրենց ծնողներից, որովհետև դէպի այդ տեսակները ժողովուրդը զզուանքով է վերաբերւում և երես առած են անուանում։ Այդ է պատճառը, որ շատ անգամ այդ տեսակ սիրահարութեան վերջը եղերական է լինում։ Պատճառ՝ ծնողները բոլորովին անտեղեակ իրենց աղջկայ կամ տղայի սիրահարութիւնից՝ նշանում են իրենց ցանկացած անձնաւորութեան հետ։ Որդիները չեն համարձակւում իրենց սիրտը բանալ ծնողների առաջ և երբ տեսնում են այլ ևս հնար չկայ ազատուելու կամ ինքնասպանութիւն են գործում կամ թէ ծածուկ փախչում են սիրածի հետ։

Սիրահարական դէպքերի յաճախ չկրկնուելու պատճա-

ռը կարելի է համարել նախ այն, որ Վարանդայում աղջըկերքն ամուսնացնում են վաղ։ Ամուսնացող աղջիկների ամենամեծ տոկոսը կազմում է 13 տարիքը, իսկ նշան դնում են, ինչպէս վերև յիշեցի, աւելի վաղ 6—7 տարեկանում։ Պարզ է, որ 12 տարեկան աղջիկը տակաւին տեղեկութիւն չունի կեանքից և չգիտի թէ ինչ է սէրը, ուստի հեռու է նրա մտքից և սիրահարութիւնը։

Տղամարդիկ ևս մանուկ հասակից ծանրաբեռնուած լինելով ընտանեկան հոգսերով, ժամանակ չեն ունենում սիրահարութեան ետևից ընկնելու։

Երկրի դիրքն ու կլիման ևս անմիջական ազդեցութիւն են ունենում։

Ահագին մինչև երկինք բարձրացող լեռները, թանձր և անմատչելի անտառները, շարունակ մշուշով պատած երկերը, շարունակ տեղացող անձրևները ազդել են վարանդացու բնաւորութեան վրայ. նա դարձել է սառը, մտախոհ, լուրջ և անտարբեր դէպի շրջապատող առարկաները։ Մարդը դարձել է իշխող և հրամայող, իսկ կինը հպատակուող և ենթարկուող։

Երրորդ՝ տղաները և աղջիկները միմեանց հետ քիչ յարակցութիւն ունին։ Աղջիկը հասնելով 8 տարիքի կտրւում է դրսի ոշխարհից և փակւում տանը, իսկ դուրս ելնելուց աչքերը գետնին ձգած շտապում է գործին, ճանապարհին տղամարդ պատահելիս կամ փոխում է ճանապարհը և կամ երեսը դարձնելով դէպի հակառակ կողմը՝ քարացած կանգնում է մինչև տղամարդի անցնելը։

Բայց և այնպէս՝ այդ չէ խանգարում աղջիկներին աշխատել երիտասարդներին դուր գալու։

Աղջիկները սկսած ամենահարուստից մինչև ամենաաղքատը մաքուր են հագնւում, հագուստներից կախում են դրամներ, մէջքին կապում են արծաթէ քամար, գլխներին ձգում են կարմիր դիպակ (չարղաթ), որպէս զի կարմրութիւնը տայ երեսներին և գեղեցիկ երևան, քսլլում են սիգաճեմ, երկար ծամ են պահում և գեղեցիկ հիւսում, գօտին պինդ կապում

են, որպէս զի կուրծքը դուրս ցցուած երեւայ։ Աշխատում են ամօթխած երեւալ եւ երիտասարդներին տեսնելիս երեսները դարձնում են դէպի պատը եւ աչքի տակով նայում։

Երիտասարդներն աղջիկներին դուր գալու համար երբեւ միջոց գործ են դնում.

1. Երգելը. լաւ ձայն ունեցող եւ լաւ երգող երիտասարդին աղջկերքը շատ սիրում են։

2. Քաջութիւնը, որ երիտասարդները ցոյց են տալիս ջիրիդի, գոտեմարտի, մահակ կռուի եւ այլ խաղերի ժամանակ։

Լաւ պարելը, ճաշակով հագնուելը, ուսումն եւս մեծ դեր են խաղում այդ դէպքում։

Ամենից շատ դուր են գալիս աղջիկներին օտարութիւնից դարձած եւ նոր ձեւի հագնուած երիտասարդները. վերջիններս ոչ միայն աղջիկների ուշադրութիւնն են գրաւում, այլ եւ մայրերի նախանձն են շարժում, որոնք ամէն միջոց գործ են դնում իրենց փեսայացնելու։

Տղայ եւ աղջիկ միմեանց հետ տեսակցում են.

1. Բինաներում, ուր աղջիկները գնում են կաթ կամ իւղ բերելու, այնտեղ հանդիպում են տաւարածների եւ միմեանց հետ խօսակցում։

2. Եկեղեցիներում։ Վարանդայում ջահել հարսներն ու աղջկերքը տարեկան երկու անգամ են եկեղեցի գնում։ Ծաղկազարդին եւ Ուլթի-ուրբաթ գիշերը։ Այդ երկու անգամ գիւղի աղջկերքը համարեա առանց բացառութեան գնում են եկեղեցի։

Երկու սիրահարներ այդ գիշեր փոքրիկ երեխայի միջոցով որոշում են տեսակցութեան տեղը եւ մինչդեռ շարունակւում է ժամերգութիւնն՝ աղջիկն աննկատելի կերպով դուրս է գնում եկեղեցուց եւ շտապում տեսակցութեան տեղը։

3. Արտերում՝ քաղհան անելիս։

4. Այգիներում՝ թութ թափելիս։

5. Անտառներում՝ պտուղներ ժողովելիս։

6. Միջատեղ, ուր հաւաքւում են բաւականին թուով աղջկերք եւ բուրդ գզում։ Մի մհանով գալիս է երիտա-

սարդը և դէպի սիրած աղջիկը զանազան ակնարկներ անե-
լով, յայտնում է իւր սէրը։

7. Փողոցներում պատահելիս աղջիկը կանգ է առնում մին-
չև երիտասարդի անցնելը, իսկ վերջինս աղջկայ մօտովն անց-
նելիս մի բան ասում և հեռանում է։

8. Աղբիւրներում. ուր աղջիկները գնում են ջուր բերե-
լու, իսկ երիտասարդները տանում են կենդանիներին ջրե-
լու և այդ ժամանակ միմեանց հանդիպում են և սիրում։

Սիրահարութեան ժամանակ երբեմն զանազան սիրա-
հարական երգեր են յօրինում և երգում, բայց սրանք գըլ-
խաւորապէս լինում են թուրքերէն *)։

Սիրահար երիտասարդը ցանկանալով երկրորդ անգամ
սիրած աղջկայ հետ առանձին տեսնուել ու խօսել, իւր բարե-
կամ մի հարսի կամ աղջկայ յայտնում է ցանկութիւնը։ Միջ-
նորդ հարսը մի մհանով վերցնում է որոշուած տեղը, ապա
գալիս է տղան և իրեն ձևացնելով գործին բոլորովին ան-
տեղեակ հարցնում է. «Ախչի թօրնըքքիս»։ «Հընչիդ ա, քիս

*) Առաջ բերենք այդ տեսակ երգերից մի քանի նմուշներ.

Տ ղ ա ն՝

Սարերը ձինը կոխալ ա,
Քմրհա, ես հձւնց կեամ,
Փողոց, փողոց պղնձի ա,
Քմրհեա ես հձւնց կեամ։
Կտոր, կտոր, լուսնունկեալ ա,
Քմրհա ես հձւնց կեամ։
Ձեր պառաւը մըրթմըրթում ա,
Քմրհա, ես հձւնց կեամ։
Ձեր չոնը հաչմաչում ա,
Քմրհա ես հձւնց կեամ։
Ձեր ործակը ծկլթում ա,
Քմրհա ես հձւնց կեամ։
Ձեր դխուռնը, ճռճռում ա
Քմրհա ես հձւնց կեամ։

Ա ղ ջ ի կ ը   պ ա տ ա ս խ ա ն ո ւ մ   է.

«Սարերը ձինը կոխալ ա,
Կանանչ թըլաւ եկ։

ընք սեհր ընելու», պատասխանում է միջնորդը և աւելացնում. «Մի հարս էլ չըս պուհըրում. թա մեզ նըհետ պերենք էս չիմաննըրս շոռ ածինք»։

«Դէ հօրա, մին աղչիկ ճարի օղիմ ըլլի. բաս հինչիս բարեկամն ըս».

—Եանի օ՞ղըմ ըս պսակուխս, ախչիկ չկայ։

«Բա որ օղիմ վուչ, կասիմ»։

—Դէ օղըմ ըս մեր Մընըշական լաւ ախչիկ չըս ճըրըլական. եկ ըհա օղի. ասում է միջնորդը և ցոյց տալիս ընկերուհուն։

Աղջիկն ամաչելուց սաստիկ կարմրում է և կմշտում հարսի կուռը։

«Ախչի եանի հինչ ըս կօռնըս կմշտում, մեր Գըսպարին անայ լաւ տղի ըս քըննական, հազըր բոլաւ, բուսաթաւ տղայ ա». ասում է միջնորդը և դառնալով տղայլին աւելացնում։ «Ադաթըն ա նըշընծացու տղին ջուքումը բարեղան կնի, խը՞ մին զատ չըս տալիս մեզ»։

Տղան հանում է բերած մըգեղէնը, որ գլխաւորապէս լինում է տանձ, խնձոր, չամիչ, կաղին և կօնֆէտ, տալիս է իւր բարեկամ հարսին և խնդրում, որ ընկերուհու հետ բաժանի։

Միջնորդը մըգեղէնի մի մասը տալիս է աղջկան և աւելացնում. «Ինքաւ ա՛խչի, տեսնըմըս, որ քնաս մեր Գըս-

---

Փողոց, փողոց պղնձի ա,
Լէն կըրմնջաւն եկ.
Կտոր, կտոր լուսնըկեայ ա,
Ծաւէն շոքաւը եկ.
Մեր պառաւը մըրթմըրթում ա
Նտնուց դըլըուաւն եկ.
Մեր շոնը հաչմաչում ա,
Պատառը քցի եկ.
Մեր որձակը ծկլթում ա,
Կոտան քցի եկ.
Մեր դռնը ճըլվըլզտում ա,
Տափանը եղէ, եկ»։

պարին, էգան սար զատեր կօտխս»: Եթէ աղջիկը վերցնում է, արդէն համաձայնութեան նշան է և տղան գոհ սրտով թող-նում հեռանում է:

Աղջիկը փոխարէնը նոյն միջնորդի միջոցով ուղարկում է տղային մի ղալուխ (փողի քսակ) մրգեղէնով լցրած, կամ իւր գործած մի զոյգ գուլպայ, իսկ Զատկին նախշած ձու:

Ծողովուրդն ընդհանրապէս յարգում է աղջկայ պատիւը և ոչ մի կերպ թոյլ չէ տալիս նրան անպատուել. նոյն իսկ ամուրի տղաները կոյս աղջիկների հասցէին ոչ մի խօսք չեն արտասանում, իսկ եթէ պատահում է որ տղաներից մէկը յետին մտքով մի որև իցէ աղջկայ մասին խօսում է, ընկեր-ները իսկոյն նախատում և լռեցնում են:

Բայց եթէ աղջիկն արդէն խախտել է իւր կուսութիւնը, այնուհետև դառնում է ծաղրի և խօսակցութեան առարկայ: Հասարակութիւնը խիստ դատապարտում է այդպիսիներին, նրանից խոյս են տալիս նոյն իսկ իւր ընկերուհիները և ոչ մի յարաբերութիւն չեն ունենում հետը: Նա դառնում է ըն-տանիքի նախատինք և գիւղի տղաներից ոչ մէկը չի կամե-նում հետը ամուսնանալ: Ծնողները վերջապէս ստիպուած ամուսնացնում են կամ այրի մարդու, կամ երկու կին ունե-ցողի և կամ օտար գիւղացու հետ և իրենցից հեռացնում: Այս բոլորը կատարւում է այն ժամանակ, երբ աղջկայ վար-մունքը յայտնւում է, իսկ երբ ծածուկ է մնում, մի մի ան-գամ անցնում է առանց հետևանքի:

Իսկ եթէ տղան իմանում է, որ կինը նախ քան իւր հետ ամուսնանալը ուրիշի հետ յարաբերութիւն է ունեցել, հե-տևանքը շատ վատ է լինում, կամ ուղղակի խեղդում, սպա-նում է, կամ յետ է դարձնում հօրանց տուն, կամ թէ կան-չում է ծնողներին և յայտնում աղջկայ դրութիւնը, որից յե-տոյ տղան կամ բոլորովին մերժում է այդ տեսակ կնոջ հետ ապրել, կամ թէ մեծ փող ստանալով հաշտւում է:

Ա. Բ.



# ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆ ԵՒ ԲԺՇԿՈՒԹԻՒՆ

Վարանդան իւր լեռնային մաքուր օդով, բարեխառն կլիմայով, բազմաթիւ յստակ աղբիւրներով և օդը մաքրող անտառներով բաւական առողջարար երկիր է։ Սակայն ժողովուրդի տգիտութեան և բժշկական միջոցների բացակայութեան պատճառով՝ մահացութիւնը հասնում է 11 ‰։

Հիւանդութիւնների գլխաւոր պատճառն է կեղտոտութիւնը։ Թէև այստեղի գիւղերը՝ գոմերը գիւղից մի փոքր ինչ հեռու, առանձին տեղ լինելու պատճառով աւելի մաքուր են, քան թէ Ախալքալաքի, Ախալցխայի և Աղէքսանդրապօլի գիւղերը, սակայն և այնպէս՝ շատ հեռու են մաքուր կոչուելուց։ Տեղի սղութեան պատճառով տները միմեանց կից շինուած լինելով, մինի կտուրը ծառայում է միւսին որպէս բակ և աղբանոց, իսկ վերջինիս ծուխը առատութեամբ լցնում է երկրորդի տունը՝ եթէ միայն դուռը բաց է լինում։ Ղարաղամների սարսափելի ծուխը, լուսի սաստիկ պակասութիւնը, խոնաւութիւնը և կեղտոտութիւնը քայքայում են վարանդեցու երկաթի առողջութիւնը։ Բարեբաղդաբար այժմ այլ ևս չեն շինում այդպիսի բնակարաններ և գիւղերը կամաց կամաց ունենում են երկյարկանի, պատուհաններով տներ, որ տաքանում են թիթեղէ վառարաններով։

Հիւանդութիւնների տարածուելու մի ուրիշ պատճառն էլ այն է, որ սուրբ պարտականութիւն է համարւում անշուշտ այցելել հիւանդին, այնպէս որ անհնարին է լինում նրան առանձնացնել, որի պատճառով և՛ տարափոխիկ հիւանդութիւնները սաստկութեամբ տարածւում են։

Քանի որ քաղաքը զուրկ է հիւանդանոցից ու բժշկանոցից, ի՞նչ կարող ենք ասել գաւառի մասին։ Միայն կէս տարի առաջ Աղդամում նշանակուեց մի գիւղական բժիշկ և

բացուեց գիւղական դեղատուն ու մի ապաստանարան։ Սակայն այս օգնութիւնը գլխաւորապէս տարածւում է Աղդամի շրջակայ թուրք ազգաբնակութեան վրայ, իսկ Վարանդայի հայը դարձեալ մնում է առանց բժշկի և ստիպուած դիմում է սափրիչներին, «անղչիներին» (хирургъ), տատմայրերին, կին «հեաքիմներին» և մանաւանդ սուրբ աղբիւրներին, ծառերին, քարերին և «գիր անող» կախարդներին։

Վարանդացու ամենագործածական դեղը «խնոթունն» է,–սրբի մօտից վերցրած հողը և կամ սուրբ ծառի փթած փոշին, որ ջրի մէջ խառնելով ընդունում և կամ քսում է ցաւած տեղը։

Հիւանդութիւնների վերաբերեալ ոչ մի հաւաստի թըւեր չլինելով՝ կարելի է միայն ասել, որ երեխաների մէջ առաւելապէս տարածուած է ծաղիկ և կարմրուկ հիւանդութիւնը։ Ժողովուրդը դեռ ևս լաւ չէ ըմբռնել ծաղիկ կտրելու նշանակութիւնը և թէև տարին մի քանի անգամ ծաղկահատներ շրջում են գիւղերը, սակայն և այնպէս՝ շատ երեխաներ մնում են առանց ծաղիկը կտրելու և զոհ են գընում ծնողների տգիտութեան, որոնք, սակայն, նրանց առողջացնելու նպատակով ամենայն երեկոյ մոմեր են վառում, կիրակի պահում (անգործ նստում), միմեանցից հեռու մնում, միս ներս չբերում և այլն։

Երիտասարդութիւնն էլ վարակուած է վեներական ախտերով, բացի Նոր-Շէն, Հացի և Կաղարծի գիւղերից, ինչպէս վկայում է գաւառական բժիշկը։

Զափահասների և մանաւանդ հնձուորների մէջ տարածուած է տենդ և ջրգողութիւն հիւանդութիւնները։

Քաղաքում կան մի քաղաքի, մի գաւառի, մի զինուորական և երկու մասնաւոր բժիշկներ։

---

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՂԵՐ

---

### Ականջի վշվշոց.

Ձուի դեղնուցը քսում են քեչի երեսը և դնում ականջի վրայ։

### Աչքացաւ.

Աղջկամօր կաթը կաթեցնում են հիւանդի աչքի մէջ և կարմիր ներկ քսում կոպերը։ Ձուի դեղնուցը խառնելով շիբի փոշու հետ, հարում են մինչև սպիտակելը և բամբակի վրայ քսած դնում աչքին։

### Անքնութիւն.

Խաշխաշի կեղևը եփում են և ջուրը խմացնում հիւանդին։

### Արիւնահոսութիւն քթից.

Շարմահի կոչուած սանրը քերում են և փոշին քիթը քաշում։

### Այտուռոյց.

Գինձ, գիվլխատնի, ճեմանի գիլ ծեծում և դնում են երեսին։

### Ատամնացաւ.

Սխտոր կամ խորոված ընկոյզ են դնում ատամի վրայ։ Սև մեխակ են դնում ատամի տակ, կամ մեխակի իւղի մէջ բամբակ թաթախելով դնում են ատամի տակ։ Շիբը այրում են հին բամբակի մէջ և փոշիացնելով՝ բամբակով վերցնում և դնում ցաւող ատամի տակ։

### Այրուած մարմին.

Կարագը քսում են այրուած տեղը և քաթան-հինդի մանրացնում վրան են դնում։ Մօլաբաշի կոչուած բոյսի իւղը քսում են այրուած տեղը։ Ձուի դեղնուցով խմոր են շինում, կրակի վրայ չորացնում, և ապա փոշիացնելով ցանում այրուած տեղի վրայ։

### Բարակացաւ.

Մոշի արմատը քերում, ծեծում, օղի քաշում խմացնում են հիւանդին։

### Բերանհարենք.

(Բերանի մէջ լեզուն սպիտակում է և ծածկւում սպիտակ բշտիկներով։)

Շիբլեղի մի փոքր կտոր ձգում են բերանի մէջ և պտտեցնելով

լեզուի օգնութեամբ, թողնում մի քանի ժամ. այդ միջոցին բերանի թուքը չպէտք է կուլ տալ։ Շիբլեղը այրում և մանրացնելով խառ-նում են սարու նաբաթիի փոշու հետ, մատով վերցնում և ածում լե-զուի վիրաւոր մասերի վրայ։ Քացախ են առնում բերանը։ Տառեխ ձկան գլուխը այրում են և փոշին ցանում լեզուի վրայ։

Գլխացաւ.

Քացախ և մանանեխ են քսում։ Մէջքի մէջ ձու են եփում, դը-նում հիւանդի գլխին։ Տզրուկներ են կպցնում ճակատից։

Լուծել.

Լուծելու համար վերցնում են սինամաքի (?) կոչուած տերևը, եփ ածում և ջուրը խմում։

Խաւարսն.

Մուկը այրում, կարագով շաղախում, դնում են խաւարսնոտ մարմնի վրայ։

Խօլերայ.

Ծմրթում և կռան մեծ ջղից արիւն են տալիս։

Խլութիւն.

Նաւթի անօթը տաքացնում դնում են ականջին։ Երբեմն էլ խոռն կոչուած բոյսն են խաշում դնում ականջին։

Կատաղած շան կծած.

Կարմիր լոբի և շան մազ են դնում խածած տեղը։

Կողքի ցաւոց.

Աղը աղանձում կամ թեփը տաքացնում դնում են կողքին։

Կտրուած մաշկ.

Սարդի ոստայնը ծեծում դնում են կտրած մասի վրայ։ Շորը այրում խանձիլը կապում են վրան։ Օճառը և սև նաւթը եփում չո-րի վրայ, քսելով դնում են կտրածի վրայ։ Մի քանի տեղերում կըտ-րած մորթու վրայ դնում են սև-եռնջակ։

Կապոյտ վէրք.

Ջամիչ, անախաթուն, լեղակ, աղբի ճիճուն ծեծում կապում են վէրքի վրայ. ջերող վէրքից սկսում է ժահր թափուել։

Հազ.

Մանիշակի թէյ են խմում։ Սերկեւիլի կորիզը եփում և ջուրը խմում են։ Սալապ կոչուած արմատը չորացնում, աղում և թէյի հետ խառնում, խմում են։

### Հարբուխ.

Քթի տակ շոր են ծխում. Թթուի թան են տալիս հիւանդին.

### Միզակապութիւն.

Թեփը խաշում դնում են փորին. Թեփի տեղ գործ են ածում և անլուալ բուրդ. Քարաւուզի արմատը եփում և ջուրը խմացնում են.

### Մատնաշունչ.

Մատնաշունչը հասցնելու համար խաշած սոխ կամ անալի խըմոր են դնում.

### Մազոլ.

Շիբի և աղի խառնուրդի ջրով լուանում են. Տաւարի լեղին հինայի հետ խառնում քսում են.

### Մոլոքոր.

Մոլոքորից ազատուելու համար մերկանում են, մի ոսկէ դրամ տրորում ջրի մէջ, և ածելով մարմնի վրայ, փաթաթւում կարմիր մետաքսէ սաւանի մէջ.

### Ոսկրաբեկ.

Կոտրած մասի վրայ տախտակ են դնում կապում, մինչև կոտրած մասերի ձուլուիլը.

### Ոտների քրտինք.

Աղաջրով կամ շիբաջրով լուանում են.

### Վէրք գնդակի.

Գնդակից ստացած վէրքի վրայ դեղնահող են տալիս.

### Տաքութիւն.

Կատուահոտի կոչուած ծառի արմատի կեղևը մաքուր լուանում, քերում, թանձր եփում հիւանդին խմացնում են.

### Ցաւ տուած մկանունք.

Ցաւ տուած մկանունքի վրայ դնում են ծեծած միս. Տաք ջրով միշտ լուանում են.

### Փայծաղի մեծանալը.

Էշի կաշի են կապում. Սև կաշաղակը կապում են փայծաղին դրսից.

### Փորացաւ.

Տաք աղիւսի վրայ նաւթ են ածում և դնում փորի վրայ.

### Փորկապութիւն.

Փորկապութեան համար խմում են նաւան ջուր։ Հիւն են ուտում։

### Օձի թոյն.

Օձ պահողները կծած տեղը պինդ կապում են, թմրեցնում, յետոյ պատռում ածելիով վէրքը և միջի թոյնը ծծելով բերանից թափում։ Դրանից յետոյ կռօթն կոչուած բոյսը վրան են տալիս կամ մածուն քսում, ժահրը հանւում է և 8 օրից յետոյ հիւանդը առողջանում։ Մածնաթանը ածում են կոնքի մէջ և կծած անդամը դընում մէջը։

Ց. Տէր Յովհաննիսեան.

---

## ՄԱՀ, ԹԱՂՈՒՄՆ ԵՒ ՄԵՌԵԼՈՑ.

---

Ժողովուրդը հաւատում է, թէ մարդու մահուան օրը նախապէս որոշուած և գրուած է ճակատին, որ ոչ մի միջոց չի կարող հեռացնել կամ մօտեցնել այն։ Այդ օրերի հաշիւը պահւում է երկնքում դարսուած կճուճներով, որոնց մէջ իւրաքանչիւր տարի մի կաթիլ ջուր է կաթում։ Երբ կճուճը լցւում է, օրը լրացած է լինում և մարդը մեռնում է։ Միևնոյն ժամանակ ամէն մարդ մի աստղ ունի երկնքում, երբ օրը լրանում է, աստղը ընկնում է և մարդն էլ մեռնում։

Երբ մարդու վախճանը հասնում է, եթէ բարի է՝ բարի, իսկ եթէ չար՝ չար հրեշտակը գալիս է հոգին առնելու։ Բարի մարդը շատ հանգստութեամբ, ասելով, ծիծաղելով յանձնում է հոգին հրեշտակին, ստանալով նրանից ծաղկի մի փունջ, իսկ չարը երկար տանջւում է չար հրեշտակի հարուածների տակ։ Վերջինս սուրը խրելով հիւանդի կողքը, ամուր սեղմում է բկից, այնպէս որ նա ոչ մի բան չի կարողանում ասել և իւր «սրտինը սրտումն է մնում»։ Մեռ-

### Փորկապութիւն.

Փորկապութեան համար խմում են նաւան ջուր։ Հիւն են ուտում։

### Օձի Թոյն.

Օձ պահողները կծած տեղը պինդ կապում են, թմրեցնում, յետոյ պատռում ածելիով վէրքը և միջի թոյնը ծծելով բերանից թափում։ Դրանից յետոյ կռօթն կոչուած բուսը վրան են տալիս կամ մածուն քսում, ժահրը հանւում է և 8 օրից յետոյ հիւանդը առողջանում։ Մածնաթանը ածում են կոնքի մէջ և կծած անդամը դընում մէջը։

Ց. Տէր Յովհաննիսեան.

---

## ՄԱՀ, ԹԱՂՈՒՄՆ ԵՒ ՄԵՌԵԼՈՑ.

---

Ժողովուրդը հաւատում է, թէ մարդու մահուան օրը նախապէս որոշուած և գրուած է ճակատին, որ ոչ մի միջոց չի կարող հեռացնել կամ մօտեցնել այն։ Այդ օրերի հաշիւը պահւում է երկնքում դարսուած կճուճներով, որոնց մէջ իւրաքանչիւր տարի մի կաթիլ ջուր է կաթում։ Երբ կճուճը լցւում է, օրը լրացած է լինում և մարդը մեռնում է։ Միևնոյն ժամանակ ամէն մարդ մի աստղ ունի երկնքում, երբ օրը լրանում է, աստղը ընկնում է և մարդն էլ մեռնում։

Երբ մարդու վախճանը հասնում է, եթէ բարի է՝ բարի, իսկ եթէ չար՝ չար հրեշտակը գալիս է հոգին առնելու։ Բարի մարդը շատ հանգստութեամբ, ասելով, ծիծաղելով յանձնում է հոգին հրեշտակին, ստանալով նրանից ծաղկի մի փունջ, իսկ չարը երկար տանջւում է չար հրեշտակի հարուածների տակ։ Վերջինս սուրը խրելով հիւանդի կողքը, ամուր սեղմում է բկից, այնպէս որ նա ոչ մի բան չի կարողանում ասել և իւր «սրտինը սրտումն է մնում»։ Մեռ-

նելու րոպէին մեռնողը լսում է իւր ազգական ննջեցեալների ձայնը, որոնք կանչում են. «Ե՜կ, Ե՛կ, այստեղ լաւ է»։ Ինքն էլ պատասխանում է. «Գալիս եմ, գալիս»։

Երբ մարդը հոգին աւանդում է, բոլոր տնեցիները սաստիկ լալիս են, իսկ փոքր ինչ աւելի սրտոտները դարձնում են մեռելի երեսը դէպի արևելք, շորերը հանում են, կզակին մի թաշկինակ կապում, ոտների բթամատները բամբակի թելով կապկապում, աչքերը ծածկում, ձեռքերը կրծքին խաչաձև ծալում, վերան մի շոր ձգում և մի հաց դնում սրտին։

Իսկոյն գալիս են ազգականները և ծանօթները, մխիթարական խօսքերով հանգստացնում սգաւորներին. «Աստուած սրտներդ մխիթարի, դուք ողջ լինիք։ Բոլորս էլ մեռնելու ենք, Աստուած ննջեցեալի հոգին լուսաւորի, համբերող եղէք» և այլն։ Գալիս է և քահանան ու օրհնում ջուրըն ու պատանը։ Տղամարդ ննջեցեալին լողացնում են գիւղերում՝ հարևանները, իսկ քաղաքում՝ ժամկոչները։ Կին ննջեցեալներին՝ գիւղում հարևան կանայք, իսկ քաղաքում՝ աղքատ կանայք և կամ, եթէ հարուստ է եղել, կոյսերը՝ աղօթքներ մրմնջալով։ Լողացնելուց յետոյ ննջեցեալի ձեռքերին մի մի մոմ են դնում, որպէսզի միւս աշխարհում իւր բարեկամ ննջեցեալներին ճրագի լուսով տեսնի։ Յետոյ պատանում են սպիտակ կտաւով, փաթաթում մի կապերտում և դնում նաժի մէջ և վերան ձգում դիազարդը։

Տասն տարեկանից բարձր ննջեցեալների համար ութ օր շարունակ մոմեր կամ կանթեղներ են վառում նրանց լողացրած տեղերում, որպէս զի նրանց հոգիների ճանապարհը դէպի երկինք լուսաւոր լինի։

Երբեմն պատահում է, որ հարուստ ննջեցեալների համար դագաղ են պատրաստել տալիս և հետևելով քաղաքի սովորութիւններին, ծերինը անում են սև, հասակաւորինը՝ կապոյտ, իսկ երիտասարդինը՝ կարմիր, գոյնզգոյն ծաղիկներով զարդարուած։

Նոյն օրը քահանան կատարում է տան կարգը և նըն-

ջեցեալը տանում է եկեղեցի։ Ննջեցեալը վերցնելուց յետոյ անմիջապէս նոյն տեղը մի քար են դնում, որպէս զի ննջեցեալի յիշատակը հաստատ մնայ այդ տան մէջ։

Մինչև թաղման օրը թէ սգաւորները և թէ նրանց ազգականներն ու ծանօթները ժամերգութիւնների ժամանակ եկեղեցի են գնում, իսկ առաջին ժամերգութիւնից յետոյ բոլորը գալիս են ննջեցեալի տուն, քահանային հոգոց ասել տալիս, մխիթարում սգաւորներին և մի մի բաժակ օղի խմում, հեռանում։

Թէ գիւղերում և թէ նոյն իսկ քաղաքում կան լալկան կանայք, որոնք հրաւիրւում են ննջեցեալի վրայ յատկապէս լաց լինելու։ Սովորաբար «մայր ողբոց» հանդիսանում է ննջեցեալի մայրը և կամ մեծ քոյրը։ Սա նստում է ննջեցեալի սնարի, իսկ մի ուրիշը ոտների մօտ, միւս կանայք շրջապատում են ննջեցեալը։ «Ողբոց մայրը» թւում է ննջեցեալի առաքինութիւնները երգի եղանակով, միւսները կրկնում են վերջին խօսքերը և բարձրաձայն լալիս։

Երբ ննջեցեալը եկեղեցումն է դրուած լինում, միևնոյն երևոյթը այնտեղ էլ է կրկնւում, և շատ անգամ աւելի սաստկութեամբ, որովհետև աւելի մեծ բազմութիւն է ներկայ լինում։ Սակայն սրանով էլ չի վերջանում, և միշտ շարունակւում է տանը։ Այստեղ առաջ են բերում ննջեցեալի շորերը և մէկ մէկ բարձրացնելով, հոտոտելով, համբուրելով գովում և լաց են լինում։ Գիւղի՝ ամենահեռաւոր կէտից էլ լսելի է լինում ննջեցեալի տան ողբն ու կոծը։

Եթէ ննջեցեալը հարուստ է եղել, նրա համար պատարագ են մատուցանում և յետոյ թաղում, իսկ եթէ աղքատ, շուտով տանում թաղում են։

Թաղման ծէսը կատարելիս, կանայք դարձեալ շրջապատում են ննջեցեալին եկեղեցում և ողբեր ասելով լալիս։ Եթէ ննջեցեալը նոր նշանադրուած է եղել, սգաւորները կարմիր խնձորի վրայ սպիտակ դրամներ շարած, նշանի մատանին սև քօղով պատած՝ դնում են ննջեցեալի վրայ և լաց լինում։ Շատ անգամ լալկան կանայք ննջեցեալի կողմից մնաս բարև

*են ասում նշանածին, և պատուէրներ տալիս նրան։ Սովորաբար քահանան էլ նպաստում է ողբ ու կոծին գանձ ասելով, չնայելով որ այդ արգելուած է։*

*Լալն ու կոծը գնալով սաստկանում են և շատ անգամ ննջեցեալի մայրը և քոյրը պատառոտում են իրենց երեսները, քանդում, քաշում մազերը, թակում գլուխները, ուշագնաց լինում։*

*Վերջապէս կանանց հեռացնում են և վերցնում դագաղը տանում դէպի գերեզմանատուն։ Կանայք լաց լինելով և բարձրաձայն ողբեր ասելով՝ վերադառնում են տուն և շարունակում շորերի վրայ կոծելը։*

*Տղամարդիկ քահանայի և խաչ ու խաչվառի առաջնորդութեամբ տանում են ննջեցեալը գերեզմանատուն։ Դիակառքեր գիւղերում բոլորովին չկան, իսկ քաղաքում կայ մի շատ հասարակը։ Չորս կամ վեց հոգի բռնած նաժից կամ դագաղից, առաջ են գնում, շուտ շուտ փոփոխուելով։ Նոր բռնողն ասում է. «Աստուած ողորմի»։ Միւսը թողնելով դագաղը՝ պատասխանում է. «Աստուած ողորմի ծնողացդ»։*

*Այս յուղարկաւորութեան ժամանակ քահանան զգուշանում է յետ նայելուց, որովհետև եթէ յետ նայի, նոյն տընից մի ուրիշն էլ կը մեռնի։*

*Վերջապէս յուղարկաւորութիւնը հասնում է գերեզմանատուն։ Գերեզման փորողներից մինը առաջ է գալիս, դագաղից բռնում, տանում գերեզմանի աջ կողմը դնում։ Սովորաբար գերեզմանները փորում են գիւղերում ննջեցեալի ազգականները և կամ հարևանները, իսկ քաղաքում ժամհարները։ Գերեզմանների խորութիւնը լինում է 2—3 արշին, իսկ լայնութիւնը մի արշին։ Աւարտելուց յետոյ թին ու բահը խաչաձև դնում են գերեզմանի վրայ, որպէս զի սատանաները չմտնեն ներս։*

*Եթէ գերեզմանը լաւ փորուած է լինում և հողը կակուղ, ասում են, թէ ննջեցեալը արդար էր, իսկ եթէ գերեզմանը վատ է փորուած և հողը քարքարոտ է լինում,*

շշնջում են, թէ ննջեցեալը մեղաւոր էր, Աստուած նրան հողի մէջ էլ մի հանգիստ տեղ չտուեց։

Նախ քան ննջեցեալը գերեզման իջեցնելը, մօտիկ ազգականները գրկախառնում են նաժը, համբուրում ննջեցեալին և լաց լինում։ Յետոյ, ննջեցեալին հանում են նաժից և իջեցնում գերեզման։ Քահանան օրհնում է հողը մօտիկ ազգականի ձեռքում և ձգել տալիս գերեզմանի մէջ։ Անմիջապէս բոլոր յուղարկաւորները մի մի բուռ հող են ձգում ննջեցեալի վրայ՝ ասելով. «Աստուած ճանապարհդ բարի անի, բարև տար մեր հին ննջեցեալներին»։ Յետոյ արդէն գերեզման հատողները ածում են հողը գերեզմանի մէջ և վերան մի թումբ կազմում։

Թաղման ծիսակատարութիւնը կատարելուց յետոյ քահանան ննջեցեալի տնեցիների կողմից հրաւիրում է յուղարկաւորողներին ննջեցեալի տունը՝ ճաշելու։ Այս ճաշը տեղական բարբառով կոչւում է «ժըմահաց» կամ «պատարագ»։ Սովորաբար եփում են չիլաճաշ. շատ անգամ մորթում են մի եզ և կամ մի քանի ոչխար, թխում են 10—15 փութ հաց, գնում են մեծ քանակութեամբ օղի և գինի։ Ոչ միայն եկողներին, այլ և բացակայ անձինքներին և հիւանդներին կերակուրներ են ուղարկում, որպէս զի տեղի չտան ոչ մի չարախօսութեան։ Ահագին բազմութիւնը լաւելայն և մեծ ախորժակով ճաշելուց յետոյ, լսում է քահանայի օրհնութիւնը նոյն տան հին և նոր ննջեցեալների հոգու փրկութեան մասին և ապա, մխիթարութիւն բարեմաղթելով տընեցիներին, ցրւում։

Միւս օրը, լուսաբացին, ննջեցեալի հայրը և կամ եղբայրը գնում է գերեզմանատուն, համբուրում ննջեցեալի գերեզմանը, և երեք անգամ վայ կանչում, որպէս զի հոգին, որ մինչև այդ կանչը սաւառնում է գերեզմանի շուրջը, անդորրութեամբ ուղևորուի դէպի երկինք։

Նոյն օրը, ժամը 10-ին, սգաւորները գնում են գերեզմանատուն «իջնաւող»-ը (այգ) կատարելու։ Այնտեղ են հաւաքւում և ննջեցեալի ազգականներն ու ծանօթները, մա-

*նաւանդ կանայք, բերելով իրենց հետ օղի, գինի և խմորեղէններ։*

*Քահանան օրհնում է գերեզմանը, իսկ սգաւորները լաց են լինում, ողբեր ասելով։ Վերջապէս երբ այլ ևս արցունք չի մնում աչքերում, վեր են կենում, համբուրում գերեզմանը և խաչհամբոյր տալիս։ Մի կին ջուր է ածում գերեզմանի վրայ, որից բոլոր սգաւորները խմում են, կրծքերին քըսում, երեսները լուանում, որպէս զի եթէ վախեցած են, վախն անցնի։ Յետոյ գերեզմանի հողից վերցնում, սգաւորների «սրտերին» են քսում, որպէս զի «սրտերը հովանան» և այլ ևս երկար չսգան։*

*Այս ամենից յետոյ բոլորը, թէ տղամարդ և թէ կին, մի մի բաժակ օղի են խմում երկար բարեմաղթութիւններով, ուտում բերած խմորեղէնները և ապա թողնելով մնացորդները գերեզմանի մօտ, վերադառնում սգաւորի տունը ճաշելու։ Ճաշից յետոյ կրկին մի քիչ լաց են լինում, ննջեցեալի մասին խօսում և ապա ցրւում։*

*Հիւրերը հեռանալուց յետոյ տնեցիները ննջեցեալի շորերը մաքուր լուանում են, որպէս զի հոգին մաքուր և անարատ գնայ հասնի իւր տեղը։*

*Գիւղերում ութ օր շարունակ սգաւորները առաւօտ երեկոյ եկեղեցի են գնում, ժամասացութիւնից յետոյ քահանային հոգոց ասել տալիս։ Իսկ քաղաքում քառասուն օր շարունակ կանայք տնից դուրս չեն գալիս։ Շատերը նոյն իսկ մի տարի սուգ են պահում և տնից դուրս են գալիս միայն գերեզմանատուն գնալու։*

*Թաղման վեցերորդ օրը ննջեցեալի ազգական ու հարևան կանայք նորից հաւաքւում են ննջեցեալի տունը և լուանում սգաւորների գլուխները, որ մինչև այդ ժամանակ անլուայ են մնում։ Նոյն երեկոյեան մօտ ազգականներից «սրգահան» է ուղարկւում սգուորներին։ Սգահանը բաղկացած է լինում զանազան տեսակ խմորեղէններից, եփած հաւից, օղուց, գինուց և մեծ սգաւորի համար մի «խալաթից»։*

*Եօթներորդ օրը, այսինքն «եօթին» ազգականներն ու*

հարեւանները նորից հաւաքւում են ննջեցեալի տունը և սըգւորների հետ միասին գնում գերեզմանատուն, քահանային օրհնել տալիս գերեզմանը, երկար լաց լինում, ողբեր ասում, և յետոյ վերադառնում տուն, ճաշում։ Ճաշից յետոյ քահանան օրհնում է բոլոր հին և նոր ննջեցեալների հոգին և ստանում 40 կ.—մի րուբլի վարձատրութիւն։

***

Առաջ բերենք մի քանի նախապաշարումներ.

Եթէ գիւղում ննջեցեալ լինի, ոչ ոք գլուխ չի լուանալ, ոչ էլ լուացք կանի, վախենալով թէ մի գուցէ, հրեշտակը, որ ննջեցեալի պատճառով գիւղումն է, «կուփէ» (խըփէ)։

Կնոջ գերեզմանը մի արշին աւելի խոր են փորում, որովհետև կինը խօսք ման ածող է, խռովարար և սատանի հետ բարեկամ։

Եթէ մի ննջեցեալից յետոյ տնեցիներից հիւանդանում են, կարծում են, թէ ննջեցեալը իսկապէս մեռած չէ և տնեցիներից եօթը հոգի տանելու է։ Որոշելու համար, թէ ննջեցեալը իսկապէս մեռած է թէ ոչ, գերեզմանի վրայ գարի են ածում և ձին տանում մօտը, եթէ կերաւ, այդ ապացոյց է, որ ննջեցեալը իսկապէս մեռած է։ Իսկ եթէ չկերաւ՝ գա նշան է, որ մեռած չէ։ Այս դէպքում բաց են անում գերեզմանը, ննջեցեալի գլուխը ջախջախում, կամ մի մեխ խըփում գլխին, մէկն էլ սրտին։ Մի քանիսն էլ մեռելի սըրտից մի կտոր կտրում և հիւանդին են տալիս, որ ջրով ընդունէ և առողջանայ։

Արևը մայր մտնելուց յետոյ ննջեցեալ չեն թաղում, ապա թէ ոչ գիշակեր կենդանիները կը հանեն գերեզմանից և կուտեն։

---

## ՀՈԳՈՒ ԵՒ ՀԱՆԴԵՐՁԵԱԼ ԿԵԱՆՔԻ ՄԱՍԻՆ



*Մարդը տարբերւում է կենդանիներից նաև՝ նրանով, որ նա հոգի, իսկ նրանք միայն շունչ ունին։ Մարդու հոգին մի լուսաւոր բան է, որ բնակւում է մարդու ձախ կողմում։ Մեռնելիս հոգին դուրս է գալիս բերանից, եթէ արդար է՝ աղաւնու, իսկ եթէ մեղաւոր՝ սև թռչունի նմանութեամբ։ Մի պառաւ պատմում էր, թէ մի ծառի տակ իւր հիւանդ թոռը խնամելիս, ննջում է և տեսնում մի աղաւնի, որ երեխայի բերանից դուրս է գալիս և կանգնում ծառի վրայ։ Արթնանալով նա գտնում է իւր թոռանը՝ մեռած։ Բոլոր երեխաների հոգիները արդար են, իսկ չափահասներինը՝ մեծ մասով մեղաւոր։*

*Հոգին բերանից դուրս գալուց յետոյ մինչև այգը կատարելը սաւառնում է գիւղի շուրջը և երբ միւս օրը վաղ առաւօտեան տան մեծը գալիս երեք անգամ «վայ» է բղաւում, ապահով կերպով· սաւառնում է դէպի երկինք։ Այստեղ բոլորը թռչունների կերպարանքով մնում են՝ արդարները՝ մի ծաղկալից, ծառազարդ այգում, մեղաւորները՝ մի մթին տեղ, իսկ ո՛չ արդար, ոչ մեղաւորները՝ արդարների յետևը։ Այստեղից նրանք հսկում են իրենց գերեզմանների վրայ, շատ անգամ այցելում են իրենց ազգականներին, երեւում են նրանց երազների մէջ։ Նաւակատեաց, մեռելոց օրերը իջնում են իրենց գերեզմանների վրայ և սպասում, որ իրենց ազգականները գան, գերեզմանները օրհնել տան։ Եւ եթէ օրհնել են տալիս, իրենք ուրախացած, օրհնում են օրհնել տուողներին և սաւառնում երկինք, իսկ եթէ չեն օրհնել տալիս, տխուր տրտում, ազգականներին անիծելով բարձրանում են։*

*Երբեմն էլ պատահում է, որ հոգին դեռ մարդու կենդանութեան ժամանակ թողնում է մարմինը և ինքը գնում։*

Այդ թափառման միջոցին մարմինը բոլորովին անզգայ ընկած մնում է, մինչև որ հոգին նորից վերադառնում է։ Այսպէս մի անգամ Քառասնի գիւղացի Աղաջանը գիշերը գնում է եկեղեցի և գրկելով որդու դագաղը, երկար ժամանակ լաց է լինում և անզգայացած ընկնում վայր։ Երբ մի երկու օրից զգաստանում է, պատմում է թէ ինչպէս իւր որդու հոգու հետ միասին ինքն էլ բարձրացել է երկինք, տեսել դրախտը, խօսել Աստուածութեան հետ և այլն։

Այստեղ, այս երկնային կայեանում հոգիները անհամբերութեամբ սպասում են վերջին դատաստանին, երբ Քրիստոս կը գայ և Գաբրիէլ հրեշտակապետի փողով բոլոր ննջեցեալները յարութիւն կ՚առնեն։ Այդ ժամանակ կը կախեն արդարութեան կշիռը և բարի ու չար հրեշտակները, որոնք մարդու կենդանութեան ժամանակ նստած բարին՝ աջ, չարը ձախ ուսին, գրում էին նրա գործերը, կը հանեն իրենց մատեանների միջից բարին՝ բարութեան, իսկ չարը՝ չարութեան գործերը և կը դնեն կշռի նժարների մէջ։ Եթէ բարութիւնը կշռէ, մարդը կանցնի Քրիստոսի աջ կողմը, իսկ եթէ չարութիւնը՝ ձախ։ Յետոյ արդէն աջակողմեանները դրախտ, իսկ ձախակողմեանները դժոխք կերթան։

Դրախտը մի հրաշալի այգի է, լի մշտադալար ծառերով, անուշահոտ ծաղիկներով, քաղցրահամ աղբիւրներով և բիւրաւոր գեղեցիկ թռչուններով։

Իսկ դժոխքը մի մութ խոր անդունդ է, ուր թոնիրներից, խարոյկներից, կուպրի կարասներից ահագին հուր է բարձրանում և տանջում երկաթեայ տրեխներ հագած մեղաւոր մարդկանց։

# ՀԱՒԱՏՔ

## Ա. ԳԼՈՒԽ

## ԼԵՌՆԵՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

Վարանդացին հեռու անցեալում և մեծ մասամբ այժմըս էլ աստուածացրել է ամբողջ բնութիւնը և ծունր դըրել նրա առաջ։ Քիրս լեռը իւր սպիտակափառ գագաթով նուիրական է եղել նրա համար. շատերը ծունր չոքած աղօթել են նրա առաջ։ Դեռ մինչև այժմս էլ Քիրսի աստուածացման վերաբերեալ աւանդութիւններ շրջում են ժողովրդի մէջ և լերան վրայ գտնուող բազմաթիւ ուխտատեղիները խլել են նրանից նրա աստուածացումը։ Խերխան գիւղի Ծծաքարի աւանդութեան մէջ *) թշուառ կինը Քիրսին է դիմում և խնդրում իրեն քար դարձնել, որ և կատարւում է։

Աշան գիւղի Ցից քարը **) դարձեալ մի կին է եղել, որ աւազակներից հալածուած՝ խնդրել է Քիրսին և քար դարձնել։

---

*) Տես երես 189.

**) Տես երես 193.

## Բ ԳԼՈՒԽ.

# ՔԱՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

Վարանդայում կան քարեր և ժայռեր, որ պաշտում են. ժողովուրդը ուխտի է գնում նրանց, մոմ վառում, աղօթում, և մատաղներ կտրում։ Այսպէս՝ Սղնախ գիւղի մօտ գտնւում է մի ահագին ժայռ քար, որ մի ժամանակ ժայռից պոկուելով գլորուել, եկել է մինչև գիւղ և հէնց գիւղի մօտ կանգ առել, առանց մի որ և է վնաս պատճառելու։ Գիւղացիները գոհ լինելով, որ այդ քարը աւելի առաջ չէ գլորուել և վնասներ պատճառել, պաշտում են նրան։ Այս քարը կոչւում է Պոկ-քար, այսինքն պոկ եկած քար։ Ամուլ կանայք գալիս երեք անգամ թել են փաթաթում այս քարի շուրջը և ապա տանում, գուլպայ գործում հագնում, որպէս զի երեխայ ունենան։

Կաթ չտուող կովերին էլ տանում երեք անգամ պտտեցնում են նրա շուրջը։

Հանդիպակաց ժայռն էլ, որտեղից պոկ է եկել այդ ահագին ժայռ քարը, նոյնպէս պաշտւում է։ Այնտեղ առաւելապէս երաշտ ժամանակ են մոմեր վառում, որ անձրև գայ և կամ կարկուտ չխփի։

Մի այսպիսի ժայռ էլ գտնւում է Հերհեր գիւղում, լեռան լանջին, որ եթէ գլորուի, գիւղը աւերակ կը դարձնի։ Վառուած բազմաթիւ մոմերից ժայռի լանջը բոլորովին սևացել է։

Բայց աւելի հետաքրքիր է Գիւնէյ Ճարտար գիւղի Շմանէքը, որ կարծէք դոլմէն լինի։ Մի կանգնած ժայռ քարի վրայ ընկնում են երկու մեծ ժայռ քարեր, միւս կողմից յենուած լինելով իսկական ժայռի վրայ։ Սրանց միջև կայ երկու փոքրիկ խորշ։ Կատաղած անասուններին, մանաւանդ այն կովերին, որոնք կթելիս հանգիստ չեն մնում և կամ հորթին թոյլ չեն տալիս ծծելու, բերում կախում են այս խորշերի մէջ, նախապէս մոմեր վառելով ժայռի առաջ, որ

խնլօքանոն։ Այս ժայռի առաջ մի ծառ կայ, թէքեանը, ծածկուած բազմաթիւ շորերի կտորներով։

Մի մեծ ժայռ քար էլ Սխտորաշէնի մօտ կայ, որ կարծես մանհէր լինի։ Սրա առաջ չորս սրբազան ծառեր էլ կան, ծածկուած շորի կտորներով։ Բացի սովորական ուխտ անելուց և մոմեր վառելուց, ամէն մի անցորդ պարտաւոր է սուրբ քարի մօտից մի փոքրիկ քար վերցնել, դնել ս. քարի վրայ և մի ուրիշը վայր ձգել։

Մի այսպիսի քար էլ Քարին-տակը գիւղում կայ։

Սակայն առանձին ուշադրութեան արժանի են՝

## ԾԾԱՔԱՐԵՐԸ

Սրանք ծծի նմանութեամբ պտուկներ են, որ գտնւում են ժայռ քարերի լանջերին, երբեմն ահագին ժայռերի և երբեմն այրերի մէջ։ Սրանցից կաթ կաթ ջուր է հոսում, որ սակաւակաթ կանանց կաթը աւելացնելու դեղ է համարւում։ Կաթ չունեցող կինը իր երեխան գրկած գալիս է այդ քարի առաջ չոքում, աղօթում, մի քանի մոմ վառում և ծծերը բռնում այդ կաթիլների տակ և կամ վերցնում այդ ջրից, մի մասը խմում, միւսն էլ ծծերին քսում։ Ասում են, որ անմիջապէս կաթը առատանում է։

Այսպիսի ծծաքարեր շատ կան, որոնցից նշանաւոր են. Խերխան գիւղի ներքև գտնուածը։ Սա մի ժայռ քար է, որ հեռուից մի երեխային ծիծ տուող կնոջ նմանութիւն է տալիս։ Ունի և պտուկներ, որոնցից ջուր է կաթկաթում։ Ասում են, որ մի դժբաղդ մայր, այդ տեղում իր օրօրոցի մէջ պահած երեխային ծիծ տալով՝ խնդրել է Քիրս լեռից *), որ իրեն քար դարձնէ, որովհետև այլ ևս չի ուզում տուն վերադառնալ և իր սկեսուրի ձեռին տանջուել։ Քիրսը կատարել է նրա խնդիրը, միևնոյն ժամանակ նրան կաթ տալու շնորհքը պարգևելով։

*) Յատկապէս շատերին պատմել եմ տուել և բոլորն էլ առանց բացառութեան ասել են, թէ խնդրել է Քիրսից։

Մի այդպիսի ծծաքար կայ և Սարիբէկում, որ գտնւում է մի ժայռի մէջ, մինն էլ Փիւրման գիւղում։ Մի ուրիշն էլ Թաղլարի մօտ, Ղուրու-չայի արևելեան կողմը գտնուող այրի մէջ, ինչպէս և մինը Ծովատեղ գիւղի մօտ, լճի ափին, որի անունով և լիճը Ծծաքարի ծով է կոչւում։

Այստեղ կովեր էլ են բերում ուխտ անելու, որ շատ կաթ տայ։ Միայն բերելիս հորթը կապում են կովի մէջքին, և իրենք առնելով ջուր, քսում նրա պտուկներին։

Կան քարեր և, որոնք պաշտւում են, որպէս մի որոշ հիւանդութեան բժշկութիւն տուող։ Այսպիսիներից էլ յիշենք միքանիսը։

Որպէս հազ հիւանդութեան բժշկող սուրբ քարեր.

Ա. Սարիբէկի ուխտատեղուց փոքր ինչ բարձր գտնուող ժայռը, որի միջով մի անցք է բացւում։ Հազողները նախապէս մոմեր վառելով այդ ժայռի առաջ, 3 կամ 7 անգամ անցնում են այդ անցքով, յուսալով որ հազը կը կտրի։

Բ. Ալամանց գոմերում գտնուող «ըխտըլահազ» (խեղդող հազ) ուխտատեղին։ Սա մի ծառի մօտ երկու ահագին քարեր են, որ միմեանց վրայ ընկնելով՝ մի փոքրիկ անցք են թողել։ Խեղդող հազ ունեցողները նոյն կերպ բժշկւում են։

Գ. Բողըխանի լերան վերայ, վանքից մօտ կէս վերստ հեռաւորութեամբ անտառի մէջ գտնուող մի սաժէն մեծութեան մեկուսի ընկած քարը, որի մէջ մի փոքրիկ անցք կայ։ Այստեղ նոյն կերպ բժշկւում են փոքրիկ երեխաներին։

Դ. Սարուշէնի «ըխտըլահազը», որ նոյնպէս մի ծակ քար է և նոյն կերպ բժշկւում է հազողներին։

Հացի գիւղում կայ Քօլէն (Թփերի) խաչ, որ մի կաղնենու տակ երկու սրածև քարեր են. թէ ծառը և թէ քարերը պաշտւում են և համարւում ծծի վէրքերը դարմանող։

Շուշում, Թուրքերի Թաղում գտնւում է «Քամու-խաչ» անուն քարերի կոյտը, որ պաշտւում է որպէս «քամի»— ռեվմատիզմ հիւանդութեան բժշկութիւն տուող։

Նոյն հիւանդութիւնը բժշկող մի ժայռ քար էլ Դռնա-

վարդ գիւղում կայ, որ նոյնպէս «Քամու խաչ» է կոչւում և պաշտւում է։

Կան նաև քարեր ու ժայռեր, որոնց միջով անցքեր են բացուած. ամուլ կանայք երեք անգամ անցնում են այդ անցքերով, որպէս զի որդի ունենան։ Ասում են, թէ անցքը մեծանում և թոյլ է տալիս կնոջը անցկենալու, եթէ որդի է տալու, և նեղանում ու արգելում անցկենալու, եթէ որդի չի տալու։ Այսպիսի քարերից նշանաւոր են Պտկեսիքեր-քում և Սարիբէկում գտնուածները։

Աւգուռ գիւղում գտնւում է «Աւգալ-օճախ» ուխտատե-ղին, որ հասարակ քարերի մի կոյտ է։ Այստեղ ուխտ են գա-լիս չբեր կանայք և կամ նրանք, որոնց որդիները տարին չլրացած մեռնում են, որպէս զի առաջինները որդի ունե-նան, իսկ երկրորդների որդիները երկարակեաց լինին։

Դռնավարդ և Քառասնի գիւղերի միջև կայ երկու քար, որոնք միմեանց վրայ ընկած լինելով, տակովը մի անցք են թողել։ Այս անցքի տակ ևս մի փոքրիկ քար կայ, ուր գը-տընւում է մի խորշ։ Եթէ տասերկու տարեկան ժամանակ այդ խորշը ջուրածեն և խմեն, 17 տարեկան հասակում սաստիկ զօրեղ կարող են լինել, որովհետև այդ քարերը նը-րան ույժ կը տան։

Ալամենց գոմեր կամ Մատաթ քենդ գիւղի մօտ մի մեծ քար կայ, որի մասին ասում են, թէ Մարիամ Աստուածա-ծինը դրա վրայ նստած է եղել, երբ հրեշտակը աւետիս է տուել նրան, թէ որդի պիտի ունենայ։ Այժմ ամէն մի ան-ցորդ մի քար է վերցնում և դնում դրա վրայ, 'ի նշան իւր յարգանաց։ Շատերն էլ պտուղներ են դնում և կամ մոմեր վառում։

Հին Քեաթուկի մօտ Գիզատ ուխտատեղում կայ մի ծակ ժայռ քար. երաշտ ժամանակ կանայք գնում մոմեր են վա-ռում ժայռի լանջին և ծակից ջուր վայր ածում։ Ասում են, թէ այդ սուրբը այնքան զօրաւոր է, որ անմիջապէս անձ-րեւ է անում։

Մի այսպիսի քար էլ Ներքին Թաղավարդ գիւղում կայ—

միայն սա ծակ չէ։ Երաշտ ժամանակ բերում ջուր են ա-
ծում վերան, կաթնաճաշ եփում, բաժանում, որ անձրև գայ։
Մի անգամ մի տղայ ծաղրել է այդ քարը և վեր կացել
կանգնել վերան, բայց անմիջապէս ոտները կուչ են եկել։
Մի քար էլ Դռնավարզում կայ, որ նոյն կերպ անձ-
րև է տալիս։ Միայն այս քարը նրանով էլ է նշանաւոր, որ
երբ երկար ժամանակ անձրև է գալիս, բերում այս քարի
տակ կրակ են վառում և անմիջապէս անձրևը կտրւում է։
Հացի գիւղից դէպի արևելք մօտ երկու վերստ հեռա-
ւորութեամբ կայ ժայռից պոկ եկած և առանձին ընկած
մի ահագին ժայռ քար, որ մէջտեղից ճեղքուած է։ Այս քա-
րը պաշտում են թէ հայերը և թէ թուրքերը։ Վերջինները
ասում են, թէ Ալին է թրով խփել և ճեղքել։ Այս քարի
մօտ մի աղբիւր կայ, որ կոչւում է «Ալի-բուլաղ» (Ալու-աղ-
բիւրը)։

Խաչմաչ, Հարաւ և այլ գիւղերում կան քարեր, որոնք
պաշտւում են միմիայն կայծակի հարուած ստանալու պատ-
ճառով։

Քարեր էլ կան, որոնք թէև չեն պաշտւում, բայց ո-
րոնց մասին պատմւում են զանազան աւանդութիւններ։
Այսպիսիներից նշանաւոր են.

## ՈՒՂՏԱՔԱՐԵՐ

Մ. Քիրս լերան վերայ կան ուղտանման և մարդակերպ
քարեր. սրանցից փոքր ինչ հեռու մի ուրիշ քար, որ շատ
նման է աւեղը թելող մի հարսի։ Պատմում են, թէ մի ժա-
մանակ այդ տեղով մի հարս են տարել։ Պատահմամբ սրա
զգեստի ծայրը պատռուել է և նա առանձնացել է կարելու։
Այս միջոցին մի աղքատ պառաւ կին մօտեցել է հարսին և
ողորմութիւն խնդրել, իսկ սա բարկացել է վերան, որ այս-
պիսի նեղ ժամանակ եկել ողորմութիւն է ուզում։ Պառաւն
էլ իւր կողմից բարկացել և անիծել է բոլորին, որ քար կտ-

րին։ Եւ այդ օրուանից հարսն էլ, մակարներն էլ, ուղտերն էլ քար կտրած մնացած են այնտեղ։

## ՑԻՑ ՔԱՐ

Աշան գիւղից մի փոքր ինչ վերև գտնւում է «Ցից քարը»։ Սա մի ժայռ քար է, որ փոքր ինչ նմանութիւն է տալիս երեխան գրկած մի կնոջ։ Ասում են, թէ մի ժամանակ մի հարս, երեխան գրկած գնալիս է եղել, երբ աւազակները յարձակուել են վերան։ Սա չկամենալով նրանց ձեռքն ընկնել, խնդրել է Քրիստոսից և քար դառել։

## ՀՈՎՈՒԻ ՔԱՐԵՐ

### Ա.

Խաղաղի լերան վերայ կան երկու մարդու, չորս ոչխարի և մի շան քարէ արձաններ։ Աւանդութիւնն ասում է, թէ մի ժամանակ դրանք կենդանի էին. Աստուած ուղարկել է դրանց մօտ իւր հրեշտակին աղքատի շորերով, որպէս զի փորձէ դրանց ողորմածութիւնը։ Հովիւները ոչ միայն բան չեն տուել խեղճ աղքատին, այլ և քարկոծել են նրան։ Այդ ժամանակ վերջինս անիծել է նրանց և քար դարձրել։

### Բ.

Գրիգոր անունով մի ճգնաւոր աւազակներից փախչելով թաք է կենում յետոյ սրա անուամբ կոչուած Լուսաւորչի քերծի մէջ։ Մի հովիւ յայտնում է աւազակներին նրա տեղը և սա նախ քան նահատակուիլը անիծում է հովուին, որ իւր կնոջ և ոչխարների հետ քար է կտրում։ Այժմ ցոյց են տալիս հովուին, նրա կնոջը և ոչխարներին նմանութիւն բերող քարերը։



Գ. ԳԼՈՒԽ.

## ԿՐԱԿԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

Կրակի պաշտաման վերաբերեալ դեռ ևս շատ մնացորդներ կան. այսպէս շատ սովորական է կրակով երդուելը. միշտ ասում են՝ կրակը օրհնի, մեղք համարելով ասել կրակը հանգցրու: Եւ գրեթէ բոլոր պառաւները նախ քան կրակ հանգցնելը խաչակնքւում են և «Յիսուս ու Քրիստոս» ասում:

Կրակի վրայ ջուր չեն անում, որովհետև այդպիսի դէպքերում նա ասում է, թէ երբ ես մեռել, որ չիլաճաշդ չեմ եփել:

Կրակը չեն ծեծում և ոչ թքնում վերան և կամ ոտը դնում, մեղք համարելով այդ, ինչպէս և՛ չեն անցնում վերայից:

Գիշերները կրակ փոխ չեն տալիս, հաւատալով, որ տընեցիներից մին կը մեռնի:

Կ—Թի տակից ոչ մի կտոր կրակ չեն վերցնում, որ կաթը չը շաղի (փսորի): Եթէ ստիպուած են վերցնելու, նախապէս կաթի վրայ մի տերև և կամ մի կանաչ բան են դնում:

Եթէ փայտը վառուելիս ձայն է հանում, (վըրթվըրթում է), ասում են. «Աչքը դուրս գայ, մեր մասին խօսող կայ»: Յետոյ կամ մի քիչ մոխիր են անում, որ դադարի և կամ զանազան անուններ տալիս, որի ժամանակ որ դադարեց, այդ ապացոյց է, որ նա էր խօսում:

Երեկոյին լողանալիս մի կրակ են ձգում ջրի մէջ, որ չարերը չխփեն և թողնեն փախչին:

Վառած փայտը աջ ու ձախ չեն շարժում, որ իրենց հայրը չմեռնի:

Կրակը հանգցնելիս չեն փչում, մեղք համարելով այդ, այլ մոխիր են ցանում վերան:

Կրակը կայծակից մնացել է կայծքարի մէջ և լեռոյ մարդիկ զայլախաղով (չախմախ) խփել հանել են։

Կրակն ու ջուրը քոյր և եղբայր են։ Մի անգամ նրանց մէջ վէճ է ծագել, թէ ո՞րն է ուժեղ և վճռել են փորձել։ Քոյր կրակը իւր ոյժը ցոյց տալու համար գնացել սարերի խոտը վառել է, իսկ եղբայր ջուրն էլ գնացել բոլորը հանգցրել է։ Այն օրուանից նրանք միմեանցից բաժանուել են։

***

Կրակի պաշտաման հետ կապուած է և օճախի պաշտամունքը։ Յայտնի է, որ օճախ բառը ունի և՛ գերդաստան իմաստը։ «Մեծ օճախի տղայ է»—սովորական գովասանքն է, որ տրւում է մեծատունների որդիներին։ Մեծ օճախից աղջիկ ուզելը և կամ մեծ օճախին աղջիկ տալը ամէն մի ծնողի տենչանքն է կազմում։ Երբ գնում են աղջիկ ուզելու՝ սովորաբար ասում են. «Մունք եկալ ընք մըն հափուր մոխիր եր օնինք քու օճախէտ, տանինք մեր օճախին նհետ խառնինք»։

Երբ մի ընտանիք գերդաստանից բաժանւում է, նոր շինած օճախը առաջին անգամ վառում է գերդաստան մեծը, նոյն գերդաստանի օճախից բերած կրակով։

Երբ նոր հաւեր են գնում, բռնում են օճախի վերայ, և ոտներին ջուր ածում, որպէս զի ընտանենան և չհեռանան այդ օճախից։

Գիւղի հիմնադրի կամ նշանաւոր տան օճախը նուիրական է դառնում ոչ միայն այդ գերդաստան, այլ և ամբողջ գիւղի համար. հարսանեաց ժամանակ հարս և թագուոր եկեղեցուց դուրս գալով այդ տեղ են գնում համբուրելու։ Եկեղեցի չեղած տեղում պսակը այդպիսի օճախի վրայ է կատարւում *)։

---

*) Տես երես 115.

Հարսը թէ իւր տնից դուրս գալիս և թէ սկեսրանց տուն մտնելիս համբուրում է օճախները **)։

---

Դ. ԳԼՈՒԽ

## ՋՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

Վարանդայում դեռ ևս մնացել է ջրի պաշտամունքը։ Մեղք են համարում ջրի վրայ թքել և կամ նախատինքով վերաբերուել։ Նորահարսը առաջին անգամ աղբիւրի մօտ գալով, զոհ է բերում նրան ցորեն։ Կիրակի օրերը մոմեր են վառում սուրբ համարուած աղբիւրների առաջ։ Առողջութիւն հայցող հիւանդը մոմեր է վառում, աքաղաղներ զոհում, երկրպագում և աղօթում աղբիւրին։

Աղբիւրներից մի քանիսը ամենայն տեսակ, իսկ միւսները մի մի որոշ հիւանդութիւնների բուժիչ սրբատեղիներ են համարւում։ Առաջիններից նշանաւոր են Շօշու գիւղում, ձորակի մէջ գտնուողը, Վերին Սզնէքում «Կանաչ խաչ» անուն աղբիւրը, Հղորդի գիւղում «Մոշ-աղբիւրը», որ իւր անունը ստացել է մօտի մոշի թփերից և որի մօտ մի մեծ, պաշտուող կաղնի ծառ կայ. Ջանախչի գիւղում՝ «Մեծ աղբիւրը», որի վրայ մի քանի անգամ լոյս է իջել։ Ներքին Թաղավարդում երկու թքեռնի ծառերի տակ պաղպաջող «Կարմիր աղբիւրը», որի մօտով անցնողը պարտաւորուած մի բան է դընում աղբիւրի քարի վրայ և այնտեղից մի ուրիշ բան վերցնում։

Որպէս մի որոշ հիւանդութեան բուժիչ, նշանաւոր է Գիւնէյ-Ճարտարի «Դաւաչիչակ» աղբիւրը։ Ղալին-Խութի հըսկայական ժայռերի գագաթից կաթիլ կաթիլ ջուր է հոսում և հաւաքւում ժայռի մէջ փորուած մի նեղ և երկար փոսի մէջ։ Մոլոքոր հիւանդութիւն ունեցողները գալիս այս ջրի

---

**) Տես նրես 137, 139 և 140.

Հարսը թէ իւր տնից դուրս գալիս և թէ սկեսրանց տուն մտնելիս համբուրում է օճախները **)։

---

Դ. ԳԼՈՒԽ

## ՋՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

---

Վարանդայում դեռ ևս մնացել է ջրի պաշտամունքը։ Մեղք են համարում ջրի վրայ թքել և կամ նախատինքով վերաբերուել։ Նորահարսը առաջին անգամ աղբիւրի մօտ գալով, զոհ է բերում նրան ցորեն։ Կիրակի օրերը մոմեր են վառում սուրբ համարուած աղբիւրների առաջ։ Առողջութիւն հայցող հիւանդը մոմեր է վառում, աքաղաղներ զոհում, երկրպագում և աղօթում աղբիւրին։

Աղբիւրներից միքանիսը ամենայն տեսակ, իսկ միւսները մի մի որոշ հիւանդութիւնների բուժիչ սրբատեղիներ են համարւում։ Առաջիններից նշանաւոր են Շօշու գիւղում, ձորակի մէջ գտնուողը, Վերին Սզնէքում «Կանաչ խաչ» անուն աղբիւրը, Հղորդի գիւղում «Մոչ-աղբիւրը», որ իւր անունը ստացել է մօտի մոշի թփերից և որի մօտ մի մեծ, պաշտուող կաղնի ծառ կայ. Ջանախչի գիւղում՝ «Մեծ աղբիւրը», որի վրայ մի քանի անգամ լոյս է իջել։ Ներքին Թաղավարդում երկու թքեռնի ծառերի տակ պաղպաջող «Կարմիր աղբիւրը», որի մօտով անցնողը պարտաւորուած մի բան է դընում աղբիւրի քարի վրայ և այնտեղից մի ուրիշ բան վերցնում։

Որպէս մի որոշ հիւանդութեան բուժիչ, նշանաւոր է Գիւնէյ-Ճարտարի «Դաւաչիչակ» աղբիւրը։ Ղալին-Խութի հրաւկայական ժայռերի գագաթից կաթիլ կաթիլ ջուր է հոսում և հաւաքւում ժայռի մէջ փորուած մի նեղ և երկար փոսի մէջ։ Մոլոքայր հիւանդութիւն ունեցողները գալիս այս ջրի

---

**) Տես երես 137, 139 և 140.

առջև մի զոյգ մոմ են վառում, երկու հաւկիթ և երկու բևեռ (քոռամեխ) թաղում ջրի մօտ, աղօթում և այդ ջրով լողանում են։ Եթէ հիւանդը անձամբ չի կարող բարձրանալ այդտեղ, որովհետև սաստիկ զառիվայր է, գալիս են նրա համար ջուր տանելու։ Սրանք էլ նոյն կերպ վառում են մոմեր, թաղում հաւկիթ և քոռամեխ, աղօթում և բացի դըրանցից, վերադառնալիս էլ բոլորովին յետ չեն նայում, և ջրի ամանը երբէք գետին չեն դնում։

Որպէս բոր հիւանդութեան բուժիչ՝ նշանաւոր է Հիւնոտ գիւղի ջրվէժը, որի տակ նստում լողանում են, նախապէս մի զոյգ մոմ վառելով ու աղօթելով։

Միւս գրեթէ բոլոր սուրբ համարուած աղբիւրները բժշկում են ջերմ ու տենդ հիւանդութիւնը։ Այսպիսիներից նշանաւոր են. Հղորդի գիւղում «Զրաւոր» (զօրաւոր) աղբիւրը, Փերիճամալ գիւղում «Ծարաւաջուր» աղբիւրը, Շօշկայ վանքի մօտ՝ կաթնանման աղբիւրը, Զանախչի գիւղում «Հոռնաղբիւրը» և «Քօսին» աղբիւրը, Խաչմաչ գիւղում «Թոխտպվա» աղբիւրը։ Այս վերջինս բղխում է մի աւերակ մատրան մէջ։ Աւանդութիւնն ասում է, թէ մի կին իւր երեխայի հետ եկած է եղել այս մատուռը աղօթելու։ Մօր աղօթքի ժամանակ երեխան շատ լաց է եղել և ջուր խնդրել։ Մայրը աղօթքը չընդհատելու համար խնդրել է Աստուծուց, որ երեխայի ծարաւը յագեցնէ։ Աստուած լսել է նրա խնդիրը և այդ աղբիւրը բղխել է մատրան մէջ։

Առհասարակ գրեթէ բոլոր սուրբ համարուած աղբիւրների մօտ կան ծառեր, որոնք նուիրական են համարւում։ Հիւանդները լողանալուց յետոյ իրենց վերայից մի կտոր են պատառում և փաթաթում ծառին, յուսալով իրենց հիւանդութիւնը այդ շորի հետ միասին թողնել այդ ծառի մօտ։ Միքանիսի մօտ էլ, ինչպէս Փերիճամալինը, ծառ չկայ։ Այսպիսի դէպքում հանդերձի մի կտոր կապում են մի փոքրիկ քարի վերայ և դնում աղբիւրի գլխին։

Իսկ վերջին Թաղավարդի «Շիշմայ» (ընտիր) աղբիւրի մօ-

տով անցնողը և կամ ջուր խմողը անպայման մի քար է ձըգում աղբիւրի գլխին, հաւատացած լինելով, որ եթէ այդ չանէ՝ ինքը կամ ազգականներից մինը կը մեռնի։

---

## Ե. ԳԼՈՒԽ

## ԾԱՌԵՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

---

Վարանդայում սաստիկ տարածուած է ծառերի մեծարանքը. համարեա բոլոր գիւղերում կան մի կամ մի քանի ծառեր, որ սուրբ են համարւում, որոնց առաջ մոմեր են վառում, աքաղաղ և կամ ոչխար մատաղում, նրանց տերևներից գուշակութիւններ անում։ Շատ մեծ մեղք է համարւում այդ սրբազան ծառերը և կամ նրանց ճիւղերը կտրելը, մեղանչողը անմիջապէս պատժւում է։ Այսպէս՝ պատմում են, թէ մի մարդ, սրանից 40 տարի առաջ կտրել է Սարիբէկի ծառից մի ճիւղ, որի պատճառով և՛ անմիջապէս հիւանդացել, մահիճ է ընկել։ Նրա հիւանդութիւնը մինչև այժմս էլ տևում է. նա այժմ պառկած է մի ջախջի մէջ։ Կինը միշտ հսկում է նրա վերայ և ջախջի կողքից կապած մի գդալով շուտ շուտ կերակուր տանում նրա բերանը։ Այժմ ամէն տարի մի անգամ նրան ուխտ են տանում Սարիբէկ։

Այս ծառերի ճիւղերը ծածկուած են բազմաթիւ, գոյնզգոյն շորերի կտորներով, որ ուխտաւորները կապում են, իրենց հիւանդութիւնն էլ դրանց հետ միասին այդտեղ թողնելու յուսով։

Երբ ուզում են գուշակութիւններ անել, առաւելապէս աղջիկները ճլորթի (ճինճի) են ձգում այդ սրբազան ծառերի վրայ, ինչպէս, օրինակ, շատ յաճախ անում են Նոր-Շէն գիւղում Սաղունց կաղնու վրայ, և սկսում ճօճալ։ Մի որոշ բան մտները գնելով, նրանք լարում են իրենց բոլոր ույժը և ճլորթիով բարձրանալով՝ աշխատում մի տերև կտրել և

տով անցնողը և կամ ջուր խմողը անպայման մի քար է ձըգում աղբիւրի գլխին, հաւատացած լինելով, որ եթէ այդ չանէ՝ ինքը կամ ազգականներից մինը կը մեռնի։

---

Ե. ԳԼՈՒԽ

## ԾԱՌԵՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

Վարանդայում սաստիկ տարածուած է ծառերի մեծարանքը. համարեա բոլոր գիւղերում կան մի կամ միքանի ծառեր, որ սուրբ են համարւում, որոնց առաջ մոմեր են վառում, աքաղաղ և կամ ոչխար մատաղում, նրանց տերևներից գուշակութիւններ անում։ Շատ մեծ մեղք է համարւում այդ սրբազան ծառերը և կամ նրանց ճիւղերը կտրելը, մեղանչողը անմիջապէս պատժւում է։ Այսպէս՝ պատմում են, թէ մի մարդ, սրանից 40 տարի առաջ կտրել է Սարիբէկի ծառից մի ճիւղ, որի պատճառով և՛ անմիջապէս հիւանդացել, մահիճ է ընկել։ Նրա հիւանդութիւնը մինչև այժմս էլ տևում է. նա այժմ պառկած է մի ջախջի մէջ։ Կինը միշտ հսկում է նրա վերայ և ջախջի կողքից կապած մի գդալով շուտ շուտ կերակուր տնում նրա բերանը։ Այժմ ամէն տարի մի անգամ նրան ուխտ են տանում Սարիբէկ։

Այս ծառերի ճիւղերը ծածկուած են բազմաթիւ, գոյնզգոյն շորերի կտորներով, որ ուխտաւորները կապում են, իրենց հիւանդութիւնն էլ դրանց հետ միասին այդտեղ թողնելու յուսով։

Երբ ուզում են գուշակութիւններ անել, առաւելապէս աղջիկները ճլորթի (ճինճի) են ձգում այդ սրբազան ծառերի վրայ, ինչպէս, օրինակ, շատ յաճախ անում են Նոր-Շէն գիւղում Սաղունց կաղնու վրայ, և սկսում ճօճալ։ Մի որոշ բան մտները գնելով, նրանք լարում են իրենց բոլոր ույժը և ճլորթիով բարձրանալով՝ աշխատում մի տերև կտրել և

իրենց հետ բերել (պաշար բերել)։ Եթէ յաջողում են, դա ապացոյց է, որ իրենց մտադրած բանը կատարուելու է, լաւ է և այլն, իսկ եթէ չեն յաջողում, նշանակում է թէ չպիտի կատարուի, լաւ չէ և այլն։

Այսպիսի ծառերից միքանիսը պաշտւում են որպէս ամենայն տեսակ հիւանդութիւնների բժշկող և ամենայն տեսակ խնդիրներ կատարող, իսկ միւսները որպէս մի որոշ հիւանդութեան բժշկող և կամ մի որոշ զօրութիւն ունեցող։

Առաջին տեսակի ծառերից նշանաւոր են.

Ա. Սխտորաշէն գիւղի այգիների մօտ գտնուող ահագին չինարի ծառը, որի շրջապատը 25 մետր է։ Սրա բունը բոլորովին դատարկ է և տասնեակ մարդիկ պաշտպանւում են դրա մէջ անձրևի և ուրիշ ժամանակ։ Առաւելապէս Համբարձման օրը շրջակայ գիւղերից մեծ բազմութիւն է գալիս այստեղ, մոմեր վառում և կաթով ճաշ (կաթնապուր) եփում բաժանում իբրև մատաղ։

Բ. Վերին Թաղավարդ գիւղից արևմտահարաւ անտառապատ բլրի վրայ գտնուող «Պըրևածառ» (բարևածառ) ուխտատեղու ծառերը։

Գ. Սարիբէկի երեք հաստաբուն թեղի ծառերը։

Դ. Հին Դրախտիկից հիւսիս մի բլրակի վրայ գտնուող «Կախան» ուխտատեղու ծառերը։

Ե. Գիւնէյ-Ճարտար գիւղի «Կոհակ» կամ «Յակովիկ» ուխտատեղու ճապկի ծառերը։

Զ. Հին Քեաթուկ գիւղի Գիզաւոր (զօրաւոր) ուխտատեղու երկու ահագին կաղնու ծառերը։

Է. Հարաւ գիւղի «Զըրաւոր» (զօրաւոր) անունով հինաւուրց կաղնին։

Ը. Նոյն գիւղի հարաւային կողմում մի վերստ հեռաւորութեամբ «Ջամալի խաչ» անունով թեղի, հացի, կաղնու ծառերը։

Թ. Ղաւախան գիւղի թեղի և ընկուզի ահագին ծառերը։

Ժ. Սղնախ գիւղի «Խնձորախաչ» կաղնին։ Սրա մասին

պատմում են, թէ մի ժամանակ խնձորենի է եղել։ Մի օր մի Թուրք ճիպոտով խփել է, որ խնձորները թափէ, իսկոյն և եթ կաղնու է փոխարկուել։

ԺԱ. Միրէշալլու գիւղի տնճրի ծառը, որ մի բունի վըրայ բուսած չորս աՀագին ծառեր են։ Պատմում են, թէ Սուսանենց տնից մինը կտրել է այս ճիւղերից մինը և անմիջապէս մեռել։ Նրա տունն էլ կամաց կամաց քանդուել է և սերունդը ոչնչացել։ Եւ այժմ գիւղի կանայք անիծելիս ասում են. «Սուսանենց օճախի օյինը գայ գլխուտ»։

ԺԲ. Աւգուր գիւղի արևմտաՀարաւային կողմում, բլրակի վրայ «Մաթիկ բաբայ» կոչուած կաղնի և այլ ծառերը։

Այստեղ ամէն մի անցորդ դնում է իւր ձեռնափայտը մի խոռոչաւոր կաղնու մէջ, յուսալով փայտի Հետ իւր ցաւն էլ այնտեղ Թողնելու։ ՋոՀ մատուցանողները գործ են ածում այդ փայտերը մատաղներն եփելու։

ԺԳ. Նոյն գիւղում, մի ուրիշ բլրակի վրայ գտնուող «Ծառեր» անունով ուխտատեղու կաղնու, բոխու և այլ ծառերը։

ԺԴ. Նոր-Շէնի Սաղունց կաղնին։

ԺԵ. Գիշի գիւղի «Ոսկի-խաչ» անուն աՀագին կաղնին։

ԺԶ. Գիւնէյ-ծարտարի Շմանէքի մօտի Թիքեռնը ծառը։ Ասում են, թէ քաՀանան կտրել է դրա մօտ եղած միւս ծառը, որի պատճառով և՛ Հիւանդացել և երեք օրից յետոյ մեռել է։

ԺԷ. Սղնէք գիւղի «Կաղնի խաչը»։ Սա մի աՀագին կաղնի է, որի մօտ մի խաչ քար կայ։

ԺԸ. Նոյն գիւղի «Կանաչ խաչը»։ Սա էլ մի քարակոյտ է, շրջապատուած ընկուզենի և ուռի ծառերով։

ԻԹ. Դռնավարզ գիւղի «Խաչին Հարթ» անուն սղնի ծառը և այլն։

Միմիայն մի որոշ Հիւանդութեան բժշկող և կամ մի որոշ շնորՀք տուող սուրբ ծառերից նշանաւոր են Հետեւեալները.

Սարիբէկում կայ մի Հարիւրամեայ Թեղի ծառ, որի բընի մէջ առիշեղ $1/_2$ մետր երկարութեան մի նեղ անցք է

ձգւում։ *Մկնատամ* ունեցողները մոմեր վառելով ծառի առջև, մի ճիւղի վրայ շոր են փաթաթում, անցկացնում անցքի մէջ և ապա հանում և հիւթը քսում մկնատամին։ Ասում են թէ անմիջապէս լաւանում է։

Քերթ գիւղի մօտ կան չորս ահագին կաղնենիներ, որոնց բնի հողից վերցնում քսում են երեսներին, որ *մկնատամն* անցնի։ Սրա ուխտի օրը Աւագ Զորեքշաբթի օրն է, երբ բազմաթիւ մոմեր են վառում և մատաղներ կտրում։

Սարգսաշէնի մօտ մի քըլըւէրդի ծառ կայ, որ կոչւում է «Ըխտըլահազի խաչ»։ Հազողները գալիս այս ծառի առաջ մոմեր են վառում և բեւեռներ գամում ծառին, շորի կտորներ կապում, որ այլ ևս չհազան։

Դոնավարզ գիւղում կայ մի խաչքար, շրջապատուած կաղնի ծառերով։ Այս տեղը կոչւում է «Գիօրդնուկախաչ» և այստեղ գալիս են ձեռների վրայ «գորդնուկ» ունեցողները բժշկութիւն հայցելու։

Խաչմաչ գիւղի հանդէպ մի բլրակի վրայ գտնւում է «Հարևայ եղցի» անունով մի փոքրիկ մատրան աւերակ, ուր կան վեց ընկուզի և թեղի ծառեր։ Սա բժշկութիւն է տալիս յօդացաւի և մէջքացաւի։ Միևնոյն ժամանակ ամէն մի անցորդ նախ ուխտ է անում այստեղ և ապա անցնում։ Մինը պատմում էր, թէ մի անգամ հարբած լինելով՝ անցել է այդ տեղի մօտով և չէ համբուրել, տուն հասնելուն պէս վիզը ծռւել է, և միայն երկրորդ օրը, երբ մի աքաղաղ է զոհել այդ ուխտատեղուն, ուղղւել է։

Հացի գիւղում «Որդոտէն (հորթերի) խաչ» անունով մի ահագին կաղնի կայ, որ բժշկութիւն է տալիս ջերմ ու տենդ հիւանդութեան։

Փիրիճամալ գիւղի «Զրաւար» (զօրաւոր) անունով խոռոչաւոր ծառը և Նախիջևանիկի «Քամու-խաչ» անուն բարձր ծառերը ռեվմատիզմի բժշկող են։

Գիշի գիւղի մօտ էլ կայ Բըըըջամալ կոչուած ուխտատեղին, որ մի մատրան հիմնայատակ աւերակ է, պատած թքեռն և թեղի ծառերով։ Շատ լաց լինող երեխաներին

տանում այդ ծառերի տակ պարկեցնում և մի քար դնում են փորին, ու մոմեր վառում ծառերի առաջ, որ երեխան այլ ևս շատ լաց չլինի։

Նոր-Շէնում մի պուշնի ծառ կայ, որի բնի մէջ մի ծակ է գոյացած։ Նախապէս մոմեր վառելով, լղար երեխաներին անց են կացնում այդ ծակով, որ գերանան։

Եմեշջան գիւղում գտնւում է «Ջեարկեալ մարագ» անունով ուխտատեղին, որ մի շարք մսուրների տեղեր են և միքանի խաչ քարեր։ Սրանց մօտ կան շատ ծառեր, որոնց ուխտ են գալիս խուլ մարդիկ, բժշկութիւն հայցելու։

Նախջևանիկում մի նահատակի գերեզման կայ, խաչքարերով և ծառերով շրջապատուած, ուր բերում են խելագարներին, բժշկութիւն հայցելու։

Դռնավարգ գիւղի հանդէպ, մի բլրակի վրայ գտնւում է մի փոքրիկ կաղնի, որ կոչւում է «Մատաղախուտ»։ Այստեղ, այս կաղնուն զոհեր են մատուցանում, մանաւանդ երբ մորեխ է գալիս։ Ասում են, թէ մորեխը գալիս այդ կաղնու վրայ հանգստանում է և երբ մատաղ են կտրում, ուտում և անմիջապէս հեռանում է։ Մատաղախուտի մօտ կայ մի հին ամրոցի աւերակ, որ տեղացիները «Կռապաշտի ղալա» են կոչում։ Աւանդաբար ասում են, թէ այդտեղ բնակող կռապաշտներն էլ այդ մատաղախուտին զոհեր են մատուցանելիս եղել։

Նոշկայ վանքում կան հինաւուրց ծառեր, ուր բերում են թէ հիւանդ և թէ առողջ անասուններ, երեք անգամ պտտեցնում ծառերի և վանքի շուրջը և մահակը կտրում, որպէս զի հիւանդ անասունները առողջանան, իսկ առողջները պահպանուին հիւանդանալուց։

Դռնավարգ գիւղի արևելեան կողմը կայ մի ճապկի ծառ, որ շատ բարձր է։ Հիւանդ անասուններին բերում երեք անգամ պտտեցնում են այս ծառի շուրջը և մահակը կտրում ծառի տակ, որով և՛ անասունի հիւանդութիւնը այդ կտրըուած մահակի հետ մնում է այդտեղ ու անասունը լաւանում։

*Նոյն գիւղում կայ և՛ «Տրվըրախաչ» անուն ուխտատեղին, որ մի խաչ քար է, շրջապատուած բոխի ու տանձի ծառերով։ Ամուլ կովերին տանում են այնտեղ, որ ծնի։*

*Սուրբ համարուած ծառերը չորանալուց յետոյ էլ ժողովրդի համար նուիրական են մնում։ Ոչ ոք չի կտրտում, վառում և կամ ուրիշ տեղ տանում այդ փայտերը, այլ շարունակում են մոմեր վառել և աղօթել դրանց առաջ։ Եւ երբ սկսում է փթիլ, փոշին ջրի մէջ են անում և խմում և կամ քսում գորտնուկի (ձեռի հիւանդութիւն) վրայ, որ առողջանայ։ Այսպիսի փոշին «խնօթուն» է կոչւում։*

*Այսպիսի ծառերից նշանաւոր են Սզնէք գիւղի կաղնին, Գիւնէյ-Ճարտարի օճխի մօտինը և այլն։*

*Միքանի ծառեր էլ, ինչպէս և՛ միքանի քարեր, պաշտւում են լոկ այն պատճառով, որ կայծակի հարուած են ստացել։ Ժողովուրդը հաւատում է, որ անձրև կամ կարկուտ գալիս քաջքերը պաշտպանւում են ծառերի կամ քարերի տակ, իսկ հրեշտակները իրենց ձեռքի գաւազանով—կայծակով—խփում են նրանց և հալածում այնտեղից, միայնգամայն սրբելով և՛ ծառը կամ քարը։ Այսպիսի ծառերից յիշենք օրինակ Հարաւ գիւղի կենդրոնում, ձորակի մէջ գտնուող կաղնին։ Խաչմաչ գիւղում Հարևան եղցու ընկուզենին և այլն։*

---

*Միքանի բոյսերի և ծաղիկների մասին էլ կան հետևեալ աւանդութիւնները.*

## ԲԱՄԲԱԿ

*Աստուած մարդուն կաւից շինելուց յետոյ, կաւոտ ձեռքերը իրար է քսել և կաւի մնացորդները երկիր թափել, որից բամբակ է բուսել։*

## ԽԱՂՈՂ

Խաղողը յառաջացել է Նոյ Նահապետի մատուցած զոհի ոսկորներից, գետնի մէջ թաղելուց յետոյ։

## ՎԱՐԴ ԵՒ ՄԱՆՈՒՇԱԿ

Վարդն ու մանուշակը քոյր և եղբայր են, որ միմեանց միշտ կարօտ են մնում։ Եթէ մինը կարողանայ պահել մանուշակին և ցոյց տալ քրոջը՝ ինչ որ խնդրէ, անմիջապէս կը կատարուի։



## Զ. ԳԼՈՒԽ

# ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

## Ա.

## ԹՌՉՈՒՆՆԵՐ

### Ծիծեռնակ.

Վարանդայում թռչուններից ամենից աւելի ծիծեռնակըն է պաշտւում։ Շատ մեծ մեղք է համարւում նրան սպանել և կամ նրա բունը քանդել։ Ինձ գանգատւում էր մի մարդ, թէ ուզում է տունը քանդել, նորոգել, բայց չի համարձակւում, որովհետև տան հետ միասին պիտի քանդուի և՛ ծիծեռնակի բունը։ Գանգատուողը պնդում էր, թէ իւր հարևանի տունը հրդեհ էր ընկել և բոլոր երեխաներին այրել, որովհետև տան երիտասարդներից մին անխոհեմութիւն էր ունեցել ծիծեռնակի բունը քանդելու։

Մի կին էլ գանգատւում էր, թէ ծիծեռնակը բունը

### ԽԱՂՈՂ

Խաղողը յառաջացել է Նոյ Նահապետի մատուցած զո-հի ոսկորներից, գետնի մէջ թաղելուց յետոյ։

### ՎԱՐԴ ԵՒ ՄԱՆՈՒՇԱԿ

Վարդն ու մանուշակը քոյր և եղբայր են, որ միմեանց միշտ կարօտ են մնում։ Եթէ մինը կարողանայ պահել մա-նուշակին և ցոյց տալ քրոջը՝ ինչ որ խնդրէ, անմիջապէս կը կատարուի։



## Զ. ԳԼՈՒԽ

## ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

### Ա.

### ԹՌՉՈՒՆՆԵՐ

*Ծիծեռնակ.*

Վարանդայում թռչուններից ամենից աւելի ծիծեռնա-կըն է պաշտւում։ Շատ մեծ մեղք է համարւում նրան սպա-նել և կամ նրա բոյնը քանդել։ Ինձ գանգատւում էր մի մարդ, թէ ուզում է տունը քանդել, նորոգել, բայց չի հա-մարձակւում, որովհետև տան հետ միասին պիտի քանդուի և՛ ծիծեռնակի բոյնը։ Գանգատւողը պնդում էր, թէ իւր հարևանի տունը հրդեհ էր ընկել և բոլոր երեխաներին այ-րել, որովհետև տան երիտասարդներից մին անխոհեմութիւն էր ունեցել ծիծեռնակի բոյնը քանդելու։

Մի կին էլ գանգատւում էր, թէ ծիծեռնակը բոյնը

շինել է օձախի անմիջապէս գլխին, այնպէս որ շատ անգամ կեղտոտում է կերակրները։ Որքան և անախորժ էր այս բանը տնեցիներին, այնուամենայնիւ նրանք չէին համարձակւում քանդելու բունը։

Հաւատացնում են, որ շուշեցի Սէյրանենց Սահակը մեզք չհամարելով ծիծեռնակին վնաս հասցնել, մի անգամ բռնել է մի ծեծեռնակ և լեզուն կտրել։ Եւ այս է եղել պատճառը, որ նրա հինգ որդին էլ համր են ծնուել։

Երբ առաջին անգամ գալիս են ծիծեռնակները, մարդիկ և կանայք նրանց նայելով երեսներին խաչ են հանում. և առհասարակ երբ նրանք ճռուողում են, ասում են, թէ սաղմոս են քաղում, ժամ են ասում, օրհնում են մեզ և այլն։

Այսպէս պաշտելու մասին ասում են, թէ մի անգամ խայթող սողուններ հաւաքուել են և խորհուրդ արել, թէ ո՛ր կենդանու արիւնը ամենից քաղցր է, որ առաւելապէս նրան խայթեն։ Երկար վիճաբանութիւնից յետոյ մոծակին ուղարկում են, որ գնայ բոլորի արիւնն էլ փորձէ ևապա իրենց տեղեկացնէ։ Սա գնում բոլորին խայթում և մարդու արիւնը ամենից քաղցր է գտնում։ Երբ վերադառնում է իւր զեկուցումն անելու, ծիծեռնակն իմանալով այդ, յարձակւում է վերան և սպանում։

Մի ուրիշ աւանդութիւն էլ ասում է.

Մուկը ապաստան գտնելով Նոյի տապանում, կրծեց և ծակեց տապանը։ Ջուրը սկսեց ներս լցուել։ Նոյ այս տեսնելով՝ բարկացաւ մկի վրայ, որ գնաց մի անկիւնում թաքկացաւ։ Յետոյ Նոյ առաջարկեց կենդանիներին, որ փակեն ծակը, սակայն ոչ ոք չկարողացաւ։ Վերջապէս օձը ոլորուելով տարածուեց ծակի վրայ և ծածկեց այն։ Երբ ջրհեղեղը անցաւ, Նոյ առաջարկեց օձին վարձատրութիւն խնդրել մատուցած ծառայութեան համար և սա հանելով իւր լեզուն, մարդու արիւնն ուզեց։ Այդ ժամանակ ծիծեռնակը, որ Նոյի ոտի վրայ նստած էր, յարձակուեց և օձի լեզուն կծեց։ Եւ այս է պատճառը, որ դեռ այժմս էլ օձի լեզուն

*միջից կտրուած է։ Օձն էլ իսկոյն յարձակուեց ծիծեռնակի վրայ, սակայն կարողացաւ միայն նրա պոչից կծել։ Ուստի և՛ նրա պոչը երկուսի բաժանուեց։ Օձի խայթած տեղից երկու կաթ արիւն ընկաւ, մէնը Նոյի վրայ, որ անմիջապէս ոջիլի փոխարկուեց, միւսն էլ գետին, որ լու դարձաւ և թռաւ։*

## *Աղաւնի.*

*Սա էլ ծիծեռնակի պէս, բայց ոչ նրան հաւասար, պաշտւում է։ Սրան ևս չեն սպանում և կամ վնաս հասցնում։ Միայն թէ սրա մասին մի առանձին աւանդութիւն չի պատմւում, տարածուած են միայն ս. Գրքի մէջ պատմուածները։*

## *Կաչաղակ.*

*Պաշտուող թռչուններից է և՛ կաչաղակը, որի մասին պատմում են, թէ մի անգամ սա մի պառաւի տան գլխին նստած աւետում է նրան, թէ որդին օտարութիւնից գալիս է։ Պառաւը առանց հասկանալու նրա աւետիքը, մի կտոր հաց է ձգում նրան։ Նա իսկոյն տանում է այդ հացը և տալիս որդուն, որ սաստիկ քաղցած է լինում։ Յետոյ վերադառնալով նոյն բանն է աւետում և մի կտոր հաց ևս ստանալով, խեղճ որդուն տանում։ Այս բանը միքանի անգամ կրկնւում է, մինչև որ պառաւը ձանձրանալով, մի քար է ձգում դէպի կաչաղակը։ Սա էլ վերցնում է այդ, և տանում ձգում որդու գլխին։ Որդին իսկոյն և եթ մեռնում է։ Պառաւը գալիս է մեռած որդու մօտ և ճանաչում իւր ձըգած քարը։ Այնուհետև այլևս քար չեն ձգում կաչաղակին, այլ միշտ հաց են տալիս ու խնդրում. «Բարին մեզ, չա՛րը թշնամուն»։*

*Պատմում են, թէ մի անգամ մի գիւղացի, մի կաչաղակի ոտներից մի քիչ յարդ է կապել և կրակ տալով բաց թողել։ Խեղճ թռչունը իսկոյն այրուել է։ Ուղիղ մի տարուց յետոյ այդ միևնոյն գիւղացու փոքրիկ աղջիկը իւր տատի տանը միայնակ եղած միջոցին, շորերը վառւում են և մինչ-*

դեռ նա վազում է տուն, կրակը լափում է նրան։ Գիւղացին նոր զգում է իւր արած մեղքը և կրած պատիժը։

## ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆՆԵՐ

---

Թռչուններ էլ կան, որոնք թէև չեն պաշտւում, բայց որոնց մասին կան հետևեալ աւանդութիւնները.

### Կուկու (կըկու).

Մի հարս ծառերից մի ճօճք է կապում, դնում իւր միակ երեխային մէջը և ինքը գնում քաղհան անում։ Երբ մի քիչ յետոյ վերադառնում է, երեխային այլ ևս ճօճքի մէջ չի գտնում։ Ցաւից և սկեսուրի վախից թռչուն է դառնում և կուկու *) կանչելով պտրում իւր երեխային։

### Իւպոպ կամ Սանրակապ (Ցոպ-յոպ).

Սա մի հարս է եղել, որ մի անգամ թողել է խմորը կիսատ հունցած և սկսել է մազերը սանրել։ Յանկարծ կեսուրը վրայ է հասել, և սա ամօթից ու վախից թռչուն է դառել, սանրը գլխին, և թռել։

### Կաքաւ.

Սա ժամանակով մի հարս է եղել։ Մի օր, երբ սա խմոր է հունցել, սկեսուրը բարկացել է վերան, թէ ինչո՞ւ է պինդ հունցել. սա էլ դիմադարձութիւն է արել, ասելով թէ կակուխ է։ Սկեսուրը բարկանալով անիծում է հարսին, որ իսկոյն կաքաւ է դառնում։ Բայց մինչև այսօր էլ նա դիմադարձութիւն է անում սկեսրոջը, անդադար կրկնելով, թէ «Կակուղ ա, կակուղ ա»։

---

*) Վարանդայի գիւղերում երեխային կուկու են կանչում.

### Բլբուլ.

Աստուած Ադամին ստեղծելուց յետոյ, երբ տեսաւ, որ միայնակ տխուր է, ասաց նրան, որ իւր համար մի զբօսց-ընկեր ընտրի և նա ընտրեց բուլբուլին։ Սակայն այս անգամ էլ բուլբուլի ընկերը միայնակ մնաց և սկսեց տխրել, ուստի և՛ Աստուած ստեղծեց Եւային, և բլբուլին վերադարձրեց իւր ընկերոջը։

### Պղուղուս (Բուէճ).

Մի պառաւ ունենում է Պօղոս անունով մի հատիկ որդի։ Մի անգամ եկեղեցուց վերադառնալով՝ պառաւը երեխային մեռած է գտնում։ Խփելով իւր գլխին, պառաւը խընդրում է Աստծուց որ իրեն թռչուն դարձնէ, որ և՛ կատարւում է։ Եւ այդ օրուանից այդ խղճուկ պառաւը կանչում է իւր որդուն, Պղողո՜ս, Պուղոս, այն էլ գիշերները, որովհետև ոչ հանգիստ և ոչ էլ քուն ունի։

### Ագռաւ.

Երբ Կայէնը սպանում է Աբէլին, Ադամ սկզբում կարծում է թէ քնած է, բայց երբ յետոյ հաւաստիանում է, որ մեռած է, պատանում է նրան և թաղում։ Աստուած խըրղճում է Ադամին, և ագռաւին ուղարկում, որ ասէ Աբէլին, թէ պատանդ մաշիր եկ։ Սա էլ գնում է և փոխանակ այդ, ասում է, թէ «տապանդ մաշիր եկ»։ Աստուած բարկանում է ագռաւի վրայ և անիծում, ասելով թէ բերանդ դրած եօթը պատառից մինը միայն կուլ գնայ։ Եւ այդ է պատճառը, որ մարդիկ այդքան ատում են նրան և որ ագռաւը այնքան անկուշտ է, որովհետև եօթը պատառից միայն մինն է կուլ գնում։

## Անգղ.

Անգղը ամենաիմաստուն թռչունն է համարւում, որի համար և՛ նրան չեն սպանում։ Նա շատ երկար է ապրում և միայն 700 տարեկան ժամանակն է ձու ածում և ձագ հանում։ Պատմում են, թէ շատ հին ժամանակներում Հարուն-Ղարուն մի շատ հարուստ մարդ իւր ահագին հարըստութիւնը բարձում է ոչխարների վրայ և տանում մի սարի մէջ թաղում, ոչխարներին էլ մորթում։ Սրա թոռը իմանալով այդ հարստութեան մասին, կամենում է պտրել և գտնել, բայց բոլոր միջոցները 'ի դերև են ելնում։ Վերջապէս մի իմաստուն մարդ խոստանում է անգղներից իմանալ տեղը և այս նպատակով շատ ոչխարներ մորթել տալիս ու տարածում է մի դաշտի մէջ։ Ինքն էլ մի քթոցի մէջ, գոմէշի ստամոքսով ծածկուելով թաք է կենում։ Իսկոյն անգղները ամենայն կողմից հաւաքւում ուտում են ոչխարները. երբ կշտանում են, գնում իրենց պապին էլ են բերում, որ նա ևս կշտանայ։ Երբ սա ևս կշտանում է, թոռները հարցնում են նրան, թէ ուրիշ անգամ էլ այդպէս կշտացե՞լ էր։

Մէկ էլ, ասում է պապը, Հարուն-Ղարունի ժամանակն եմ կշտացել, երբ ոչխարներին բարձեց իւր ահագին հարըստութիւնը և տարաւ մի, այն սարի մէջ թաղեց և յետոյ էլ բոլոր ոչխարները կոտորեց։

Իմաստուն մարդը անմիջապէս դուրս է գալիս քթոցից, գնում փորում ցոյց տուած սարը և գտնում անթիւ հարըստութիւնը։

Հարուն-Ղարունի ժառանգը առաջարկում է իմաստունին իբրև վարձատրութիւն վերցնել հարստութեան մի մասը. սա էլ խնդրում է տալ այնքան, որքան կը կշռէ մի մարդու գանգ։ Սակայն Հարուն-Ղարունի բոլոր հարստութիւնը չի կարողանում կշռել մի մեռելի գանգ։ Այս ժամանակ իմաստունն ասում է, թէ մի բուռն հող ածեցէք նժարի միւս կողմը և երբ ածում են, իսկոյն կշռում է։ «Ահա, տեսնո՞ւմ

էք, ասում է իմաստունը, մարդու աչքը միայն մի բուռն հողը կը կշտացնի. այդ անբաւ հարստութիւնը բաւական չեն նրան, ես էլ բացի այդ մի բուռն հողից, ուրիշ բան չեմ ուզում»։

## Չըչըթան կամ չափարծտի.

Մի անգամ Աստուած հրամայել է, թէ ով որ շուտով ինձ մօտ գայ, ես նրան թռչունների թագաւոր կը նշանակեմ։ Արծիւը իսկոյն սկսում է թռչել դէպի երկինք, բայց ճանապարհին յոգնում է և ուզում է հանգչել. այս ժամանակ չըչըթան կամ չափարծտին, որ նրա թևի տակ ապաստանած, հանգիստ բարձրանում էր, դուրս է թռչում և գնում Աստծու մօտ։

—Ինչու ես եկել, հարցնում է Աստուած այս փոքրիկ թռչունին։

—«Եկել եմ, որ թռչունների թագաւոր նշանակես ինձ», պատասխանում է չափարծտին։

—Դէհ, որ այդպէս է, ասում է Աստուած, գնա մի ճիպոտ բեր, որ ոչ կարճ լինի, ո՛չ երկար, ո՛չ ծուռ, ոչ ուղիղ։

Այդ օրից սկսած նա պտրում է չափարների (ցանկապատ) տակ ճիպոտներ, և երբ գտնում է՝ ասում է.

«Չի՛, չի՛, էս չի՛. էն չի՛»։

## Բ.

## ՄԻՋԱՏՆԵՐ

---

### Ա.

### *Մեղու, շերամ եւ որդան կարմիր.*

Ցոբ. Երանելին որդունքը վերցրել դրել է վերքերի վրայ ասելով. «Կերէք, կերէք, Աստուած ձեզ կերակուր է տուել»։ Որդերն էլ իսկոյն փոխարկուել են մեղուի, շերամի և որդան կարմիրի։

### Բ.

### *Աստծու կով.*

Աստծու կով կամ զատիկ կոչուած միջատը (божья коровка) սուրբ են համարում և երբէք չեն սպանում։

### Գ.

### ՁԿՆԵՐ

Ձկների մասին ընդհանրապէս շատ քիչ աւանդութիւններ կան, երևի մեծ գետեր և լճեր, հետևապէս և՛ զանազան տեսակ ձկներ չլինելու պատճառով։

Ցոյանի է միայն՝

### *Օճաճուկը.*

Սա Գաբրիէլ հրեշտակի փողն է համարւում, որ յանկարծ ընկել է ջուրը։ Ապացոյց՝ որ նրա վրայ կան 12 ծակի հետքեր։ Այս ձկները խմբով են շրջում, սրնգի ձայն հանելով։ Ձկնորսներն էլ ականջ են դնում, լսում սրնգի ձայնը և ուռկանը ձգում, որսում։

Դ.

## ՕՁԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

Քեաթուկ լերան վերայ, «Սիպտակ հէօլ» ուխտատեղում և Սխտորաշէնի ահագին չինարի ծառի մէջ կան մի մի ահագին օձ։ Ճանապարհորդները անցնելով այդ ուխտատեղիների մօտով, գնում ուխտ են անում, մոմ վառում, աքաղաղներ զոհում, որպէս զի այդ օձերը պաշտպանեն իրենց և ճանապարհորդութեան ժամանակ օձերը չխայթեն իրենց։ Զոհաբերութիւնների ժամանակ այս օձերը դուրս են գալիս և հանգիստ կերպով շրջում, ոչ մի վնաս չպատճառելով ուխտաւորներին։

Ուխտաւորները վերցնում են այդ օձերի շապիկների (խորխի) կտորները և պահում գլխարկների մէջ։ Երբ օձ է պատահում, հանում այդ շապկի կտորը ցոյց են տալիս։ Հաւատացնում են, թէ օձը անմիջապէս յետ է քաշւում և ոչ մի վնաս չի տալիս։

Ընդհանրապէս հայերը ոչ մի վնաս չեն հասցնում լոկին, մինչդեռ օձերին աշխատում են սպանել։

Պատմում են, թէ մի անգամ մի հայ մարդ մի կատաղած ուղտի վրայ հրացան է արձակում, բայց հրացանը վրիպում է և ուղտը ընկնում է հայի ետևից։ Սա շունչը կտրըւած ցատկում է մի ցանկապատից և ընկնում մի այգի։ Այս միջոցին մի լոկ դուրս է պրծնում և խայթում, սպանում կատաղած ուղտին։ Այնուհետև հայերը լոկին հայ են համարում, և նրա արած լաւութեան համար պաշտում։

Լոկը օձերի սափրիչն է համարւում, և երբ սկսում է սափրել մի որևէ օձի գլուխ, յանկարծ մի հարուած է տալիս գլխին և անմիջապէս սպանում։

Լոկին բարկացնելիս ասում է. «Կը համբերեմ, չեմ կըծի, բայց եթէ կծեցի, միայն հաւի պանիր պիտի քսէք, որ առողջանայ»։ Եւ որովհետև հաւի պանիր չկայ, ուստի լոկը սրանով ուզում է ասել, թէ իւր կծածը ոչնչով չի լաւանալ։

Այս է պատճառը, որ վարանդացիները երբէք չեն չարչարում և կամ սպանում լոկին, հաստատ գիտենալով, որ նա, իբրև հայ, իրենց չի կծիլ, այլ միայն Թուրքին, իսկ երենց կծում է օձը, որ Թուրք է և Թուրքերին չի կծում։ Եւ այս է պատճառը, որ Թովչիները (ովսունչի) միայն Թուրքերն են լինում։

Քառասնի գիւղից փոքր ինչ բարձր, մի բարձր ժայռ կայ, որ մի քիչ առիշեղ կտրուած է։ Այդ կտրուած, տափարակ տեղում, երկու Թզենիների տակ ապրում է մի ոսկեղջիւր օձ, որ երբեմն իւր լուսաճաճանչ գլուխը դուրս է ցըցում ժայռից։ Ասում են, որ եթէ մինը կարողանայ մի անդրավարտիկ ձգել նրա գլխին, այն ժամանակ օձը կը փախչի, բայց կը թողնէ իւր ոսկի եղջիւրները, որոնք իմաստութիւն կը տան, ում մօտ էլ որ լինին։

Շատ տներ էլ օձեր կան, որ տան «գէօվլաթ» համարուելով՝ ոչ մի հալածանքի չեն հանդիպում։ Տնեցիները ամանով կաթ են տալիս նրանց, որ խմելուց յետոյ ոսկիներ են ձգում ամանի մէջ։

Պատմում են, թէ մի մարդ միշտ կաթ է տուել իւր տան մի օձի և ամէն անգամ մի ոսկի ստացել։ Մի անգամ այդ մարդը ուրիշ երկիր գնալու պատճառով որդուն է յանձնարարում օձին կաթ տալ։ Որդին տեսնելով օձի տուած ոսկին, մտածում է սպանել նրան և մի անգամից ստանալ նրա անթիւ ոսկիները։ Հարուածը վրիպում է, օձի ագին կըտրըւում է և սա խայթում է տղին, որ միքիչ յետոյ մեռնում է։

Երբ հայրը վերադառնում է, իմանում է ամէն ինչ և շատ ցաւում։ Մի ժամանակից յետոյ հայրը դուրս է հրաւիրում օձին, դնում է նրա առաջ մի աման կաթ և առաջարկում հաշտուել և առաջուայ պէս շարունակել։ Սակայն օձը մերժում է կաթը և ասում. «Քանի որ ես տեսնում եմ իմ կտրուած ագիս և դու մտաբերում ես քո սպանուած որդին, մենք չենք կարող բարեկամներ լինել»։ Այս ասելով

օձը բոլորովին հեռանում է և կարճ միջոցում այս մարդը աղքատանում և թշուառանում։

---

Ի.

## ԿԱԹՆԱՍՈՒՆՆԵՐ

Այս կենդանիների պաշտամունքից բուն Վարանդայում նացել է միայն կատուին վերաբերեալ մի քանի սնոտիապաշտութիւններ։ Այսպէս՝ կատուն սուրբ է համարւում և նրան սպանողը խօթ եկեղեցի պիտի շինէ, որ կարողանայ այդ մեղքից ազատուել։ Եւ եթէ այդ չի կարող անել, մեղքից թեթևանալու համար գոնէ մի խալուար (ցորեն մաղելու մաղ) պիտի առնէ, յատկապէս դրկիցներին փոխ տալու։

Նրա մասին կան հետևեալ աւանդութիւնները․

### Կատու.

Ա.

Քրիստոսին փշէ պսակով չարչարելիս, արցունքը յորդութեամբ հոսում էր և նա թաշկինակով սրբում էր։ Մինը խլեց նրա ձեռքից թաշկինակը և գցեց աղբանոցը, ուր անմիջապէս կատուի փոխարկուեց։

Բ.

Մի անգամ Քրիստոս էբր մի հասարակ մարդ հիւր է լինում մի տան, մկները շատ նեղում են նրան և տնեցիներին։ Այս ժամանակ նա ձգում է իւր թաշկինակը դէպի մկները, որ կատու դառնալով բռնում է նրանց։

Վարանդացիները պատմում և ուխտ են գնում մի քանի կենդանիների պաշտաման տեղեր, որոնք թէև Վարանդայում

չեն գտնւում, սակայն նրան սահմանակից լինելով՝ այնքան էլ հեռու չեն։

Այսպիսի ուխտատեղիներից նշանաւոր են.

Զանգեզուրի գաւառում, Տաթև վանքի հանդիպակած լեռնաշղթայի մէջ գտնւում է Եզան ուխտատեղին կամ ինչպէս սովորաբար Թուրքերէն կոչում են՝ «Օկիւզ—զիարաթ»-ը։ Սա քարերի մի ահագին կոյտ է, որ օր աւուր աւելանում է, որովհետև ամէն մի անցորդ պարտաւորուած մի քար է բերում ձգում այդ կոյտի վրայ։ Աւանդութիւնն ասում է, թէ այդտեղ թաղուած է մի եզ, որ ինքնակամ և առանց մարդու ճիպոտի այդ տեղի քարհանքից ահագին քանակութեամբ քար է կրել Տաթևի եկեղեցին շինելու։

Այս ուխտատեղին նուիրական է ինչպէս հայերի, այնպէս և՛ Թուրքերի համար։

Երբ կենդանիների մէջ տարափոխիկ հիւանդութիւններ են տարածւում, թէ հայերը և թէ Թուրքերը բերում են կենդանիներ և այդ քարակոյտի շուրջը երեք անգամ պըտըտեցնում։ Եւ եթէ, հիւանդութեան սաստկութեան պատճառով, կենդանիներին բերել չեն կարող, գալիս, այդ քարակոյտի տակից մի բուռն հող են հանում և տանում, աղի հետ խառնում, տալիս հիւանդ կենդանուն։ Շատ դէպքեր են պատմում, երբ կենդանիները անմիջապէս լաւացել են։

Խաչէնի Պտկաբերկ հինաւուրց եկեղեցու մօտ թաղուած է մի արջ։ Աւանդութիւնն ասում է, թէ այդ եկեղեցին շինելիս մի արջ շարունակ քար է կրել շրջակայքից։ Երբ եկեղեցին աւարտել են, պակասել է միայն մի մեծ քար և այս արջը երկար որոնելուց յետոյ շատ հեռւում գտել է և շալակած բերել։ Երբ վայր է դրել քարը, վարպետը տեսել է, որ թոկը կտրելով արջի ուսերը՝ սաստիկ արիւնոտուել է, վերցնում է թոկը և խփում եկեղեցու պատին։ Դեռ մինչև այժմ էլ ցոյց են տալիս այդ արեան հետքերը։

Յետոյ արջը օգնել է վարպետին քարը իւր տեղը դնելու, և երբ ամէն ինչ աւարտել են, շունչը փչել է։ Վարպետը մեծ ցաւակցութեամբ ամփոփել է նրա մարմինը եկե-

գեցու մօտ և վերան քարեր դարսել։ Ուխտաւորները մոմ են վառում այդ քարակոյտի վրայ և մատաղներ անում։

### *Արջ.*

*Սրա մասին կայ հետևեալ աւանդութիւնը.*

*Արջը ժամանակով մարդ ջրաղացպան է եղել. երբ շատ գողութիւններ է արել, Աստուած բարկացել է վրան և արջ դարձրել։ Եւ ապացոյց սրան՝ երբ սպանում են արջին, սա առաջին թաթերը միմեանց վրայ դնելով՝ խաչում է։*



*Բոլոր կենդանիները և բոյսերը լեզու ունին և կարող են խօսել։ Որպէսզի մարդիկ կարողանան նրանց հասկանալ, պէտք է, որ շահմար օձը իւր լեզուն քաշէ մարդու բերանը։ Այս բաղդին արժանացել են ովչի (որսորդ) Փիրումը և Լոխմանին։*

---

## Է. ԳԼՈՒԽ.

## ԼՈՒՍԱՒՈՐՆԵՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

---

*Արեւ եւ լուսին.*—*Վարանդայում դեռ մինչև այժմս էլ ծերունիներ և պառաւներ կան, որոնք պաշտում են արեգակն և լուսին։ Շատ անգամ պատահում է, որ սրանք ծունր են չոքում նոր ծագող արեգակի և նոր նորող լուսնեակի առաջ և աղօթում նրանց այսպէս. «Աստծոյ ցնծուղն տուած ըրեգնակ, մոյ մօրայ նոր ըլած լուսնինկեայ, իմ երեսս քո ոտանըդ տակը, դու իմ խոխէքս պահես և այլն։ Լուսնի նորին դրեթէ բոլոր գիւղացիները առաջին անգամ լուսնին նայելիս, մինչդեռ բաղդաւոր համարուած երեխայի կամ մարդկանց երեսին են նայում, յուսալով, որ այդ ամիս բաղդա-*

ջեցու մօտ և վերան քարեր դարսել։ Ուխտաւորները մոմ են վառում այդ քարակոյտի վրայ և մատաղներ անում։

*Ա ր ջ.*

Սրա մասին կայ հետևեալ աւանդութիւնը.

Արջը ժամանակով մարդ ջրաղացպան է եղել. երբ շատ գողութիւններ է արել, Աստուած բարկացել է վրան և արջ դարձրել։ Եւ ապացոյց սրան՝ երբ սպանում են արջին, սա առաջին թաթերը միմեանց վրայ դնելով՝ խաչում է։



Բոլոր կենդանիները և բոյսերը լեզու ունեն և կարող են խօսել։ Որպէսզի մարդիկ կարողանան նրանց հասկանալ, պէտք է, որ շահմար օձը իւր լեզուն քաշէ մարդու բերանը։ Այս բաղդին արժանացել են ովչի (որսորդ) Փիրումը և Լոխմանին։

---

## Է. ԳԼՈՒԽ.

## ԼՈՒՍԱՒՈՐՆԵՐԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔ

---

*Արեւ ու լուսին.*—Վարանդայում դեռ մինչև այժմս էլ ծերունիներ և պառաւներ կան, որոնք պաշտում են արեգակ և լուսին։ Շատ անգամ պատահում է, որ սրանք ծունր են չոքում նոր ծագող արեգակի և նոր նորոգ լուսնեակի առաջ և աղօթում նրանց այսպէս. «Աստծոյ ցնծուղն տուած ըրեգնակ, ա՛յ մօրայ նոր ըլած լուսնինկեայ, իմ երեսս քո ստանըդ տակը, դու իմ խոխէքս պահես» և այլն։ Լուսնի նորինգրեթէ բոլոր գիւղացիները առաջին անգամ լուսնին նայելիս, միքանիսը բաղդաւոր համարուած երեխայի կամ մարդկանց երեսին են նայում, յուսալով, որ այդ ամիս բաղդա-

ւոր կերպով կ'անցնեն, ուրիշներ դրամի վրայ հայեացք ձգելով համբուրում և ճակատին են դնում, յուսալով շատ դըրամ շահել այդ ամսում։

Արևով երդուելը շատ սովորական է՝ «իմ արևը վկայ- քու կանանչ արևդ վկայ»։

Մինչ տանու պաշտաման մնացորդ՝ խոտի կամ փայտի կոյտեր վառելու սովորութիւնը դեռ մինչև այժմ էլ շարունակւում է Վարանդայի գիւղերում, թէև քաղաքում արդէն վերջացել է։

Տեառնընդառաջի երեկոյին նշանուած երիտասարդները ցլոնի ծառի ճիւղեր են բերում և դարսում եկեղեցու գաւթում։ Յետոյ եկեղեցու ջահից բերած մոմով վառում են այդ կոյտը, ծուխի ուղղութիւնից գուշակութիւններ անում, նորահարսին, ինչպէս և՛ նորածին երեխային երեք անգամ պըտտեցնում շուրջը։ Երիտասարդները թռչում են կոյտի վրայով, ուրիշներ պար բռնում շուրջը։

Արևի և լուսնի մասին կան յետևեալ աւանդութիւնները։

Ա.

Ժողովուրդը լուսինն ու արևը քոյր և եղբայր է համարում։ Մի օր քոյր արևը ասել է, թէ ինքը վախենում է գիշերը մանգալուց և ցերեկն էլ ամաչում երբ իրեն են նայում։ Այդ ժամանակ եղբայր լուսինը պատասխանել է նրան, թէ ինքը գիշերը կը շրջի, թող ցերեկը նա պտտուի, միայն վերցնի մի քանի թոփ ասեղ և խրի իրեն նայողի աչքերը։ Եւ այդպէս էլ եղել է։ Արևը նստած մի առիւծի մէջքին, սլանում է երկնակամարի վրայով, և երեկոյեան գնում հանգստանում մօր գրկում։ Առիւծը իւր վիթխարի թրով պաշտպանում է նրան քաջքերից։

Բ.

Մի օր լուսնի և արևի մայրը խմոր էր հունցում, որ-

գին, լուսինը, գալիս և խնդրում է, որ իրեն համար էլ մի քլէթ չինի, մայրը բարկանում և խմորոտ ձեռքով խփում է երեսին։ Դեռ մինչև այժմս էլ լուսնի վրայ երևում են նրա խմորոտ մատների հետքերը։

Գ.

Մի կին իւր որդու համար գուլբայ էր գործում։ Երբ քիչ էր մնացել վերջացնելու, արեգակը ուզում էր մայր մտնի, ուստի մայրը ասաց որդուն, թէ թող մնայ վաղը կը վերջացնեմ։ Որդին աղաչում է մօրը, որ այդ օրը վերջացնի։ Այդ դէպքում, ասում է մայրը, աղաչիր արեգակին, որ մի քիչ սպասէ։ Երեխան դառնում է արեգակին և ասում. «Ջան արեգակ, մի քիչ սպասիր, մայրս վերջացնի գիզի գուլպաս, հագնեմ»։ Արեգակը սպասում է և երբ երեկոյեան ուշ մայր է մտնում, մայրն հարցնում է, թէ ինչո՞ւ այնքան ուշացաւ։

Արեգակը պատասխանում է, թէ մի երեխայ խնդրեց իրեն սպասել, մինչև որ մայրը կը վերջացնէր նրա գուլպան։ Արեգակի մայրը բարկանում է և անիծում երեխային, որ ցերեկը մեռնի և գիշերը կենդանանայ, նրա մայրն էլ երբէք չվերջացնի գուլպան։ Եւ այնուհետև այս երեխան ցերեկները մեռած է լինում, իսկ գիշերները կենդանանում և գալիս է մօր մօտ, խնդրում իւր գիզի գուլպան։ Սակայն մայրը երբէք վերջացրած չէ լինում, որովհետև գործածը ինքն իրեն քանդւում է և խեղճ երեխան ոտաբոբիկ թափառում է։

Դ.

Մի հարսնացու ցանկանալով անշուշտ աւարտել իւր փեսայուի գուլպան, խնդրել է արեգակից մի քիչ էլ սպասել։ Բարի արեգակը կատարել է հարսնացուի խնդիրը և ուշ մայր մտել։ Սակայն արեգակի չար մայրը, հարցնելով նրա ուշանալու պատճառը՝ բարկացել է և անիծել հարսնացուին,

տանելով. «Քար դառնայ նաս»։ Իսկոյն խեղճ Հարսնացուն քար է դարձել։ Եւ այս օր էլ Նինդի գիւղի մօտ ցոյց են տալիս այդ քար դարձած Հարսնացուն։

*Խաւարում.*—Արեւի և լուսնի խաւարումը բացատրում են այսպէս. Քաջքերը կամ սատանաները կտրելով նրանց ճանապարհները, ուզում են վիրաւորել նրանց, իսկ նրանք պաշտպանւում են և վերջի վերջոյ յաղթում։

Խաւարման ժամանակ մեծ սուգ է տիրում գիւղերում. երիտասարդները հրացաններ են արձակում դէպի վեր, մտածելով թէ կարող են քաջքերին խփել, ուրիշներ պղնձեայ ամաններ ծեծելով և զանգերը խփելով ահագին աղմուկ են բարձրացնում, դարձեալ քաջքերին վախեցնելու նպատակով։ Իսկ կանանցից շատերը լալիս են ցաւից և երկիւղից։

***

*Օր.*—Երկնքում կայ երեք թռչուն։ Երբ սրանցից առաջինը ձայն է հանում, բացւում է առաւօտը, երկրորդի ձայնելիս դառնում է կէս օր, իսկ երբ երրորդ թռչունն է ձայնում՝ մութը պատում է աշխարհը։

*Աստղեր.*—Սրանցից ամէն մինը պատկանում է մի մարդու։ Բարեգործ և առաքինի մարդունը պայծառ է լինում, չարագործ և անբարոյականինը՝ աղօտ։ Երբ աստղը վայր է ընկնում, և կամ փոխում է իւր ընթացքը, մարդը մեռնում է։

Գիսաւոր աստղեր երեւալիս ասում են թէ մեծ աղէտներ է պատահելու, թագաւոր է մեռնելու և այլն։

*Ցարդ գողի ճանապարհի* մասին պատմում են, թէ մի մարդագայլ հարս լուանալով իրենց հիւրի ոտները, շատ փափլիկ է գտել և երբ բոլորը քնել են, գնացել է, որ ուտի, սակայն հիւրը դաշոյնի մի հարուած է տուել նրա ծծին։ Իսկոյն կաթը ցայտել է երկինք, և մինչև այժմս էլ իւր հետքը թողել։

Ուրիշներ էլ հաւատացնում են, թէ դա Աստծու արքայութեան ճանապարհն է։

Նատերն էլ պատմում են, թէ մինը (չգիտեն թէ ով) դարման է գողացել և ճանապարհին վայր թափել, որի հետքը մնացել է ու այժմ էլ կոչվում *«ղերմանողլի»*։

*Ամպ*.—Սաստիկ սպիտակ և առանձին կանգնած ամպ տեսնելիս ասում են, թէ դա Աստծու միրուքն է։

Իսկ եթէ այս ամպը շատ փոքր է, ասում են դարմանագող է, որովհետև դա նշան է, որ քամի պիտի լինի և կալերից դարման գողանայ։

*Որոտման* մասին ասում են, իբր թէ մի պառաւ մի պարկի մէջ քարեր անած քաշ է տալիս, որից և՛ յառաջանում է գոռգոռոց։

Ոմանք էլ կարծում են, թէ դա յառաջանում է «ըլլկածն» քամու սաստիկ շարժումից։

Առաջին որոտման ժամանակ գիւղացիները երկաթ են կծում և քարով իրենց գլխներին խփում, ասելով.

«Գըլըղլօխ, ըրկըթը կեռիկ» և այս այն նպատակով, որ այդ տարի կարկուտ չգայ։

*Որոտ*.—Մի բամբակի պառաւ, նստած մի բամբակի ձիու վրայ, ձեռին մի բամբակի մտրակ քշում է երկնքով։ Նրա ձիու ոտների տրոփիւնից յառաջանում է *որոտը*։

*Կայծակը* հրեշտակների գաւազանն է, որով խփում են սատանաներին։

Ոմանք էլ կարծում են, թէ երկու հրէշ կայ, որ կռւում են միմեանց հետ սրերով, այս սրերի փայլից յառաջանում է փայլակը, միմեանց ընդհարումից՝ կայծակն ու որոտը։ Եւ կամ երկու վիթխարի գազաններ միմեանց հետ «ղոչի են տալիս», —պոզերը միմեանց խփելով կռւում են, որոնց պոզերի ընդհարումից յառաջանում է կայծակը։

Ուրիշներ էլ պնդում են, թէ երկնքում մի պառաւ մի

քթզուկ ծառայ ունի, որ փայտ կոտրելիս կացինը քարին է դիպցնում, որից և կայծակ է յառաջանում։

Ծիածանը, — տեղական բարբառով «կանաչ կարմիրը», Աստծու գոտին է համարւում։ Նրանով գուշակութիւններ են անում, այսպէս՝ եթէ դեղին գոյնը միւսներից աւելի է, այդ նշան է, որ այդ տարին շատ հիւանդութիւններ պիտի լինի. երբ կանաչ գոյնն է աւելի, դա ապացոյց է, որ այդ տարի ցորենը առատ է լինելու, իսկ եթէ կարմիրն է աւելի, գինին է առատ լինելու։

Մի աւանդութիւն էլ ասում է, թէ ծիածանը այն կանաչ կարմիր թելն է, որ բերեց Գասպար թագաւորը, երբև կնքահայր Քրիստոսի պարանոցը կապելու։

Երկրաշարժի մասին հետեւեալ կարծիքներն են տիրում։

ա. Գետնի տակ ապրում է մի եղջերու, որի եղջիւրի վրայ դրուած է մի մեծ կաթսայ, լի մի տեսակ հեղուկով։ Երբ հեղուկը տաքանում է, կոտրում է կաթսան և կտորները խփում գետնին, որից և յառաջանում է «ժաժքը»։

բ. Գետնի տակ կայ մի եզ, պոչը դրած մէջքին, երբ շարժում է պոչը և խփում գետնին, երկրաշարժ է լինում։

գ. Գետնի տակ մի ձուկ կայ, երբ մէջքը քոր է գալիս, շարժւում է և իւր հետ շարժում երկիրը։

դ. Մի հրեղէն քամի մտնում է երկրի մէջ և շարժում նրան։

ե. «Ըլըկոծն» քամին մտնում է այն ջրի մէջ, որի վրայ գտնւում է մեր աշխարհը և ալեկոծում ջուրը։ Ջրի ալեկոծութիւնից շարժւում է և՝ մեր երկիրը։

---

## Ը. ԳԼՈՒԽ

## ՔԱՋՔԵՐ ԿԱՄ ՍԱՏԱՆԱՆԵՐ

Դռնավարզի և Քառասնի, ինչպէս և՝ Սգոխի և Թաղլարի միջև կան խոր ձորեր, սաղարթախիտ ծառերով ծած-

ՙթզուկ ծառայ ունի, որ փայտ կտորելիս կացինը քարին է դիպցնում, որից և կայծակ է յառաջանում։

*Ծիածանը*, – տեղական բարբառով «կանաչ կարմիրը», Աստծու գօտին է համարւում։ Նրանով գուշակութիւններ են անում, այսպէս՝ եթէ դեղին գոյնը միւսներից աւելի է, այդ նշան է, որ այդ տարին շատ հիւանդութիւններ պիտի լինի. երբ կանաչ գոյնն է աւելի, դա ապացոյց է, որ այդ տարի ցորենը առատ է լինելու, իսկ եթէ կարմիրն է աւելի, գինին է առատ լինելու։

Մի աւանդութիւն էլ ասում է, թէ ծիածանը այն կանաչ կարմիր թելն է, որ բերեց Գասպար թագաւորը, երբև կնքահայր Քրիստոսի պարանոցը կապելու։

*Երկրաշարժի* մասին հետևեալ կարծիքներն են տիրում։

ա. Գետնի տակ ապրում է մի եղջերու, որի եղջիւրի վրայ դրուած է մի մեծ կաթսայ, լի մի տեսակ հեղուկով։ Երբ հեղուկը տաքանում է, կոտրում է կաթսան և կտորները խփւում գետնին, որից և յառաջանում է «ժաժքը»։

բ. Գետնի տակ կայ մի եզ, պոչը դրած մէջքին, երբ շարժում է պոչը և խփում գետնին, երկրաշարժ է լինում։

գ. Գետնի տակ մի ձուկ կայ, երբ մէջքը քոր է գալիս, շարժւում է և իւր հետ շարժում երկիրը։

դ. Մի հրեղէն քամի մտնում է երկրի մէջ և շարժում նրան։

ե. «Ըլըկոծն» քամին մտնում է այն ջրի մէջ, որի վրայ գտնւում է մեր աշխարհը և ալեկոծում ջուրը։ Ջրի ալեկոծութիւնից շարժւում է և՛ մեր երկիրը։

---

## Ը. ԳՂՈՒԽ

## ՔԱՋՔԵՐ ԿԱՄ ՍԱՏԱՆԱՆԵՐ

Դռնավարզի և Քառասնի, ինչպէս և՛ Սզոխի և Թաղլարի միջև կան խոր ձորեր, սաղարթախիտ ծառերով ծած-

կուած։ Այս ձորերը կոչւում են «քաջկաձոր» և լի են քաջ-քերով—սատանաներով։

Ջանախչի գիւղում էլ, կուսանաց անապատի մօտ ահա-գին ժայռի մէջ մի մեծ ճեղքուած կայ։ Գիւղացիները այդ ճեղքուածքին «քաջքատուն» են կոչում և հաւատում, թէ քաջքերով լի է։ Հազիւ է պատահում, որ գիշերները մար-դիկ անցկենային այդ ժայռի մօտով։

Խոր համոզուած լինելով որ քաջքերը գոյութիւն ու-նին իրականապէս, ժողովուրդը բազմաթիւ արկածներ է պատմում նրանց վերաբերութեամբ, որոնցից առաջ ենք բե-րում միայն հետևեալները։

Ա.

Դոնավարզ գիւղում Անանեանք նկատում են, որ երե-կոները քաջքերը գալիս իրենց ձին հեծնում և սաստիկ այս ու այն կողմն են քշում, այնպէս որ առաւօտեան ձին սաս-տիկ յոգնած և քրտնած է լինում։ Միևնոյն ժամանակ հիւ-սում էին ձիու մազերը և այնպէս թողնում հեռանում։ Մի երեկոյ կուպր են քսում ձիու վերայ և առաւօտ տեսնում են մի սև սատանայ կպած ձիուն։ Իսկոյն մի ասեղ են շուլու-լում նրա մարմնին և վայր առնում նրան։ Եօթ տարի շա-րունակ աշխատեցնում են նրան, միայն միշտ իրեն ցանկա-ցածի հակառակն են ասում, որովհետև քաջքերը միշտ մարդ-կանց հակառակ են գնում։ Այսպէս, օրինակ երբ կամենում էին ասել, թէ գնա ջուր բեր, ասում էին. «Մի՛ գնար և ջուր մի՛ բերեր»։ Իսկոյն գնում և բերում էր։ Եօթ տարին լրանա-լիս սատանան դառնում է դէպի Անանեանք և ասում. «Ի՞նչ յիմար մարդիկ էք, եօթ տարի մնացի ձեզ մօտ, չհարցրիք թէ ինչո՞ւ ջուրին չի ծնում, որ ասէի»։ Եւ իսկոյն անյայտա-նում է։

Բ.

Ղաւախան գիւղի Ակոբ-ջանը պատմում էր, թէ մի օր մի սատանայ խափել է իրեն և տարել սատանաների տունը

ցոյց տուել։ Այդ տեղ, ասում էր նա, եղել է մի գեղեցիկ մուշտակ, մի եաբա (երկժանի) և մի կոյտ ածուխ։ Երբ նա հետաքրքրուելով հարցրել է, թէ ինչու համար են այդ բաները, սատանան պատասխանել է, թէ մուշտակը նրա համար է, որ առաւօտները ձգեն եկեղեցի գնացող ծերունիների վրայ, որպէսզի տաքութիւնից թուլանան և եկեղեցի չգնան. եաբան որ ձգեն չարը տեսնող և բարու յետևից գնացող երիտասարդների պարանոցը, իսկ ածուխը՝ քսեն իրենց ասածը ուրացողի երեսը։

Գ.

Մի անգամ Քառասնի գիւղում մի «զուռնաչու» ձայն են տալիս, թէ արի գնանք, հարսանիք կայ՝ սա վեր է կենում և առաջնորդի հետ գնում քաջքաձորը։ Մէկ էլ տեսնում է, որ մի հարսանիք եկաւ, ինքն էլ սկսում է իւր զուռնան ածել։ Քաջքերը երկար պարում են։ Այս ժամանակ զուռնաչին նկատում է, որ կանանց հանդերձները իւր դրկից կանանց շորերին շատ նման են, կամացուկ մի քանիսից մի մի կտոր կտրում է։

Երբ առաւօտեան աքաղաղը կանչում է, բոլոր քաջքերը անյայտանում են և ինքը մնում է այդ ձորում մէն մենակ։ Գալիս է տուն, հանում կտորները և տանում դրացի կանանց շորերի հետ բռնեցնում, տեսնում է, որ իսկապէս նրանցից է կտրուած։ Պատմում է դէպքը և խրատում որ հանդերձների մէջ կամ նշխարք դնեն և կամ ասեղ շուլուլեն, որ քաջքերը չկարողանան տանել հագնել։

Դ.

Ջանաղչի գիւղում օրանից մօտ 50 տարի առաջ, մի գիշեր մինը ձայն է տալիս Տէր Յովհաննէս քահանային, թէ մինը հոգու հետ է, եկ ճաշակ տուր։ Նա էլ վեր է կենում և նրան հետևում։ Սա տանում է Քաջքատան վերևը և այնտեղից վայր գլորելով անյայտանում։ Հաւատացնում էին, թէ դա Քաջքատան սատանաներից է եղել։

Ե.

Մի մարդ լսելով քահանայի քարոզներին, իւր հարստութիւնը բաժանել է աղքատներին, յուսալով մէկին հազար ստանալ։ Երբ բոլորովին աղքատացել է, դիմել է նախ քահանային և ապա Աստծուն, իւր բաժանածի հազարապատիկը խնդրելով, բայց երբ ոչինչ չէ ստացել, ստրջացել և սատանային օգնութեան է կանչել։ Նա իսկոյն ներկայացել է նրան։ Մարդը պատմել է եղելութիւնը և խնդրել նրան օգնել իրեն քահանայից վրէժ առնելու։ Սատանան ամենայն սիրով առաջարկում է մարդուն, թէ ինքը ջրի կը դառնայ, թող տանի քահանային ծախէ։ Մարդը համաձայնում է և սատանան իբրև ջրի ծախում է քահանային։ Սակայն մի երկու օրից յետոյ սատանայ-ջրին մուկ է դառնում և ծակը մտնում։ Քահանան ծախողից իւր դրամը յետ է պահանջում։ Դիմում են դատաւորին։ Վերջինս պատուելով քահանային, հրաւիրում է իւր հետ ճաշելու։ Այս միջոցին յանկարծ սատանայ ջրին երևում է քահանայի արգանակի մէջ և քահանան առանց այլևայլութեան կոխում է ձեռքը արգանակի մէջ և աշխատում բռնել ջրու ականջից, ջրին փախչում մտնում է միւսների պնակները և քահանան, առանց տատանուելու, կոխում է ձեռքը այս պնակից այն պնակը։ Երբ հարցնում են նրան այդպէս անելու պատճառը, նա յանդիմանում է նրանց, թէ չէ՞ն տեսնում ջրին, որ պնակից պնակ է վազում։ Անմիջապէս դատաւորը հրամայում է կապկպել այդ քահանային և որպէս խելագար գժատուն ուղարկել։

---

ՕՐՕՐՈՑԱԳՈՂ

Երբեմնապէս պատահում է, որ մայրերը երեխաներին ծիծ տալիս, օրօրոցի վրայ ընկած քնում են։ Այսպիսի դէպքերում ծիծը ծածկում է երեխայի բերանն ու քիթը և խեղդում նրան։

Իրենց յանցանքը սատանաներին վերագրելով՝ մայրերը երևակայում են, թէ օրօրոցագող քաջքեր կան, որ գալիս երեխաներին տանում են։ Եւ որպէսզի արգելեն նրանց երեխաներին մօտենալու, սրանց սնարի տակ նշխարք, պողպատ, համայիլ են դնում, քնեցնելիս խաչակնքում, և երեխայի վերայ ասեղ շուլուլում։

Սրանց մասին պատմում են, թէ մի անգամ շօշեցի ջինդար (կախարդ) Ակոփին սատանաները տանում են սարը, ուր նա տեսնում է նրանց գլխաւորին և միւսներին պար բռնած։ Պարի տաքացած ժամանակ գլխաւորը հրամայում է օրօրոցագող քաջքին գնալ երեխայ բերել։ Սա գնում է և միքիչ յետոյ մի երեխայ ձեռին վերադառնում։ «Այս անգամ շատ պտրեցի, ասում է նա, տալով երեխան գլխաւորին, մի երեխայ խաչակնքուած էր, մի ուրիշի բարձի տակ նշխարք կար, մի երրորդի վրայ ասեղ էր շուլուլած, միայն այս երեխան էր մեզ արժանի, որ վերցրի բերի»։ Այս ժամանակ գալիս են ուրիշ միքանի քաջքեր էլ, բերելով իրենց հետ կանանց հանդերձներ։ Իսկոյն միմեանց ձեռքից խլխլելով հագնում են այդ հանդերձները և շարունակում պարել։ Պարի տաքացած միջոցին, վերցնում են բերած երեխային, և պարելով միմեանց ձգում. վերջին ստացողը դժոխային ձայներ հանելով՝ խփում է երեխային գետին և սպանում։ Այս իրարանցման ժամանակ կրակին դրուած իւղը շուռ է գալիս և իւղոտում մի քանիսի հանդերձները։

Լուսաբացին, երբ սատանաները չքանում են, ջինդար Ակոփը գալիս է գիւղ և իմանում, որ իւր հարևանի հարսը «ծծով է արել» իւր երեխային և խեղդել, որի համար և՛ նրան սաստիկ նախատում են։ Անմիջապէս գնում է նրանց մօտ, պատմում է երեկոյեան անցքը, օրօրոցագողի երեխային գողանալն ու սպանելը և իւր խօսքերին ապացոյց բերում է այն, որ իւղը թափուել և իւղոտել է հանդերձները։ Կանայք գնում նայում են իրենց հանդերձները և տեսնելով որ յիրաւի իւղոտուել են, հաւատում են։

Ոչ միայն օրօրոցագողները տանում են փոքրիկ երեխաներին, այլ և պատահում է, որ «Հիւրի փարիները» իրենց երեխաները փոխում են սրանց հետ։ Փոխուածներն սկսում են լղարել և շարունակ լաց են լինում։ Այսպիսի դէպքերում տանում երեխային դնում են երկու գերեզմանի միջև և ասում. «Իմը տար, քոնը բեր», հաւատալով, որ «Հիւրի փարիները» կը վերադարձնեն իրենց երեխային։

## ԾԱՂԻԿ ԵՒ ԿԱՐՄՐՈՒԿ

Ծաղիկն ու կարմրուկը քոյր և եղբայր են, որոնց ման է ածում մի սպիտակահեր պառաւ կին, աջ ձեռով ծաղիկը, ձախով կարմրուկը (պռուկ) բռնած։

Երեխան ծաղկով կամ կարմրուկով հիւանդացած միջոցին, մինչև առողջանալը ձէթի ճրագը վառ են պահում, կամ մոմեր վառում, կիրակի պահում, առագաստ չեն մըտնում, միս ներս չեն բերում և այլն։

## ՄԱՐԴԱԳԱՅԼ

Առաւելապէս կանայք, բայց երբեմն էլ տղամարդիկ գիշերները գայլ են դառնում, գնում երեխաներ գողանում, ուտում և կամ նոր թաղուած ննջեցեալներն հանում լափում։ Սրանք ման են գալիս գայլերի հետ միասին, խմբով, և երբ լուսանում է՝ հանում են իրենց մորթին, մարդ դառնում և տանում մորթին մի ապահով տեղ պահում, գիշերը նորից հագնելու և գայլ դառնալու։

Այս պատիժը նրանք ստանում են Աստծուց իրենց բազմաթիւ մեղքերի համար, ուտելով երկնքից թափուած կարկտանման բանը, որ թափւում է յատկապէս գայլերի համար։ Ուտելուց յետոյ անմիջապէս երկնքից մի գայլի մորթի է ընկնում ուտողի վրայ և սա իսկոյն գայլ է դառնում։

Եօթ տարի գայլութիւն անելուց յետոյ, գայլի մորթին ինքն իրեն անյայտանում է և մարդը այլ ևս գայլ չի դառնում։

Պատմում են, թէ երբ կարողացել են մորթին գտնել և կրակը ձգել, մարդը այլ ևս գայլ չէ դարձել, սակայն միշտ մարդագայլերը ահագին խնամքով թաքցնում են իրենց մորթիները։

Առաջ բերենք սրանց մասին եղած աւանդութիւններից գոնէ երկուսը։

## Ա.

Դռնավարզ գիւղում մի որսորդ գիշերը նկատում է, որ անտառի մէջ կրակ է արած և մի կին միայնակ միս է խորովում։ Կամացուկ առաջ գնալով՝ որսորդը բռնում է կնոջը յետևից, կապում ծառին և շուրջը պտրելով գտնում է մի գայլի մորթի, որ անմիջապէս կրակն է ձգում։ Կինը ամէն ճիգ գործ է դնում մորթին ազատելու, բայց չի կարողանում։ Առաւօտեան որսորդը բերում է կնոջը Դռնավարզ, ուր նա խոստովանում է, թէ ինքը նուխեցի է և երբև մարդագայլ եկել էր այդ կողմերը։ Անմիջապէս իմացնում են ամուսնուն, որ գալիս և նուէրներ տալով տանում է կնոջը։

## Բ.

Մի չւանախչեցի որսորդ անտառում գիշերած միջոցին տեսնում է, որ կարկտանման բան է թափւում երկնքից և գայլերը հաւաքում ուտում են։ Ինքն էլ վերցնում մինը ուտում է, երբ յանկարծ երկնքից մի գայլի մորթի է ընկնում վերան և ինքն էլ գայլ դառնում ու գնում միանում գայլերին։

Այնուհետև եօթ տարի շարունակ գիշերները գայլ դառած թափառում է և լէշեր ուտում։ Եօթը տարին լրացած օրը գայլերի հետ միասին գնում է Արաքսի ափը մի ձիու լէշ ուտելու, բայց այս անգամ սաստիկ զարշում է և մորթին ընկնում է վերայից։ Այնուհետև այլ ևս գայլ չի դառնում։

---

# ՍՐԲԵՐ

## ՍԱՐԻԲԷԿ

Թուրք քոյր և եղբայր հիւրընկալելով Երուսաղէմից եկող մի վարդապետի, դրան բացուածքից տեսնում են, թէ ինչպէս նա օդի մէջ կանգնած աղօթում է։ Այս հրաշքից յափշտակուած, նրանք ընդունում են քրիստոնէութիւն և մի նորահաւատ ծառայի հետ փախչում Վարանդա։ Թուրքերը հետևում են նրանց և նահատակում՝ Շուշուց մօտ 10 վերստ հեռաւորութեամբ, դէպի արևելահարաւ, մի լերան վրայ, ուր այժմ գտնւում է նրա ուխտատեղին։ Եղբօր անունը գրուած է եղել Մարտիրոս, բայց սրով նահատակուելու պատճառով վերակոչուել է Սրաբէկ, իսկ ժողովուրդը աղաւաղելով կոչել է Սարիբէկ։

Ձորի մէջ, թփերի տակ գտնւում է ծառայի նահատակուած տեղին, որ նոյնպէս ուխտատեղի է։

Սարիբէկից մի քիչ բարձր գտնւում է քրոջ նահատակութեան տեղին, որտեղ դրուած քարը նորերս տեղափոխել են Սարիբէկ։

## Ս. ՂԵՒՈՆԴ ԵՒ ԱՆՆԱ

Մի Ղևոնդ անունով քահանայ իւր քոյր Աննայի հետ գերի է ընկնում կռապաշտների ձեռքը։ Մի անգամ, ծնընդեան տօնին սրանք թոյլտւութիւն են ստանում փոքր ինչ հեռանալու։ Անմիջապէս Ղևոնդը մի ժայռի միջից հանելով իւր թաքցրած քահանայական զգեստը, հագնում է և սկըսում ժամ ասել և խաչը ջուրը ձգել Ծկոռի մօտ՝ գետի մէջ։ Կռապաշտները իմանում և գալիս են սրանց նահատակելու։ Սրանք փախչում են, սակայն Հմբրատեղում (համբուրելու տեղում) Ղևոնդ երեցի ձեռքը վիրաւորւում է և արիւնը հոսում գետին։ Այժմ որպէսզի այդ արեան հոսած տեղը ոտնակոխ չլինի, ամէն մի անցորդ մի քար է դնում վերան և համբուրում։

Քոյր և եղբայր վազել են դէպի լեռը, սակայն քոյրը կէս ճանապարհին նահատակուել է, իսկ եղբայրը բարձրացել լեռը, սակայն տեսնելով, որ քոյրը արդէն նահատակուած է, չոքում և աղօթում է, մինչև որ գալիս և իրեն էլ նահատակում են։ Յետոյ սրա վրայ մի մատուռ են կանգնեցնում, որ այժմ կոչւում է ս. Ղևոնդեան անապատ կամ Ղոնդիկ *)։

## Ս. ԷՋՄԻԱԾՆԻ ՏՆՏԵՍԸ

Մի ժամանակ Էջմիածնում մի տնտես կին կար, որ թէ կաթուղիկոսին և թէ վերջին աղքատին միևնոյն և միաչափ կերակուրներն էր տալիս։ Նրա աչքում բոլորն էլ հաւասար էին և ինքն էլ ոչ մի խտրութիւն չէր դնում։ Այս բանը այնքան հաճելի էր հաւասարութիւն քարոզող Քրիստոսին, որ նրան հրեշտակի ձեռքով մի խնձոր էր ուղարկել, որից հոտոտելով զուարթանում և գոյնը աւելի կարմրում էր։

Մի անգամ կաթուղիկոսը իմանում է, որ այդ տնտեսը իրեն էլ այնպէս է կերակրում, ինչպէս և՛ վերջին աղքատին, բարկանում և կանչում է նրան իւր մօտ։ Երբ կինը գալիս է, կաթուղիկոսը տեսնելով նրա այտերի կարմրութիւնը՝ ասում է. «Ինչո՞ւ ես կերակրի ամենալաւ մասը ինքդ ուտում, երեսդ կարմրացնում, իսկ մեզ համար ամենավատ մասն ուղարկում»։

—Ոչ, պատասխանում է տնտեսը, ես հրեշտակից մի խնձոր եմ ստացել, նա է ինձ ոյժ և կարմրութիւն տալիս։ Այս ասելով նա հանում է խնձորը և հոտոտելով՝ աւելի գեղեցկանում ու թարմանում։ Կաթուղիկոսը տեսնելով այդ, ներողութիւն է խնդրում այդ արդար կնոջից և հրամայում տօնել նրա տօնը։ Ահա՛ այս տնտեսի տօնն է, որ մենք մինչև հիմայ էլ տօնում ենք։

## ՄԱՐԻԱՄ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ

Յովսէփ իւր կացինը տալով՝ ստանում է Մարիամ կոյ-

*) Տես երես 45։

սին, որպէս ամուսին։ Մի առ ժամանակից յետոյ, երբ Ս. Կոյսը յղանում է, Յովսէփ և ծնողները հալածում են նրան, կասկածելով նրա բարոյականութեան վրայ։ Կոյսը փախչում է մի այր, ուր և՛ ծնում է Յիսուսին։ Հովիւներն այդ իմանալով՝ վերցնում են մի քիչ աղբ և տանում տալիս նրան, կամենալով այսպիսով նախատել նրան, պօրինի որդի ունենալու համար։ Ս. Կոյսը խաչակնքում է այն, որ իսկոյն ձուաձեղ և հալուայ է դառնում։ Հովիւները զարմանում և սկսում են փառաբանել նրա Աստծուն։ Մի քիչ յետոյ հասնում են Թագաւորից ուղարկուած մարդիկը Յիսուսին սպանելու։ Իսկոյն Ս. Կոյսը աղօթում է և յանկարծ մօտի ժայռը երկուսի է բաժանւում և ծածկում Յիսուսին։ Սպանիչները չգտնելով մանկան, յետ են դառնում։ Այժմ Ս. Կոյսը նորից «Փառք 'ի բարձունս» ասելով հեռացնում է ժայռերը և հանում մանկան։

## ԽԱՉԱԿՆՔՈՒԻԼ

Հայր Յովսէփ իմանալով, որ Մարիամը յղի է, սաստիկ բարկացաւ և կանչեց իւր մօտ նախատելու։ Այս ժամանակ նա տեսաւ կոյսի մօտ մի հրեշտակ, որ խաչակնքւում էր ասելով. «Յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ ամէն»։ Յովսէփ զարմանալով, հարցրեց հրեշտակին թէ այդ ինչ է նշանակում։ Հրեշտակն էլ ասաց. «Այս աղօթքը ես Աստծու հրամանով սովորեցրի Ս. Կոյսին և այդ դրան է վերաբերում։ Երբ «Յանուն Հօր» ասելով ձեռը վերև է բարձրացնում, սրանով նա ասում է, թէ այն գաղտնիքը, որ դու հիմայ չգիտես, նախ Հայր Աստուածը իմացաւ. երբ տալիս է Որդւոյ անունը և ձեռը արգանդին դնում, դրանով նա ասում է, թէ յետոյ արգանդի զաւակը իմացաւ այդ։ Երբ կրծքի երկու կողմերին է նշան անում, դա նշանակում է, թէ յետոյ այդ իմացան աջ և ձախ ուսերի հրեշտակները, իսկ երբ կրծքի մէջտեղն է դնում ու «Ամէն» ասում, դրանով ուզում է ասել, թէ շուտով կիմանայ այդ գաղտնիքը ամբողջ աշխարհը»։

## Թ. ԳԼՈՒԽ

# ԿԱԽԱՐԴՈՒԹԻՒՆ

---

### ՎԵՑՀԱԶԱՐԵԱՑ

*Ինչպէս Վարանդայի գիւղերի, այնպէս և քաղաքի գրեթէ բոլոր բնակիչները, հայերը և մանաւանդ թուրքերը դեռ ևս բաւական հաւատով են վերաբերւում դէպի կախարդութիւնն ու կախարդները։ Դեռ ևս բաւական թւով կախարդներ շրջելով գիւղից գիւղ և նոյն իսկ հաստատուելով քաղաքում, կարողանում են միայն այդ արուեստով իրենց ապրուստը հոգալ։*

*Այսպիսի կախարդներից Շուշում նշանաւոր է Գրիգոր Տէր Բաղդասարեանը, որ յայտնի է «Դէր (Տէր) Բալին (Բաղդասարի) տղան» անունով։ Սա մի միջահասակ, խոժոռ դէմքով, սև և երեսի կոպիտ գծագրութեամբ քառասնամեայ մարդ է, սուր մտքով ու ճարպիկ ձևերով օժտուած։*

*Սրան քսան տարուց ի վեր դիմում են տղամարդիկ և մանաւանդ կանայք, մինը իւր կորուստը գտնելու, միւսը որդի ունենալու համար գիր անել տալու, երրորդը իւր ապագան կամ ունենալիք երեխայի սեռը գուշակել տալու, չորրորդը մինի սէրը գրաւելու համար Թալիսման գրել տալու, հինգերորդը դիւահար որդու դևերը հալածել տալու և այլն։ Ամենայն, բայց մանաւանդ չորեքշաբթի, ուրբաթ և կիրակի օրերը ահագին բազմութիւն լցւում է սրա տունը, որ գտնւում է թուրքերի թաղի մօտ, ձորակի աջ լանջին։ Սա բաղկացած է երկու սենեակից, որոնցից մինը ընդունարանն է, իսկ միւսը՝ արհեստանոցը։ Առաջին սենեակի չորս պատն էլ ամբողջովին ծածկուած են պատկերազարդ հանդէսների թերթերով, այնպէս որ՝ այցելուն որ կողմը նայէ՝ անշուշտ պատկեր պիտի տեսնի։ Միւսը, արհեստանոցը, մի փոքրիկ սենեակ է, մի մեծ և մի փոքր պատուհանով։ Այստեղ պատի*

մէջտեղից խփած է մի եղջերուի գլուխ։ Իսկ պատուհաններին առջև դրուած մի մեծ փայտէ մահճակալ, մի կապերտով ծածկուած։ Մահճակալի մի ծայրում ձգուած է մի փոքրիկ ներքնակ, որի վրայ ծալապատիկ բազմում է կախարդը աշխատելիս, իսկ այցելուները պըպըզում են առջևը, յատակի վրայ և կամ կանգնած մնում։ Կախարդի առաջ դրուած է մի մանղալ *), որի կողքին խառն ի խուռն ածուած են բազմաթիւ իրեր։ Այստեղ, մի թիթեղի մէջ կայ աղաւնու արիւն, մի շշի մէջ գայլի ուղեղ, մի ուրիշի մէջ արջի ջիղ, թիթեղի կտորներ, վերան զանազան գծեր քաշած, ջոկ-ջոկ թղթերի մէջ փաթաթուած զանազան փոշիներ, վարաղներ, ներկեր, թանաքներ, չորս հինգ հատ գրիչ, գունաւոր մատիտներ և այլն։ Սրանցից էլ փոքր ինչ հեռու թափուած է թղթերի մի ահագին կոյտ, վերան մի Վեցհազարեայ, և ուրիշ մի քանի, սրանից արտագրուած, կախարդական գըրքեր և մի ձեռագիր բժշկարան դրուած։

Մենք դիտաւորութիւն չունինք նկարագրելու, թէ սա ինչ «գրեր» է անում և կամ թէ ի՞նչպէս է գործում, որովհետև ինչպէս հաստատ իմացանք, սա վարւում է միանգամայն «Վեցհազարեայ»-ի համեմատ, որը կարող է ձեռք բերել ուսումնասիրողը։

## ԴԱՆԱԿ ՔՑԵԼ

Վարանդացիները հաւատում են, թէ երբ մի որև է կերպով մեղանչեն մի սրբի դէմ, նա կը պատժէ իրենց մի որև է հիւանդութիւն տալով, որից ոչ մի կերպ չեն կարող ազատուիլ, բայց եթէ այդ միևնոյն սրբին մատաղ կըտրելով և աղօթելով։ Որպէս զի իմանան, թէ հիւանդութիւնը ո՛ր սուրբն է տուել, որովհետև բացի նրանից մի ուրիշ սուրբ, ի պատիւ այդ սրբի, երբէք չի բժշկի նրա տուած հիւանդութիւնը, դանակ են քցել տալիս։

Եօթը տնից մի մի դանակ են խնդրում, ապա բոլորը

---

*) Կրակարան, որի մէջ բոցավառուած կրակ են ածում։

լաւ մաքրելուց յետոյ դնում են մի աման ջրի մէջ և ամէն մինին մի սրբի անուն դնում։ Ամանի շուրջը մոմեր կպցը-նելով վառում են և ծունր դնում աղօթում, որ ժանգոտուի այն սրբի դանակը, որը տուել է այդ հիւանդութիւնը։ Յետոյ այդ ամանը դնում են հիւանդի սնարի մօտ և միւս առաւօտ հանում դանակները նայում, թէ ո՛ր դանակն է ժանգոտուած, որից և՛ իմանում են, թէ որ սրբիցն է, որի դուռը և՛ տանում են հիւանդին և կամ մի քանի բուքլի դնում հիւանդի բարձի տակ, խոստանալով հիւանդի առողջանալիս այդ դրամով մատաղ կտրել այդ սրբին։

## ԿԵՂ ՉԱՓԵԼ

Կեղ չափելու շնորհքը տալիս են սրբերը, երբ պասով, աղօթքով դիմում են իրենց. այսպէս Սարուշէնի Աւետարանը տուել է այդպիսի շնորհք Ազնէք գիւղի Հաւկշոռ (հաւկշռող) *) Մկրտիչանց Միրզին կնոջը, Սարբէկը Մոսունց Սանդուխտին և այլն։

Կեղ չափող կինը սոթքում է իւր ձախ ձեռքը և յետոյ աջ ձեռքով ձախ ձեռի միջամատի ծայրից սկսած երկու կեղ (թիզ) չափում, ապա ասում. Եթէ այս ինչ մարդու խորհուրդը պիտի կատարուի, երկարի, եթէ ոչ՝ կարճանայ. կամ, եթէ կորուստը պիտի գտնուի, երկարի, իսկ եթէ ոչ՝ կարճանայ։ Յետոյ բոլթ մատը պահում է վերջին կէտում և նորից միքանի անգամ միայն մի-կեղ չափում։ Նայելով դէպքին նա կամ կուչ է բերում մատները և կամ երկարացնում։

## ՎԱԽ ՎԷՐ ՔԱՂԵԼ

Նինդի գիւղում ապրում է «Վախ վէր քաղող» Տէր Առաքել Տէր Պետրոսեան անուն քահանան։ Սա մի խուլ, սաստիկ հարբեցող և գրեթէ անգրագէտ մի անձն է, որ ոչ

---

*) Եղբայրները բաժանուելիս հաւերը կշռել և այնպէս են բաժանել։

միայն ամբողջ Վարանդայում, այլև հեռու շրջակայքում մեծ հուչակ ունի որպէս վախեցած մարդկանց անմիջապէս առողջացնող։ Իւր և գիւղի ծերունիների ասելով՝ նրա տոհմը, պապ քահանան և նոյն իսկ պապի պապը «վէր քաղող» են եղել և դեռ կը լինին, որովհետև նա սովորեցրել է այդ շահաւէտ արուեստը իւր որդուն, որ երբեմն փոխարինում է իրեն։ Գլխաւորապէս ամառը, կիրակի օրերը Շուշուց և շրջակայ գիւղերից հայ և թիւրք դիմում են նրան։ Եղել են օրեր, երբ մինչև հինգ հարիւր մարդ համախմբուած են եղել նրա դռանը, խնդրելով իրենց վախը «վէր քաղել»։

Գործողութիւնը շատ պարզ է։ Մի երկար կոթաւոր փոքրիկ հալոցի մէջ արճիճ է հալում, հետը փոքր ինչ մոմ խառնելով, և յետոյ՝ մի ջրով լի թաս բռնելով վախեցողի նախ աջ, յետոյ ձախ ականջների և ապա մէջքի և կրծքի առաջ՝ արճիճը լցնում է ջրի մէջ։ Միևնոյն ժամանակ Հայր մեր շշնջում։ Արճիճը ջրի մէջ թափուելիս որքան բարձր ձայն հանէ, այնքան աւելի վախեցած է լինում։

## ՄՈՒՄ ՀԱԼԻԼ

Վախեցածին գլխաւորապէս բժշկում է «մում հալողը»։ Սա երեսը երեք անգամ խաչակնքելուց յետոյ վերցնում է մի ասեղ,—որ սովորաբար իւր վրայ է պահում և երբէք ուրիշի չի տալիս,—և կոխում մեղրամոմի մէջ․ յետոյ Հայր մեր շշնջալով և սրբերի անուններ տալով՝ մեղրամոմը դնում է տաքացրած (թաթակիշի) ծհանի կամ մի ունելիքի վրայ․ մոմը հալչում և թափւում է տակը բռնած մի աման ջրի մէջ, և մի որև է ձև ստանում։ «Մում հալողը» հանում է ջրից մոմը և նրա ձևից և կամ վերայի գծերից գուշակում, թէ ինչից է յառաջացել վախը։

Այս գործողութիւնը երեք անգամ կրկնելուց և գուշակութիւններ անելուց յետոյ՝ մոմը փաթաթում է բամբակի մէջ, թելով կապում և տալիս հիւանդին, որ գիշերը դնի ոտի տակ և առաւօտեան կոնքի տակը դրած լուացուի և

ապա անխօս տանի մի ծառի տակ թաղի ու այդ լուացուած ջուրն էլ վերանածի։

Միքանիսն էլ բամբակի մէջ մի մեխ են ցցում և թաղում կամ շէմքում և կամ այն մեռելի գերեզմանում, որից, իբր, վախեցել են։

Այն ևս պէտք է ասել, որ «մում հալել» կարող են միայն երազով սրբերից այդ շնորհն ստացողները։

## ՍՐՏՄՆԱՑ ԲՌՆԵԼ

Երբ մի որև է բանից զզուելով այլ ևս բան չեն կարողանում ուտել, սրտմնայ են բռնել տալիս, որոնցից Շուշում ամենանշանաւորներն են՝ Մարիամ-պաճին, Անթառանը և ուրիշներ։ Սրտմնայ ընկնողը մի ասեղ է խրում կրծքին, ուշք դարձնելով, որ ասեղը ծուռ կամ կոտրած չլինի, որպէս զի ծուռ կամ թերի կերպով չբռնուի սրտմնան։ Յետոյ մի չորեքշաբթի, ուրբաթ և կամ կիրակի օր, առաւօտեան, անօթի գնում է սրտմնայ բռնողի մօտ և խնդրում սրտմնան բռնել։ Սա հանում է սրտմնայ ընկնողի կրծքից նրա խրած ասեղը և ձգում իւր ձեռքին բռնած կապոյտ պնակի մէջ։

Պէտք է ասել, որ պնակն անշուշտ կապոյտ պիտի լինի և կապտագոյն ջերտեր ունենայ, որովհետև դրանք նման են սրտմնայ ընկնողի կապուտկած նեարդերին, որոնք կապտել են սատանաների ազդեցութեամբ։ Եւ այս սատանաներին միայն ասեղը կարող է հալածել։

Ապա երեք անգամ խաչակնքում է պնակը, ցուցամատը դնում ասեղի վրայ և ստիպելով սրտմնայ եղողին շարունակ նայել պնակին աղօթում է.

«Գնացի Երուսաղէմ, տեսայ մին ծառնը,
Էդ ծառիցը դուրս էկաւ մին ճէօղնը,
Ընդրանից դուրս էկաւ մին ուրիշ ճէօղնը,
Ընդրանից դուրս էկաւ մին ուրիշ ճէօղնը *),

---

*) Կրկնում է 8 անգամ։

Ուխթնճի ճէօղնիցը կախուեց մին ոչխար,
Մօտըկացի, բռնեցի.
Անդենակ մորթեցի,
Անջուր լուացի,
Անկրակ եփեցի.
Ես կերի սրտմնայ չըլմի,
Դու խէ սրտմնայ ես ըլալը։

Յետոյ բարձրացնում է մատը և եթէ սրտմնայ եղած են լինում, ասեղը կպած է լինում մատին։ Շարժում է մատը և երեք անգամ թափ տալիս, որ ասեղը ընկնի ջրի մէջ։ Ասեղը որչափ ամուր է կպած լինում մատին, այնքան սաստիկ են սրտմնայ եղած։

Այս միևնոյն գործողութիւնը երեք անգամ կրկնելուց յետոյ, սրտմնայ բռնողը ծածկաբար մի քիչ ջուր է ածում մի բուռը և պնակը տալիս սրտմնայ եղողին խմելու։ Եւ մինչդեռ նա խմում է, սա յանկարծ ցնցում է նրա երեսին բուի ջուրը՝ ասելով. «Էդ ա քու դեղդ»։ Յետոյ արգէն սըրտմնայ եղողը այդ պնակը, առանց վայր դնելու, միջի ջուրը ածում է մի ամանի մէջ և տանում տուն, քիչ քիչ խըմում, մի քիչ էլ լցնում է ցուրտ ջրի մէջ և լուանում ոտներն ու ձեռքերը։

Այդ ջուրը պարունակող ամանը երբէք գետնին չեն դնում, այլ միշտ կախում են և երբ առողջանում են, աւելացած ջուրը ածում են եօթը սև քարի վրայ և կամ մի, սովորաբար տանձի, ծառի տակ։

Եթէ մի անգամից չառողջանան, կրկնում են էլի մի կամ երկու անգամ։

## ԱՉՔԻՆ ՀԱՏԸ ՎԵՐ ՔԱՂԵԼ

«Աչքին հատ» կոչւում է այն հիւանդութիւնը, որ պատում է աչքի մի մասը սպիտակ թաղանթով։ Այս հիւանդութիւնը բժշկելու համար դիմում են որոշ կանանց, որոնք յայտնի են որպէս «աչքի հատը վեր քաղողներ»։ Սա վերցնում է 7 ոսպ և 7 բրինձ, երեք անգամ խաչակնքում ւուրերեսը, մի ամանի մէջ ջուր ածում, տալիս հատ ունեցողի

ձեռքը և յետոյ Հայր մեր շշնջալով ու սրբերի անուններ տալով տրորում է այդ ոսպերն ու բրինձը հատ ունեցողի աչքերին, թողնելով որ թափուին ամանի մէջ։ Ապա մատները թաթախում նոյն ջրի մէջ և երեք անգամ քսում աչքերին։ Վերջը այդ ոսպերն ու բրինձը տալիս են հաւերին։

## ՉՈՓՉԻ

Սրբերի տուած շնորհներից մինն էլ չոփչութիւնն է։ Ծառացողը սովորաբար ուշաթափւում է, «շտապւում» է, և մի կամ միքանի օր անզգայ մնալուց յետոյ, ուշքի գալիս և պատմում թէ այս ինչ սուրբը երևեցաւ իրեն և չոփչութիւն անելու շնորհք տուեց։ Այսպէս Ներքին Թաղավարդ գիւղում մի տասներկու տարեկան ամուսնացած կին «շտապւում» է, երեք օր շտապած մնում և ապա յայտնում, թէ Սարուշէնի աւետարանը երևացել է իրեն և չոփչութեան շնորհք տուել։ Այժմ դա գիւղի նշանաւոր չոփչին է և տարին միքանի անգամ էլ «շտապւում է»։

Գրեթէ ամէն մի գիւղ ունի իւր չոփչին։ Քաղաքն էլ զրկուած չէ դրանցից. նա էլ ունի Թաղլարեցի Հիւրին, Նանա-խանումը, Շողերը, Սառան, Փահլուանին կինը։

Ասում են, թէ շատ անգամ կորիզներ և կամ ոսկորի կտորներ են մնում երեխաների կոկորդներում, որից և՛ հիւանդանում են։ Չոփչին նստեցնում է երեխային իւր ծընկների վրայ և նախ բերանից և ապա քթից բոլոր ուժով փչում։ Իսկոյն կորիզը կամ ոսկորը՝ դուրս է ընկնում բերանից։

## ՄԿՆԱՏԱՄԻ ԳԻՐ

Մկնատամը բժշկելու համար, թէ քաղաքում և թէ գիւղերում գիր են անել տալիս։ Քաղաքում այսպիսի գիր անողներից նշանաւոր է Տէր Գ. քահանան։

Գիր անողը թանաքով մի գիծ է քաշում վէրքի շուրջը և մէջը գրում.

Ամ, ամուն, Արամուն,
Պորպոյ (?), Երիպոյ (?)
Դուք չորացուցէք զմկնատամս։

Այս «գէրը անել են տալիս» առաւելապէս չորեքշաբթի օրերը, մանաւանդ մեծ պասի վերջին, «չէք» չորեքշաբթի օրը։

## ԳԷԼԿԱՊ (Կիւլկապ)

Երբ գիւղացիների կենդանիները կորչում են, գայլի և առհասարակ բոլոր գազանների բերանները կապել են տալիս, որ չուտեն կորած անասունը։ Գայլի բերան կապողը սովորաբար մի աղօթք է ասում ամբողջը մի անգամ միայն շունչ առնելով և յետոյ կամ մի բաց դանակ փակում, կամ կացինը մտցնում սանդերքի մէջ, կամ մի թել առանձին և կամ մի դաշոյնի վրայ երեք անգամ հանգուստում։

Ահա մինը այդ աղօթքներից.

«Եւ ի ծովուն խաչ մի կայր,
Եւ ի սուրբ լերինն այն խաչին
Եօթը թիւ երկաթի,
Ամէն թուի եօթ խորան.
Եւ ամէն խորանի եօթ նարդէոս.
Ծածքն պղնձեղէն,
Եւ բանալին երկաթի.
Կապեալ եմ զգայլի բերանն
Եւ զգողի չարժումն.
Եւ գայլ գազանի բերանն,
Որ շրջի ի մէջ գիշերի.
Երեք բեեռ Քրիստոսի,
Մէկն ի սիրտ սև սատանի,
Մէկն ի բերան գէլ գազանի,
Մէկն ի չարժումն աւազակի։

Այսպէս կապելուց յետոյ գազանները եօթը օր շարունակ ոչինչ չեն կարող ուտել։ Պատմում են բազմաթիւ դէպքեր, որոնցից յիշենք գոնէ մինը։ Խաչմաչ գիւղում գայլի բերանը քահանայի հօրը դաշոյնի վրայ կապել տալուց յետոյ գնում են կորած կովը պտրելու և գտնում են հանդարտ կանգնած մի գայլի մօտ։ Գայլը բերանը կապած նայելիս է եղել կովին։ Կովի տէրը դաշոյնի վրայից ձգել է գայլ կապի թելը, որպէս զի սպանէ գայլին։ Սակայն հէնց

որ թելը արձակւում է, գալլը յարձակւում է կովի վրայ և պատառում նրան։

*
* *

Կորուստը գտնելու համար գայլի շրթունքները և կամ յետին ոտի ճիլը կրակն են ձգում։ Ասում են, թէ գտնողը և կամ գողացողը անմիջապէս կուչ եկած գալիս է և յանձնում իրը։

Մի աղջկայ ձեռքն ստանալու համար *չղջիկի* թևը քսում են վրան։

Կաքաւի փետուրները ձգում են գետի մէջ, ո՛ր փետուրն որ ջրի ընթացքի հակառակ գնաց, վերցնում պահում են և նրանով կախարդութիւն անում։ Բաւական է, որ այդ փետուրը մինին քսեն, նա սաստիկ կը սիրահարուի քսողի վրայ։

Կկու թռչունի փետուրները և կամ 4 տերևանի առուոյտ իւր մօտ ունեցողը կարող է աչքակապ կախարդների արածները տեսնել։

---

## ՀԱՒԱՀՄԱՑՈՒԹԻՒՆ

Եթէ կաչաղակը մինի տան վրայ կըչկչայ՝ գուշակում են, որ հիւր կամ տան պանդուխտներից մինը պիտի վերադառնայ։

Եթէ կաչաղակը երեսը դէպի տունը դարձրած կռկռայ՝ գուշակում են, որ լաւ համբաւ պիտի ստանան, իսկ եթէ պո՛չը դէպի տունը դարձրած լինի, վատ համբաւ պիտի գայ։ Ուստի և՛ ասում են. «Թէ խէր ա, տեղդ փոխ տուր, թէ շառ ա, երեսդ շուռ տո՛ւր»։

Եթէ ծիտը լողանայ, ագռաւը կռաւէ, կանանչ գորտը (գորտնուկը) կռկռայ՝ անձրև կը գայ։

Եթէ բուն գիշերը մինի տան վրայ բուայ՝ այդ տնից մինը կը մեռնի։

Եթէ հաւը աքաղաղի պէս կանչէ՝ տնեցիներից մէնը մեռնելու է. առաջն առնելու համար հաւը դռան շէմքում մորթում են։

Եթէ գիշերը հաւը կամ աքաղաղը անժամանակ կանչեն, այդ նշան է, որ մի չարիք պիտի գայ. իսկոյն մի կրակ են շպրտում դէպի հաւաբունը, որ չարը հաւերին գնայ։

Եթէ անցորդի գլխի վրայով ագռաւը կռայ, սա մի վատ բան է գուշակում և բարձր ձայնով կանչում է. «Ա՛ քաշ, խէր. ա՛ քաշ, խէր»։

Եթէ շունը ոռնայ՝ տնեցիներից մին կը մեռնի։

Եթէ կատուն երեսը լուայ, կամ թաթը ականջի տակով անցկացնէ, հիւր կը գայ։

Եթէ կատուն ոտերով չանգռոտէ գետինը՝ անձրև կը գայ։

Եթէ նապաստակ պատահի, անյաջողութեան նշան է, իսկ եթէ աղուէս՝ յաջողութեան։

---

Ժ. ԳԼՈՒԽ

## ՍՆՈՏԻԱՊԱՇՏՈՒԹԻՒՆՆԵՐ

---

*Աչքով տալ.*—Կան մարդիկ, որոնք չար աչք ունին և կարող են աչքով տալ։ Եթէ նրանք հաւանում են մի բանի և կամ նախանձում են, իսկոյն աչքով են տալիս և իրը իսկոյն և եթ տրաքւում է։

Եւ որպէսզի աչք չտան, դիմում են հետևեալ միջոցների.

ա.—Բռշնի ծառը տնկում են բակում, արտում, պարտիզում և այլն։

բ.—Բռշնի փայտի մի փոքրիկ կտոր, ուղտի բրդի և աչքահլունքի հետ կարում և կապում են օրօրոցից, ձիու վզից և այլն։

գ.—Մի ամանով ջրի մէջ մի ձու են ձգում և դնում իրի մօտը. աչք տալիս ձուն տրաքւում է։

Եթէ հաւը աքաղաղի պէս կանչէ՝ տնեցիներից մէնը մեռնելու է. առաջն առնելու համար հաւը դռան շէմքում մորթում են։

Եթէ գիշերը հաւը կամ աքաղաղը անժամանակ կանչեն, այդ նշան է, որ մի չարիք պիտի գայ. իսկոյն մի կրակ են շպռտում դէպի հաւաբունը, որ չարը հաւերին գնայ։

Եթէ անցորդի գլխի վրայով ագռաւը կռռայ, սա մի վատ բան է գուշակում և բարձր ձայնով կանչում է. «Ա՜ քաշ, խէր. ա՜ քաշ, խէր»։

Եթէ շունը ոռնայ՝ տնեցիներից մին կը մեռնի։

Եթէ կատուն երեսը լուայ, կամ թաթը ականջի տակով անցկացնէ, հիւր կը գայ։

Եթէ կատուն ոտերով չանգռոտէ գետինը՝ անձրև կը գայ։

Եթէ նապաստակ պատահի, անյաջողութեան նշան է, իսկ եթէ աղուէս՝ յաջողութեան։

---

Ժ. ԳԼՈՒԽ

## ՍՆՈՏԻԱՊԱՇՏՈՒԹԻՒՆՆԵՐ

---

*Աչքով տալ.*—Կան մարդիկ, որոնք չար աչք ունին և կարող են աչքով տալ։ Եթէ նրանք հաւանում են մի բանի և կամ նախանձում են, իսկոյն աչքով են տալիս և էրը իսկոյն և եթ տրաքւում է։

Եւ որպէսզի աչք չտան, դիմում են հետևեալ միջոցների.

ա.—Բռշնի ծառը տնկում են բակում, արտում, պարտիզում և այլն։

բ.—Բռշնի փայտի մի փոքրիկ կտոր, ուղտի բրդի և աչքահլունքի հետ կարում և կապում են օրօրոցից, ձիու վզից և այլն։

գ.—Մի ամանով ջրի մէջ մի ձու են ձգում և դնում էրի մօտը. աչք տալիս ձուն տրաքւում է։

դ. Եզի, եղջերուի կամ այծեամի գանգ ցցի վրայ անց-կացրած խփում են տան, արտի, այգու մօտ։

ե.—Յայտնի, աչք տուող մարդկանց պատահելիս, մի քարի վրայ թքնում են և շուռ տալիս։

զ.—Ոսկի բզուճի կաշին հանում ուղտի մազով լցնում, կարում են երեխայի ուսին։

է.—Երեխայի օրօրոցից և կամ շորերից կախում են աչքահուլունքներ։

Պատմում էին, թէ հայր ու որդի անցնում էին վար անողների կողքից։ Հայրն ասում է. «Ի՜նչ լաւ եզ է», և ըսպասում է, որ եզը իսկոյն տրաքուի։ Սակայն ոչինչ չի պատահում։ Զարմացած ուղարկում է որդուն, որ տեսնի, թէ եզի սամին բուշնո՞ւց է։ Որդին գնում տեսնում է, որ լերաւի բուշնուց է և հօր պատուէրով փոխում է։ Անմիջապէս եզը տրաքւում է։

«Տեսա՞ր որդի, բուշնին էր, որ արգելում էր», ասում է հայրը։

—Ի՜նչ լաւ աչք ունիս, հայրիկ, ասում է որդին, և իսկոյն հօր աչքն էլ տրաքւում է։

*Մարմնախաղ.*—Եթէ աջ ձեռը քոր գայ, փող կ՚ստանայ, իսկ եթէ ձախը քոր գայ՝ փող կը ծախսէ։

Եթէ կզակը քոր գայ՝ հիւր կը գայ։

Եթէ մի անգամ փռնչտան՝ անյաջողութեան նշան է, իսկ եթէ զոյգ՝ յաջողութեան։

Եթէ յօրանջելիս չխաչակնքուին, սատանան կը մտնի բերանը։

Եթէ աջ աչքը խաղայ, յաջողութիւն է գալու, իսկ եթէ ձախը՝ ձախորդութիւն։

Եթէ ականջը կանչէ՝ մինը նրան յիշել է։ Եւ որպէս զի իմանան, թէ ո՞վ է յիշողը, տալիս են ծանօթների անունները, ում անուան ժամանակ որ ձայնը կտրուեց, նա է։

Եժէ աջ ականջը քոր գայ՝ միւս օրը լաւ եղանակ կ՚անի, իսկ եթէ ձախ՝ անձրև կը գայ։

Եթէ մինի ոտի տակը քոր գայ՝ ճանապարհ կը գնայ։

*Սեղան.*—Եթէ թոնրից դուրս եկած առաջին հացը ուտեն՝ ամուսինը կը մեռնի։

Եթէ հացը գետից անցկացնեն՝ կը քաղցրացնեն։

Եթէ հաց կտրելիս մի կտոր թռչի ընկնի միւս կողմը, յաջորդ տարին սով կը լինի։

Եթէ այրած հաց ուտեն՝ գայլից չեն վախենայ։

Եթէ մսի ճիլը ուտեն՝ մազերը կ՛երկարին։

Եթէ ոչխարի ուղեղ ուտեն՝ խելքը կը շատանայ։

Եթէ երիտասարդը կաթսայի տակը սրբէ՝ հարսանիքի օրը ձիւն կը գայ։

Եթէ ափսէն մաքուր սրբեն՝ կնոջ երեսը գեղեցիկ կը լինի, իսկ եթէ չսրբեն՝ չեչոտ կը լինի։

Ով որ մանկութեան ժամանակ աղջկայ հետ միասին մի ափսէի միջից ուտի, գող կը լինի։

Եթէ մթին տեղը ջուր խմեն՝ քաջքերը կը կոփեն։ Եւ եթէ ստիպուած են խմելու, կանգնում են շէմքի վրայ և մի ձեռը դնելով պարանոցի ետևը՝ խմում։

Եթէ երեկոյեան սփռոցը թափ տան՝ տան բարաքեաթը կը կորչի։

*Թռչուններ.*—Եթէ գիշերը աքաղաղները կանչեն, մարդիկ կը խաչակնքեն երեսները և կ՛ասեն. Օրհնեալ է Աստուած, որովհետև նախ երկնքի աքաղաղն է կանչում և ապա սրանք, և կամ մարդկանց պահապան հրեշտակները, որ մարդկանց քնելուց յետոյ համբառնում են երկինք, նորից վերադառնում են և միայն աքաղաղներն են տեսնում նրանց։

Եթէ երեխան հաւի գլուխ ուտէ՝ ծնողներից մէնը կը վախճանուի։

Եթէ հաւի սիրտը հում-հում կուլ տան՝ սրտոտ կը դառնան։

Եթէ ձուի կեղևը այրեն՝ հաւը ձուից կը կտրուի։

Եթէ հաւի փետուրը այրեն՝ անձրև կը գայ։

Հաւը թուխս դնելիս շարում են հաւկիթները, մի ձեռում բռնում հաւը, միւսում մի հաւկիթ։ Յետոյ այս մի հաւկիթը երեք անգամ պտտեցնում են բոլոր հաւկիթների շուրջը և դնում մէջ տեղը, և հաւը թուխս նստեցնում ասելով.

«Վո՛չխարը կէայ սրնրաւը,
Ցաւարը կէայ բուլնրաւը,
Էծնրը կէայ հէօլնրաւը,
Դու էլ կէաս քու ճտնրաւը»:

Եւ կամ՝

«Հոխ ծակ,
Մինը լակ»:

*Գորտ.*—Եթէ գորտ տեսնեն և ձեռների ու ոտների վրայ չթքնեն, ձեռների վրայ *գորտնուկ* կը բուսնի։

*Գայլ.*—Եթէ արևով անձրև գայ, գայլերը կը ծնին։

*Օձ.*—Եթէ սխտոր ցանեն բակում և կամ կախ տան դռնից կամ առաստաղից, օձերը չեն կարող մօտենալ։

Եթէ սոխ դնեն գրպաններում և կամ սխտոր քսեն տրեխներին, օձերը կը փախչեն։

Եթէ սպանեն օձը, մինչև արեւատկի դուրս գալը չի սատկիլ։

Եթէ սպանած օձը գլուխը դուրս հանած չթաղեն, կը ողջանայ։

*Բոյսեր.*—Եթէ սոխի կճեպը խնկի հետ կրակը ձգեն, արքայութեան հոտը կը բուրէ։

Եթէ ղալար բոյսը այրեն, անձրև կը գայ։

Եթէ մինը ընկուզենի տնկի, 7 տարուց յետոյ կը մեռնի։

Եթէ չիք-չորեքշաբթի օրը պտուղ չբերող ծառերին երեք անգամ առանց խօսելու խփեն, պտուղ կը տայ։

*Կարկուտ.*—Եթէ մի պառաւ և կամ մի ծեր սուրբ Սարգսի պասի երկուշաբթի օրը ցորեն աղանձէ և կարկուտի ժամանակ շաղ տայ, իսկոյն կարկուտը կը կտրի։

Եթէ վառեն Տեառնընդառաջի մոմերը, կամ շամփուրները խաչաձև դնեն, քսկարենքը (եռոտանին) Հակառակ դարձնեն, զատկի ձուի կճեպը և կամ Նոյն օրուայ մատաղի ոսկորները դռանը դնեն, կարկուտը կը կորի։

Եթէ պղինձ կամ կաւէ ամանի կտորներ թակեն և կամ Հրացաններ արձակեն, կարկուտը անձրևի կը փոխուի։

*Վախ.*—Վախեցողը բժշկուելու Նպատակով դիմում է Հետևեալ միջոցների.

1) Վախեցնողի բուից կամ փէշից ջուր է խմում։

2) Մի քանի, որոշ գերեզմանների վրայ կան փոքրիկ փոսեր, ինչպէս օրինակ Ծովատեղ գիւղի գերեզմանատնում մի փոքրիկ երեխայի և կամ Նինգի գիւղի վախ բռնող Տէր Առաքելի Հօր՝ Նոյնպէս վախ բռնող քաՀանայի գերեզմանը և այլն։ Վախեցողին բերում կռացնում են այսպիսի մի փոսի վրայ և ծոծրակին այնպէս ջուր ածում, որ փոսի մէջ լցուի, յետոյ վախեցողը չոքում և խմում է այդ փոսի միջի ջրից։

3) Մի կաւէ ամանով ջուր դնում են մի կիրակմուտք օր մի որև է, առանց Հաղորդութեան մեռած՝ Ննջեցեալի գերեզմանի վրայ և Հետևեալ օրը մի քանի ումպ խմում այդ ջրից և ամանը կոտրում։

4) Արջի լեղի են խմում։

5) Ննջեցեալից վախեցողին տանում են այն Ննջեցեալի գերեզմանի մօտ, որից վախեցել է, վերցնում են գերեզմանաքարը, մի քիչ քանդում Հողը, մի Հաւկիթ դնում և մի մեխով ծակում ու Նորից ծածկում։ Ապա այդ գերեզմանաքարի վրայ մի քիչ ջուր ածում և խմեցնում ու յանկարծ ջրի ամանը կոտրում։

6) Եթէ Ննջեցեալից են վախեցել, այգը կատարելիս յանկարծ Հող են ածում վախեցածի պարանոցին։

Ե. Լալայեան



# ՎԱՐԱՆԴԱ*)

Խմբագրեց Ե. ԼԱԼԱՑԵԱՆ.

## ՆՇԱՆԱՒՈՐ ՏՕՆԵՐ

*Նոր-տարի.*—Վարանդայի գիւղերում Նոր տարին գրեթէ բոլորովին չի տօնւում։ Բացուեց վերադարձածները միայն այցելում են միմեանց և իրենց բարեկամներին ու նրանց Նոր տարին շնորհաւորում։ Շուշում, ընդհակառակը, բոլոր քաղաքացիները միմեանց փոխադարձ այցելութիւններ են տալիս, խմբովին գնում են առաջնորդի և գաւառապետի մօտ, նրանց Նոր տարին շնորհաւորելու։

*Ծնունդ եւ Ջրօրհնէք.*—Խթման նախընթաց օրը, յունուարի 4-ին, ամեն տուն պատրաստում է «գովլաթ-կըրկենէ», ձիթով կամ բաքմազով պատրաստած մի մեծ կարկանդակ, մէջը մի դրամ, կամ մի լոբի և կամ մի սխտոր դրած։ Այս նշանը կոչւում է «գովլաթ» (բաղդ)։ Նոյն երեկոյին, ընթրիքից յետոյ տան բոլոր անդամները համախմբւում են և տան տիկինը հանդիսաւոր կերպով կտրում է կարկանդակը, բաժիններ հանելով բոլոր ներկայ և բացակայ անդամներին, օջախին, տարին և կենդանիներին։ Ուրախութիւնը շատ մեծ է լինում, երբ գովլաթը դուրս է գալիս օջախի բաժ-

*) Տես Ազգագրական Հանդէս Բ. գիրք եր. 4—244.

նից, որովհետև դրանից գուշակում են, որ այդ տարի ամբողջ գերդաստանը, օջախը, բախտաւոր, «դովլըթաւոր» պիտի լինի։ Իսկ եթէ օտարի բաժնի միջից է դուրս գալիս, տխրում են, համոզուած լինելով, որ տան դովլաթը օտարին է անցնելու։ Ուրախանում է նաև այն անդամը, որի բաժնի միջից դուրս գալով դովլաթը՝ աւետում է նրան ապագայ բախտաւորութեան մասին։

«Դովլաթ» կուրիզը ձգում են տան մի անկիւնում, որ միշտ մնայ, իսկ եթէ դրամ է՝ երբէք չեն ծախսում և քըսակի մէջ խնամքով պահում են։

Հետևեալ օրը շատերը ծոմ են պահում։ Երեկոյեան «Դ ա ն ի է լ» ասողը մեծ գովասանքների է արժանանում և իր ծնողներից նուէրներ ստանում։ Ժամերգութիւնից յետոյ շատ շուտով ցրւում են տները և ընթրում, ուտելով ձուկ և փլաւ, որը պատրաստում են անպատճառ կարագ իւղով։ Ընթրիքից յետոյ գրագէտ երեխաները շրջում են տները և «Աւետիս» ասելով՝ նուէրներ ժողովում։

Գիւղացիները հաւատում են, թէ այս գիշերուայ ընթացքում գետը մի քանի րոպէ կանգ է առնում, ուստի և՛ առաւօտ շատ վաղ հարսներն ու աղջիկները գնում են գետից ջուր բերելու, յուսալով հանդիպել կանգնած միջոցին, երբ արուած ամենայն տեսակ խնդիր անմիջապէս կատարւում է։

Կէս օրին, երբ քահանան կատարում է Քրիստոսի մըկրտութեան խորհուրդը, եկեղեցու մէջ հրապարակով աճուրդի է դրւում քաւորութեան պաշտօնը և նա է դառնում քաւոր, որը ամենից աւելի է վճարում։

Բազմութիւնը վրայ է թափւում մկրտութեան կաթսայի վրայ և սրուակներով ջուր վերցնում, խմում, ճակատին ու կրծքին քսում, ձեռները, ամանները լուանում և ջուրը լցնում օճախի կամ թոնրի մէջ։

Նոյն օրը, ինչպէս և նախընթաց երեկոյին, քահանան շըրջելով տները, օրհնում է և նշխարներ բաժանում, ստանա-

լով 15—20 կոպէկ։ Նշխարներից մի կտոր դնում են աղաքսակի մէջ, որ աղը «բարաքեաթով» լինի։

*Սուրբ Սարգիս.*—Առաջաւորաց պասին վարանդացիները «Խաշլին կամ սուրբ Սարգսին պասն» են կոչում։ Այս միջոցին շատերը միաժում են մնում, այսինքն օրը միայն մի անգամ, կէսօրին են հաց ուտում։ Շատ յաճախ եկեղեցի են գնում, մոմեր վառում և զգուշանում գլուխ լուանալուց և լուացք անելուց, որովհետև անողները կուռչին, կորաքուին։

Ուրբաթ օրը փոխինդ են մաղում, յետոյ շաքարով, կամ մեղրով և կամ բաքմազով շաղախում և փոքրիկ, կլորակ շինում և բաժանում տան անդամներին։ Ջափահաս տղաներըն ու աղջիկները առաջին կծած պատառը բերաններից հանում, կրկին կլորում և պահում են իրենց մօտ, որպէսզի հետևեալ առաւօտը վաղ, առանց մի որևէ մարդու հետ խօսելու՝ դնեն կտուրը և գուշակութիւններ անեն։ Եթէ թռչունը վերցնի և տանի մի որևէ կտրի վրայ ուտի՝ այն տնից է լինելու հարսնացուն կամ փեսացուն։ Իսկ եթէ թռչունը վերցնելով այդ պատառը միևնոյն կտրի վրայ ուտի, այդ նշան է, որ չպիտի ամուսնանան։

Նոյն ուրբաթ գիշերը մի ափսէի մէջ փոխինդ են մաղում, վերան խաչ քաշում, դնում դռան յետևը, մաղը վերան կոնթխում և մի վառած մոմ մօտը դնում, որպէսզի ս. Սարգիսը իրենց այցելելիս ձիու պայտի հետքը մնայ փոխինդի վրայ։

Հետևեալ շաբաթ օրը այդ փոխինդով խաշիլ են պատրաստում և ուտում։

Ս. Սարգսի մասին կան շատ աւանդութիւններ, որոնցից յիշենք մինը։—

Մի անգամ մի աղջիկ իւր ծննդկան մօր մօտից հեռանալով գնում է դրկցի մօտ կրակ բերելու։ Վերադարձին դուռը փակ է գտնում և ականջ դնելով լսում է մի ձայն, որ ասում էր թէ նորածին երեխան մեծանալիս երբ կամենայ ամուսնանալ, ձուկ դառնայ և ջուրն ընկնի։ Աղջիկն խո-

կոյն հասկանում է, որ այս ձայնը այն հրեշտակինն էր, որ եկել էր երեխայի ճակատի գիրը գրելու։

Երբ երեխան մեծանում է և հասնում են ամուսնութեան օրերը, այս քոյրը պահում է ս. Սարգսի պասը և ջերմեռանդութեամբ աղօթում նրան, որ փրկէ իր եղբօրը և թոյլ չտայ ձուկ դառնալու։ Ս. Սարգիս լսում է նրա աղաչանքը և ինքը գալիս խաչեղբայր է դառնում այդ տղային։ Երբ հարսը բերում են, մի գետից կամենում են անցնել. իսկոյն ս. Սարգիսը հեծնում է փեսացուի գաւակը և ամուր գրկում նրան, որ թոյլ չտայ ձուկ դառնալու, սակայն չի լինում. տղան, հէնց որ գետի մէջտեղն են հասնում, ձուկ է դառնում և ընկնում ջուրը։ Այսպէս՝ ճակատի գիրը ոչ միայն մարդիկ, այլ և սրբերը, հաստատում է ժողովուրդը, չեն կարող խափանել։

*Բարեկենդան*.—Առաջաւորաց պասից մինչև Մեծ պասը վարանդացիների համար բարեկենդան է համարւում, և քէֆն ու ուրախութիւնը գնալով սաստկանում են։ Վերջին շաբաթը բուն բարեկենդան է, և այս օրերում ոչ միայն ուրախութիւնը, այլ և կերակուրների թիւը գնալով աճում է. այսպէս՝ պահանջւում է՝ որ երեքշաբթի օրը երեք, հինգշաբթի՝ հինգ, շաբաթ՝ եօթը և կիրակի՝ 12 տեսակ կերակուր լինի։ Ամբողջ գիւղը զանազան խմբեր կազմած՝ զուարճանում է. այստեղ երեխաների խմբերը վէգ են խաղում, այնտեղ աղջիկների խումբը ճլորթիի մէջ ճօճում է, մի քիչ հեռուն երիտասարդները «լախտի», «տարտուլթ», «աստուրմա» և այլ խաղեր են սարքում, գօտեմարտում, հրացան արձակում, աշխատելով նշանին դիպցնել և այլն։ Մի ուրիշ տեղ մի խումբ նստած ուտում է և խմում, բղաւում ու երգում։ Գիւղի կենտրոնումն էլ դաւուլ զուռնան է ածում և շատերին պար ածում։ Այսպէս անցնում են այս օրերը մինչև որ գալիս է կիրակի օրը. այս ժամանակ երիտասարդների խմբերը միանում են, մի ճարպիկի հագցնում ցնցոտիներ, վերայից ոսկոռներ, հին սրեր կախում, մի հրացան ձգում ուսովը, գլխին մի հին, գզգզուած գլխարկ ծածկում, երեսը

մրոտում, նստեցնում մի էգ էշի վրայ, և «բէջակը կամ էշակ պարոնը գալիս է հա՜, ճամփայ բացէք» բղաւելով՝ դաւուլ զուռնի առաջնորդութեամբ ման ածում տնէ տուն. հազարաւոր ծամածռութիւններ, սրախօսութիւններ անում, ամեն տնից գինի, կերակուր, դրամ հաւաքում և ապա, երեկոյեան մօտ, խմբով նստում և քէֆ անում։

Նոյն երեկոյին մօտիկ բարեկամները ի միասին հաւաքուած են անցկացնում գիշերը, միասին ուրախանալով և ուտելով իրենց տներից բերած ուտելեղէններն ու կերակուրները։ Երբ անչափ ուտում են ու խմում, «փակում են իրենց բերանները ձուով», այսինքն ամենից վերջը ձու են ուտում, որպէսզի գատկին էլ ձուով բանան։ Յետոյ երիտասարդները դուրս են գալիս և հրացաններ արձակում, որպէսզի մեծ պասը շուտով անցնի։ Ապա յօգնած ու հարբած՝ ընկնում են ու խոր քնում։

*Տեառնընդառաջ.* —Այս տօնը տեղական բարբառով կոչւում է դ ռ դ ո ռ ա ջ։

Երեկոյեան ժամերգութեան միջոցին նշանած տղաների բերած ցրտնու ճիւղերով խաչաձև խարոյկ են պատրաստում։ Քահանան ժամաւորների հետ միասին դուրս է գալիս եկեղեցուց և միքանի աղօթքներ կարդում։ Այս միջոցին երիտասարդները վառուած մոմերով վառում են խարոյկը։ Ծերունիներն ու պառաւները աւելի ջերմեռանդութեամբ շարունակում են աղօթել։ Բազմութիւնը ամենայն հետաքրքրութեամբ դիտում է ծուխը, որովհետև հաւատում է, որ միայն այն կողմի արտերը լաւ պիտի բուսնեն, որ կողմը որ ուղղւում է ծուխը։

Երբ խարոյկը հանգչում է, խանձողները խլխլում են և տանում տները, որպէսզի նրանով վառեն ճրագն ու կրակը և յետոյ դնեն հաւաբնում, որ հաւերն աւելի յաճախ ձու ածեն։

Եւ երբ մեծերը քաշւում են, տղաներն ու աղջիկները վերցնում են մոխիրը և դէպի վեր շաղ տալիս ու դիտում,

թէ որ կողմն է ուղղւում, յուսալով որ այն կողմից պէտք լինի սպասած հարսնացուն կամ փեսացուն։

Չբերք կանայք էլ աշխատում են երեք անգամ թռչել խարոյկի վրայից, որպէսզի երեխայ ունենան։

*Մեծ Պաս.*—Առաւօտեան վաղ հարսներն ու աղջիկները վեր են կենում և անխօս վազում դէպի աղբիւրը, ջուր բերում, տղաներն էլ գնում են փայտ կամ քար բերում, որովհետև հաւատում են, որ եթէ բան բերեն տուն, տունը «բարաքեաթթու» կլինի։

Պառաւ նանն էլ մի սոխի վրայ 7 փետուր ամրացնելով՝ կախում է հերթիկից, որ թէ երեխաներին վախեցնէ պաս պահելու, և թէ իբր մեծ պասի օրացոյց ծառայի, որովհետև ամեն կիրակի երեխաները մի փետուրը պոկում են։

Մի քիչ յետոյ երեխաները մի-մի խնձոր ձեռներին գընում են իրենց մեծերին մեծ պասը շնորհաւորելու և տալիս են նրանց խնձորները. սրանք էլ փոխադարձաբար մի որևէ միրգ են ընծայում։

Եւ մինչդեռ կանայք զբաղւում են տան ուտիսաւոր ամանները լուալով՝ տղամարդիկ գնում են տանուտիրոջ, քահանայի և մօտիկ բարեկամների մեծ պասը շնորհաւորելու։

Կէս օրին մօտ երիտասարդները ձիեր նստած դուրս են գալիս մի հարթ տեղ և մականախաղ (ջիրիթ) խաղում։

Երեկոյեան մօտ միայն Խաչմաչ գիւղում մի էշ են թամքում, մի կին նստեցնում վերան, երեսին մուր քսում, դաւուլ զուռնայի առաջնորդութեամբ շրջեցնում տնէ տուն և դրամ հաւաքում։ Յետոյ այս դրամը պահ են տալիս, որ զատկին մատաղ անեն։ Այս սևերես կինը ներկայացնում է մեծ պասը և նրան պատուով շրջեցնում են, որպէսզի մեծ պասը առանց փորձանքի անցնի։

Մեծ պասի առաջին շաբաթը ապաշխարութեան օրեր համարելով՝ ծանր գործերով չեն զբաղւում. այսպէս՝ կանայք ճախարակ չեն մանում, կար չեն անում, շալ չեն գործում և այլն։ Երկրորդ շաբաթի առաջի երեք օրն էլ զգուշանում են ծանր աշխատանքներից, երկուշաբթին «գայլ

ձերածի և կատաղած շանը, երեքշաբթին «սել (հեղեղ) տարածի» և չորեքշաբթին «կայծակ խփածի» օր համարելով։ Այնպէս որ՝ եթէ չզգուշանան և երկուշաբթի օր ծանր գործ անեն, գայլը կուտէ դրանց երեխաներին և կամ կատաղած շունը կկծէ դրանց և այլն։

*Ծաղկազարդ.*—Ծաղկազարդ բառը գիւղացիների բերանում աղաւաղուելով դարձել է «Զըրգարդար»։ Սոյն երեկոյին շատ գիւղերում աղջիկները ձեռքերին հինայ են դնում, իսկ տղաները պատրաստում են ճըռռան և չըխչըխկան *)։ Պառաւներն էլ իրենց հարսերի և թոռների համար մոմեր են շինում, միևնոյն մոմի վրայ ուրիշ բարակ մոմեր ամրացնելով։

Երբ այս բոլորը պատրաստում են, փոքր ինչ քնում են։ Կէս գիշերին մօտ երիտասարդները վեր են կենում, բահ ու թի վերցնում և գնում երկու ուռենի արմատից հանում և առանց մի ճիւղ կտրելու տանում եկեղեցու բակը։ Այս ժամանակ երեխաներն էլ հաւաքւում են այդտեղ և սկսում իրենց ճռռանով ու չըխչըխկանով այնպիսի աղաղակ բարձրացնել, որ ամբողջ գիւղն զարթնում է և եկեղեցի շտապում։ Երիտասարդները վազում են դէպի քահանայի տան հերթիկը և շտապեցնում, որ գայ։ Քահանան գալիս է, խըփւում են զանգակները և բազմութիւնը միմեանց հրելով թափւում է եկեղեցի։ Ուռենիներից մինը տանում եկեղեցու մէջ մարդկանց, միւսը կանանց կանգնելու տեղում կանգնեցնում են։ Անմիջապէս բոլոր ժամաւորները իրենց ձեռի երկու զոյգ մոմերից մի զոյգը ամրացնում են ծառերի ճիւղերին և վառում։ Երեխաներն էլ ծառերը շրջապատած՝ ճըռռանն ածում։ Եւ երբ քահանան օրհնում վերջացնում է ուռենին, անմիջապէս բոլորը յարձակւում են այս ծառերի վրայ, մի

*) Սրանցից առաջինը նոյն է, ինչ որ ջաղախեցունը, (Ազգ. Հանդէս Բ. եր. 269), երկրորդը մի համեմատաբար երկար տախտակի երկու կողմերին հաստ թելով ամրացրած երկու փոքրիկ տախտակներ են, որոնք խփուելով միջի փայտին՝ չըխկ, չըխկ ձայն են հանում։

կողմից մոմերը հանգցնում, միւս կողմից ճիւղերը կտրտում և միմեանցից խլխլում։ Այս ճիւղերը տանում տնկում են, որ շուտով արմատ բռնեն։

Մի ճիւղ էլ կանայք վերցնում պահում են, որպէսզի խնոցի հարելիս նրա պ ո ն ք-ից (ծակից) կոխեն խնոցու մէջ և տեսնեն, թէ կարագն արդէն եղե՞լ է, թէ ոչ։ Այս ճիւղը կոչւում է «խ ն ց տ ե ս ի»։

Ժամասացութիւնը աւարտելուց յետոյ կանայք գնում են գերեզմանատուն, համբուրում իրենց ննջեցեալների գերեզմանները և մի-մի զոյգ մոմ վառում։ Այս ժամանակ նոր սկսում է արշալոյսը բացուել և այս բազմաթիւ մոմերը մթութեան մէջ փայլելով մի գեղեցիկ տեսարան են ընծայում։

*Չարչարանաց շաբաթ.*—*Չորեքշաբթի* օրը, որ չիք չորեքշաբթի է կոչւում, Նուշեցիները գնում են Նուշու Քամու խաչը ուխտ։ Գիւղերում կանայք դնում են տան կտրին երկու քար, մինը որպէս բարութեան, միւսը որպէս չարութեան նշանակ։ Հետեւեալ օրը մի երեխայի ուղարկում են, որ գնայ նրանցից մինը բերէ։ Եւ նայելով թէ ո՞րն է բերել, գուշակում են, թէ տունը «բարի՞ն է վերցնում, թէ չարը», այսինքն թէ գերդաստանը այդ տարին երջանի՞կ թէ թշուառ օրեր պիտի անցկացնի։

Նոյն օրը աղջիկները խաշխաշ հարելու քարը քսում են գետնին և ասում.

«Չիք, չիք, մուկնը չիք.
Չիք, չիք, լուն չիք.
Չիք, չիք, կարիճը չիք.
Չիք, չիք, չարակամը չիք.
Չիք, չիք, օձը չիք» և այլն։

Այս անելով նրանք կարծում են, որ այս բոլոր յիշածները պիտի չքանան։

*Հինգշաբթի* օրը կանայք խնոցի են հարում և կարագ պատրաստում. երեկոյին երբ երեցփոխը զանգը խփում է, գալիս կանգնում է մի բարձր կտրի վրայ և հրաւէր կարդում տանտիկիններին, որ օրհնելու համար իւղ բերեն։ Կա-

նայք էլ մի-մի գունտ կարագ առած գնում են եկեղեցի և տալիս երեսփոխին։ Սրանից մի փոքր մասը օրհնում են, մնացածը ուղարկում քահանայի տունը։ Ոտնալուային քահանան լուանում է բոլոր ծերունիների ոտները և կանանց, չափահասների ու երեխաների աջ ձեռքերը և մի-մի քիչ կարագ քսում։ Այս իւղը քսում են ճակատին, ձեռքին, կրծքին, աչքերին և այլն։ Մի քիչ էլ ձգում իւղի կարասի մէջ, որ իւղը «բարաքեաթով» լինի։

Գիշերը մեծ բազմութիւն է հաւաքւում եկեղեցում, ուր մոմերն անցկացնելիս բաւական անկարգութիւններ են լինում։ Զարաճճի երիտասարդները կարում են կնքուարտող կանանց զգեստները միմեանց, ասեղ են ցցում շորերին և այլն։

Նոյն երեկոյին ոսկերիչները անխօս շինում են երկաթի մատանիներ, որ կանայք գնում և դնում են մատները, որպէսզի մութ տեղերից անցնելիս սատանաները չխփեն։

*Ուրբաթ* օրը կանայք մի քիչ կար են անում, որպէսզի Յուդայի աչքերը ծակեն, ծունր չեն դնում, որովհետև Յուդան է գետնին, և Քրիստոս խաչին, չեն խաչակնքում, որովհետև Քրիստոս ինքն է խաչուած։

*Շաբաթ* օրը շատ վաղ լուացք են անում, կանայք իրենց և երեխաների գլուխները լուանում են և երեկոյեան մօտ մաքուր շորեր հագնում։ Տանտիկինները սկսում են պատրաստել ձուկ, փլաւ և կարմիր ձուեր։ Քահանան տիրացուի ձեռը մի զամբիւղ տուած շրջում է տունէտուն և օրհնում, ստանալով մի քանի կոպէկ և ձու։ Երեկոյեան Նախատօնանքը շատ վաղ է սկսւում։ Ժամուորներից շատերը ծոմ են լինում, միքանիսն էլ գրպաններում միքանի ձու պահած։ Երբ քահանան «Առէք կերէք» է ասում, իսկոյն նոյն իսկ եկեղեցու մէջ կպչում են ձուերը և ուտում։ Յետոյ անմիջապէս վերադառնում են տուն, ուր իրենց պասը ձուով ու գինով բանալով՝ ընթրում են։ Սովորաբար ջրօրհնէքը ճրագի լուսով (ճրագլուսաւ), իսկ զատիկը արևի լուսով (ըրըւլուսաւ) են լուծում։

Ընթրիքից յետոյ և միւս օրը շարունակ ոչ միայն երեխաները, այլ և չափահասները ձու են կռուացնում։

*Զատկի* առաւօտեան անում են հասարակաց մատաղ։ Միքանի նախաձեռնող մարդկանց գիւղացիներից հաւաքած դրամով առնում են միքանի ոչխարներ և մատաղում։ Մորթելուց առաջ ոչխարին երեք անգամ պտտեցնում են եկեղեցու շուրջը, աջ ականջը փոքր ինչ կտրում, օրհնուած աղ ուտեցնում և ապա մորթում ու արիւնից էլ մինչև եկեղեցու պատին քսում։ Երբ պատրաստ է լինում, բաժանում են բոլոր գիւղացիներին առանց խտրութեան, մինչդեռ Նուշում տալիս են միայն նրանց, ովքեր որ յատուկ այդ նպատակով նուէր տալով՝ տոմսակ են ստացել և ներկայացնում են։

Նշանած աղջիկների կերանքը բաժին են ուղարկում իրենց հարսնացուներին և յետոյ էլ իրենք գնում նրան տեսութեան։ Ծանօթ և ազգական մարդիկ էլ գնում են միմեանց զատիկ շնորհաւորելու։

Հետևեալ օրը, մեռելոցին, ամեն մի գերդաստան ուտելիքներ է տանում գերեզմանատուն, ուր իրենց ննջեցեալների գերեզմանների վրայ լաց են լինում և գինի, օղի խմում, իբրև «օղօրմաթաս» և հաց ուտում։ Երբ վերադառնում են, մնացորդները թողնում են գերեզմանների վրայ, որպէս հոգեբաժին։

Զատկից մինչև համբարձում երեկոյեան ժամասացութիւնից յետոյ այլ ևս չեն գործում, որպէսզի «հաւկուր» չլինեն, այսինքն չզրկուեն ջիջերները տեսնելու կարողութիւնից։ Երկրագործներն էլ ուրբաթ օրերը հերկ չեն անի, որպէսզի հասկը լաւ բուսնի։

*Համբարձում.*—Այս օրում բոլոր տներում կաթնապուր են եփում, և բաժանում, որպէս զոհաբերութիւն։ Միքանի տներ էլ տանում արտերի մօտ են եփում այս կաթնապուրը և միքանի շերեփ շաղ տալիս արտի շուրջը, որպէսզի նախ հունձը լաւ լինի և երկրորդ՝ կարկուտը չխփի, մորեխը չկտրի և այլն։

Վիճակ հանելու սովորութիւնը չկայ։

*Լուսաւորչի պասը* գալիս է ամառուայ ամենատաք ժամանակ, երբ գիւղացիները սաստիկ զբաղուած են հունձ անելով։ Վարանդացիները այդ պասին «պառաւի պաս» են կոչում և պատմում են, թէ ժամանակով մի պառաւ, այդ շաբթին պաս է պահել, որպէսզի Աստուած հով եղանակ տայ, որ որդին հեշտութեամբ կարողանայ հունձ անել։ Մի ուրիշ աւանդութիւն էլ ասում է, թէ այդ պասը պահւում է ի պատիւ այն պառաւին, որ օրական մի հաց ձգելով Խոր-Վիրապի մէջ՝ կերակրել է ս. Լուսաւորչին։

*Վարդավառ.*—Այս տօնին կոչում են «վրդևոր»։ Ժողովուրդը մեծ մասամբ ուխտ է գնում Սարուշէնի Աւետարանը, Ամարաս, Նինգի գիւղի ս. Գրիգոր Լուսաւորիչ, Սարիբէկ և այլն։

Ժողովրդի կարծիքով այս գիշեր բոլոր սրբերի վրայ լոյս է իջնում, և ով որ տեսնի այդ լոյսը՝ ինչ-որ խնդրէ՝ կըկատարուի։

Ոմանք էլ պատմում են, թէ հոգեգալստեան բոլոր սրբերը բարձրանում են երկինք, իսկ վարդավառին կրկին իջնում իրենց տեղերը, ընդունելով լուսաւոր աստղերի կերպարանք։ Եւ ով որ տեսնի նրանց իջնելիս և մի բան խնդրէ՝ անշուշտ կըկատարուի։

*Նաւասարդ.*—Վարանդացիները տօնում են այս տօնը որպէս տարեմուտ, ինչպէս մեր նախնիքը։ Նախընթաց երեկոյին թխում են գաթաներ, կաթնահունց, «անկաճ» և այլ խմորեղէններ։ Պատրաստում են նաև «կորկոտ» *), առաւօտեան ուտելու։

Նոյն երեկոյին, երբ ամենքը իրենց տները քաշուած

*) Կ ո ր կ ո տ ը այսպէս են պատրաստում. մի կաթսայի մէջ դնում են ոչխարի իւղոտ միս, վերան կորկոտ (կճեպը հանած ցորեն) ածում, ապա մի երկրորդ շարք իւղոտ միս դարսում, նորից կորկոտ ածում, և այսպէս շարունակ, մինչև որ կաթսան բոլորովին լցուի։ Յետոյ միջին աղ են ցանում, ջուր լցնում և ծածկելով կաթսայի բերանը՝ դնում թոնրի մէջ, որ մարմանդ կրակով ամբողջ գիշերը եփուի։

ընթրում են, բարեկամ մարդիկ, մանաւանդ խնամոնք, քաւորանք, ընկոյզ, տանձ, խնձոր կապելով թաշկինակների մէջ՝ տանում են հարսնացուի և կամ բարեկամ մարդկանց հերթիկից ցած ձգում և աննկատելի կերպով հեռանում։

Նաւասարդի առաւօտեան հանում են կոլկոտները և ուտում։ Յետոյ մի-մի շիշ գինի, մի քանի խնձոր առած գնում են շնորհաւորելու տանուտէրոջ և քահանայի Նաւասարդը, որոնցից և հիւրասիրւում են։

Շատերը ի նշան ուրախութեան ծառերի վրայ կարմիր զոլեր, կարմիր կտորներ են ձգում և կարմիր թելերով ճիւղերը կապկապում *)։

Ն. Հալայեան.

---

*) Բացի իմ հաւաքած նիւթերից, ինձ համար տարբեր գիւղերից նիւթեր հաւաքեցին և պ. պ. Ալլահվերդեան, Վարդապետեան, Յովհաննիսեան և ուրիշներ, որոնց շնորհակալութիւն եմ յայտնում։